loved ones: the toilsome course of their journeys, their tossings on the continually agitated waters, the risking of their lives for profit, as they aimed at victory in their struggle against death. To increase their merchandise they risk their lives. For although they may see the great force of the tempestuous and furious waves which in myriad colors are agitated by the ferocious swells and pile up in unstable spray, and which in successive lines rise up against the sandy beaches—yet arriving on dry land they will laugh.[2]

2. Amidst the raging unfathomable depths [cf. Ps. 106.24] that echo with cavernous murmuring, they fearfully await the moment of death. For although they see themselves cast over the vast magnitude of the troubled and terrifying waters, yet looking forward to success they attempt to brave the fearful tumult of the sea, that perchance returning with their gain they may joyfully show to each one's family their profits and to their neighbors the triumphs of their labor. For where necessary they abolish the name of poverty from themselves and relieve their troubled friends from the tyranny of oppressive lords; and from the profits

*րելոց հաճեալ զպարտս վտանգին՝ ի լծոյ ծառայութեան թագաւորացն ազատացեալ դատարկասցին։ Եւ լաւութիւն առ ընկերս, և անուն առատ և բարգաւաճանք առ թշնամիս, և ուրախութիւն առ իւրեանց սիրողս։*

3 *Վասն այսորիկ ընդ անհնարին պատերազմ մարտնչին ի մէջ բարձրացելոց ջրեղէն լերանց և ի մէջ խոնարհելոց ծովային ձորոցն, ջանան զապրուստ անձանց փրկութեան գտանել, զի ի շրջանացն շփոթեալ ուռուցիկ փոթորկացն բքացելոց զերծանել և յանքոյթ նաւահանգիստն հասանել կարասցեն. զի արդարև իսկ շատ այնք են, որ ոչ առ ագահութեան զանձինս ի մահ դնեն, այլ առ չգոյութեան աղքատութեան կարօտութեան յետին անանկութեան՝ շտապեալք առ վտանգի անկեալք տարակուսանաց վասն զհարկսն հաճելոյ, թերևս զլխոյ փրկանս գտանել, ի պարտուց զանձինս թափել կարասցեն. փոխ ևս ի պարտուցն ի վերայ առեալ, թերևս երկպատիկ օգտութեան ելի աղագս գտանել կարասցեն. միանգամայն զպարտառուսն հաճել, և անձանց ևս միանգամայն օգուտ շահի աւելագոյն ստանալ։*

4 *Զի բազումք այն են, որ առ այսպիսի աղէտս տարակուսանաց ի վաճառականութեան արուեստս տուայտանօք անկանել յօժարեն։ Իսկ են բազումք, որ զիւրեանց առատութիւն եդեալ՝*

they have brought they settle their onerous debts and free them from the yoke of servitude to kings. And they provide bounty to their friends,[1] a reputation for liberality and prosperity among their enemies, and joy to their loved ones.

3. Therefore they engage in a terrible struggle amidst the heights of the mountains of water and the deep valleys of the sea; they attempt to find safety and salvation for themselves, in order to escape the surrounding fury of the raging spray of hurricanes and to make harbor safely. For truly many are they who do not put their lives in jeopardy for avarice; but in order to abolish poverty, want and attendant misery they hasten to court danger, to pay their debts or perhaps to find the price of ransom or to free themselves from obligations. In addition to their debts they take additional loans that they may hopefully find a way to double their profit, both satisfying their creditors and gaining for themselves even greater wealth.

4. For many are they who in similar distress turn to the business of commerce and its attendant afflictions. There are many also who employ their wealth for

աշխարհի օգուտ գործեն, զարդարեալ զթագաւորս ի գիւտ ծանրագին մարգարտին, և զանազան ակամբք պատուականօք և կերպասու յերանգ երանգս գունոցն։ Նա և զաղքատս մեծացուցանեն՝ զփոքր ինչ ընդ յարգանօք արկեալ, և զաշխարհ պսակեն նոր և չքնաղ գիւտիւք։ Նոքա և զկարօտս լցուցանեն մեծամեծ շահիւք օգտութեամբ. նոքա և զփափագելի մարդկան զպէտսն պատրաստեն. նոքա և դարմանեն զանձինս բազմաց. նոքա և զտունս բժշկաց լցուցանեն ազգի ազգի անուշահոտ խնկովք, դեղովք օգտակարութեան. նոքա և զտենչալի բժշկութեան արմատոց օգտակարութեան բերեալ զպտուղս՝ զպիտողսն լցուցանեն. նոքա և զարդ քաղաքաց, նոքա և մեծութիւն գաւառաց. նոքա և համարակարք երկայն ճանապարհաց. նոքա և ուղեգնացք աշխարհի. նոքա և ճաշակիչք օտարութեան. նոքա և զամենեսին խնդացուցանեն. նոքա և ոյժ բազմաց, նոքա և կարողութիւն աշխարհի. նոքա և զմերկս զգեցուցանեն, նոքա և զքաղցեալս յագեցուցանեն, նոքա և զծարաւիս արբուցանեն. նոքա և մթերեն իսկ զգանձս ընչեղաց։

5 Զի թէպէտ և ի բնութենէ են հարկեալք, սակայն ուսան առ վշտին հնարաւորութեամբ զանձինս ապրեցուցանել, և այլոց օգուտ մարթեն լինել։ Ապա և նոյն իսկ սովորակի իմաս-

the profit of their country, adorning kings with valuable pearls, various precious stones, and silks of multifarious hues. Similarly they enrich the poor, selling a little at a good price, and they adorn the land with new and wonderful discoveries. They also fill the needy with their great profits and wealth. They cater for the desires and needs of mankind; they also provide the livelihood of many. They fill the houses of doctors with various sweet-smelling aromas and beneficial herbs, and they also supply the fruits of roots beneficial for healing, filling the needy. They are the adornment of cities and the renown of provinces; they multiply their long journeys as they travel over the world. They are companions abroad and bring merriment to all. They are support to many and strength to the world. They clothe the naked, satisfy the hungry, give drink to the thirsty, and pile up treasures for the rich.

5. For although they are forced by constraint, yet they learn to save themselves by their acquaintance with distress and they find means to be of help to others. Their habitual wisdom

տութիւնն քաղցրեաց նոցա. ընդելակի հանապազորդեալք երթևեկն տարաբերեալ վաճառօքն՝ զփոքր մասունս յարգել, ի հազարս և ի բիւրս բազմացուցանելով։ Վասն այսորիկ իսկ ընդ ծաղկացեալ ալիսն բազմութեան համատարած ծովուն ընդխառնեալք շահատակիցեն, ոչ ըստ անձանց կամաց, այլ ըստ վարիչ օդոյն վարելոյ, բռնավարեալք ի վերայ յորձանացն յաճախատարած լայնացելոցն դանդաչիցեն վասն օգուտն գտանելոյ. զանձինս ի մէջ մահու և կենաց եդեալ՝ անձամբ զանձինս խորոցն մատնեն, կամ մահու կամ կենաց, և մի յերկուց գտեալ՝ անձանց համարին։

6 Սոյն օրինակ տեսանեմք հարկ վտանգի հասեալ տիպեալ զմեզ, առնել ի հարկէ նաւեալք ի վերայ իմաստութեան ծովուն. զի ոչ ոք է ամենևին այն ի մարդկանէ, որ կարող իցէ զայսպիսի ջան վաստակոց քրտնալից աշխատութեամբ անձամբ անձին մատուցանել, եթէ ոչ իշխանութեան հրամանի հասեալ՝ ստիպեալ զայս առնել տալ տագնապիցէ. և ո՞վ այն իցէ կարող, որ զխորս անդնդոց ծովուն քննել խրոխտիցի. այլ շահս օգտութեան վաճառացն երկայն ճանապարհօքն անձանց և եթ կամին մատուցանել։ Սոյն օրինակ և մեք ոչ յանդգնութեամբ տղայաբար բարուք ինչ ի ներքս անկանել անմտաբար հոսեցաք, այլ ակամայ ընթացեալ ըստ հրա-

has brought them consolation; they have become accustomed to continuous traveling in their wide-ranging commerce. Valuing even small amounts, they increase them a thousand and myriad-fold. So they venture forth bravely on the wide-spreading expanse of the waves, not following their own inclinations but the direction of the wind, borne along forcibly over the tumultuous expanses in the search for gain. They place themselves between life and death, entrusting themselves to the depths and reckoning to find either death or life, one or the other.

6. In the same way we see perilous necessity forcing us to set sail over the sea of wisdom.[1] For there is no one among mankind who could approach such labor by the sweat of his own brow, unless the command of some princely power impelled him to undertake it. And who could this be who would presume to scrutinize the unfathomable depths of the sea? Those who undertake long journeys have only the aim of personal profit from commerce. Similarly, we too have not undertaken this rashly or unthinkingly in the manner of youth, but against our will we run

մանացն ի բռնութենէ հարկապահանջ իշխանացն՝ դիմեալ նաւեցաք ի մատենայած ծովուս պատմութեան։

7 Վասն զի ստիպեաց զաղքատիմաստ խանութս մեր հրաման թագաւորաց, և ի մէնջ հարկ պահանջեալ զանցեալ իրացն եղելոց գիրս մատեանագրել՝ յայտնական պատմութիւնք. որ առ մեօք գործեցան։ Սակայն մեծ և բազում ջան եղեալ թողուլ այնոցիկ որ յետ մեր գայցեն՝ զկարգս զրուցաց դարուց ի դարս յիշատակել. զի ոչ եթէ կամօք ինչ յօժարեցաք հաւանել առնել զայս, այլ իբրև ոչ կարի ինչ ընդդէմ մարթացեալ դառնալ արքայատուր հրամանացն, որչափ յուժի կայր՝ մարթացեալ ըստ հրամանացն պատմեսցուք։ Եւ մեր զայս ջան յանձին կալեալ, անկեալ ի վաճառականութիւն բանից, առեալ զահ երկիւղի, և տուեալ զգեղեցկագիր յարմարութ̃ն պատմութեան։ Վասն զի ի խնդիր եղեալ և խուզիւք ի մէջ բերեալ զդարգս դարգս պատմութեան՝ զմարմնաւորացն մատենագրութիւն՝ ըստ կարգի պատմութեան, ըստ օրինին, ըստ ժամանակին, ըստ իրացն եղելոցն, ըստ հրամանացն ի վաճառ մատուսցուք։

8 Իսկ զհոգևորացն առաքինութիւն աստուածասէր սիրողացն մեծութիւն իբրև զմարգարիտն պատուական, զբոլորասերն, զլուսաւորն, զչքնաղագիւտն, որ ոչ ունի գեղութիւն

this course, following the commands and under the pressure of exacting princes.[2] So we have set sail on the sea of history.

7. For the command of kings has imposed on the poor stores of our intelligence[1] and has demanded tribute from us in the form of historical writing about past events, lucid histories of what has been done in our time. But a great and difficult task has been left to those who will come after us, to recount in order the history of succeeding centuries. For not willingly have we allowed ourselves to be persuaded to do this; but as it is impossible to oppose royal commands, so far as in us lies we shall tell our story according to the command. We have undertaken this task, setting ourselves to the literary trade[2] in fear and trepidation. We offer for sale a well-composed and historical narrative, having submitted the history of men to research and critical investigation, according to the command, in a historical manner, rigorously, chronologically,[3] and accurately.

8. So we offer (to our patron) the virtue of spiritual events, the glory of the true lovers of God, like the precious pearl, admired by all, shining, incomparable, which has no flaw

բաժանման իւրոյ ճաճանչաւոր լուսոյն, այլ լիութեամբ զարդ անձին վայելուչ զթագս թագաւորացն զարդարեսցէ. և կամ ականք պատուականք ի Հնդկային աշխարհէն, որ ի վայելչութիւն զարդու ի խոյր պսակի զարդարիցեն զթագաւորս։ Իսկ արդեօք այս զիա՞րդ կամ ո՞րպէս գտանիցի ումեք վայրապար, եթէ ոչ ի մեծագնաց թանգարացն, որք և մեծն աշխատանօք, երկայնուղւոյ ճանապարհաց զթոշակսն բաւեցուցին, և մեծաջանք եղեալ ի գտանել՝ զթագաւորս զարդարեցին։ Իսկ սոցա ճաճանչ լուսոյս, զոր մեր ի վաճառ իջուցեալ, ոչ միայն ի զարդ գլխոյ թագաւորին բովանդակի առ ի տես այլոցն, այլ և զամենեսեան զարդարէ, զամենեսեան լուսաւորէ, զամենեսեան լցուցանէ, ամենեցուն բաւէ, զամենեսեան մխիթարէ, զամենեսեան բժշկէ։ Զթագաւորս շքեղացուցանէ ի նմանութիւն արտախոյրն պսակի ի վերջաւորն փողփողելոյ. նա և զաղքատս լցուցանէ, թօթափէ բարձրացուցանէ յաղբեաց և հաւասար իշխանաց կացուցանէ. նա և պսակուն աշխարհաց օրհնութեամբ լցուցեալ, պսակ բոլորեալ տարւոյ քաղցրութեամբ։

9 Նոքա և զկարօտս լցուցանեն երկնաւոր առատութեամբ. նոքա և աշխատութեան կարօտելոցն հանգիստ պատրաստեն. նոքա դարման անկարօտ լի ամենայն բարեօք. նոքա կարեն

to spoil its sparkling light, but perfectly adorns the honorable crowns of kings;—or like precious stones from the land of India, which in splendid array adorn the royal diadems.[1] Indeed, how could anyone find such by chance, save traders in precious goods, who acquire the rewards of their long journeys at great labor, and adorn kings only after extreme efforts at discovery. But their shining light, which we have put on sale, not only suffices for the adornment of the head of a king in the presence of others, but it adorns everyone, gives light to everyone, enriches everyone, pleases everyone, consoles everyone and refreshes everyone; it renders kings majestic like the diadem with interlacing fringes. Similarly it enriches the poor, removing them from their dung-heap and making them equal to princes [cf. I Kings 2.8]. And it also fills nations with blessing, crowning the year with sweetness [cf. Ps. 64.12].

9. They also fill the empty with heavenly plenty; they provide rest for the work-worn and an unfailing remedy full of all blessings. They can give healing without medicines, gums, or roots. They can

տալ բժշկութիւն առանց դեղոց խնկոց արմատոց. Նոքա կարեն շինութիւն շնորհել քաղաքաց մարդասիրութեամբ Տեառն իւրեանց. Նոքա կարեն մեծացուցանել զաշխարհ աղօթիւք նահատակութեան իւրեանց. Նոքա կարեն ցուցանել զելս երկնաւոր ճանապարհացն առ Աստուած վերանալոյ. Նոքա են ուղեորք արքայութեանն ճանապարհացն Աստուծոյ. Նոքա են որ չարչարեալք վասն Տեառն իւրեանց մեռան, և ի կենդանութիւն փոխեցան, և զանուն և զօգուտ պտղոց իւրեանց քաջութեան յաշխարհի թողին։ Նոքա կեանք և փրկութիւն այնոցիկ որ մեղօքն են աղքատացեալ. Նոքա են մեծութեան գանձ ծածկեալ յերկրի երկնաւոր արքային. Նոքա հաւատովք իւրեանց խնդացուցանեն և ուրախ առնեն զայնոսիկ, ոյք յԱստուծոյ մեծացեալ գանձեն. Նոքա զմերկս զգեցուցանեն, և զայնոսիկ, որք մեղօքն են մերկացեալ ըստ նմանութեանն Ադամայ՝ լուսաւոր պատմուճանօք զգեցուցանեն. Նոքա և զքաղցեալս յագեցուցանեն, որք անգիտութեան մեղօքն իցեն սովեալք. Նոքա և զծարաւիս արբուցանեն առաքինութեան բաժակաւն. Նոքա և զգանձն երկնաւոր յաւելուն տան այնոցիկ որ առաւելագոյն ունիցին. զի «Որ ունիցին՝ տացի նմա և յաւելցի». և առ ամենեսին բանան զդրունս գթոյ մարդասիրին Քրիստոսի։ Վասն այսորիկ իսկ սիրեցին զՏէրն իւ-

give prosperity to cities by the benevolence of their Lord. They can enrich the land by the prayers of their endurance. They can show the course of heavenly journeys rising to God: They are the guides of the road to the kingdom of God. They are those who are tortured and die for their God, and gain life, and leave the renown and assistance of the fruits of their bravery to the world. They are life and salvation for those who by sin have become impoverished. They are great hidden treasure of the heavenly ruler's on earth. They by their faith give joy and delight to those whose treasure God has increased. They clothe the naked; and those who through sin have become naked in the likeness of Adam, they dress in garments of light. They satisfy the hungry, who are in want through their sins of ignorance. They give drink to the thirsty from the cup of virtue. They increase heavenly treasure for those who have it in abundance. For "he who has, to him will it be given and increased" [cf. Matt. 13.12; 25.29; Mk. 4.25; Lk. 8.18]. And to everyone they open the gates of the compassion of the loving Christ. Therefore they loved their Lord

րեանց, և սիրեցան ի նմանէ, և բարեխօսութեամբն լցուցանեն զամենայն կարօտս։

10 Այսպիսի մարգարիտ ոչ միայն ոգւոց, այլ և մարմնոց զարդ և պայծառութիւն է. շինութիւն աշխարհի՝ յԱստուծոյ նոցա բարեխօսութեամբ է շնորհեալ. զի զութ աստուածութեանն ի նոսա իջեալ՝ ողորմութիւն և քաւութիւն շնորհէ աշխարհի. զի վասն այսորիկ իսկ նաւեալք ընդ մէջ մրրկեալ աշխարհակիր մեղացն վտանգեցան, պատերազմեալք ճգնութեամբ ընդդէմ ալեացն, ի վերայ խորոցն սահեցան, հասանել ի նաւահանգիստն խաղաղութեան երկնաւոր նաւապետին։ Մատուցին պսակ պարծանաց լուսաւոր Թագաւորին, զերծեալք ի բքոյ ամբարշտութեան, հասեալք ի քաղաքն, պատրաստեալք անանց ուրախութեան և առլցեալք մարգարտովն պատուականաւ, և հոգևոր լուսոյ ակամբք պսակեալք. որք և վաճառեցին զկեանս իւրեանց մատնելեացն ի տանջանս, և մեծացան յանանցն մեծութիւն, որք և բարձեալ ունին զշինութիւն աշխարհի կանգուն, անվթար, անշարժ, հաստատեալ ի նաւս հաւատոց իւրեանց։

11 Իսկ այսպիսի վաճառաց ո՞յր ուրուք արդեօք զի՞նչ գին բաւիցէ. այո՛ այո՛, և կարի քաջ. միայն յօժարութիւն կամաց սրտին՝ սիրով մատուցանել զլսելիս, հաւատովք ձգտեալ զականջս՝ աման պատգամաց, և անդէն ի կամս սրտին հա-

and were loved by Him, and by their intercession they fill all the needy.

10. Such a pearl is the adornment and boast not merely of the soul but also of the body. Prosperity has been granted to the world by God through their intercession. For the compassion of the Godhead has descended upon them and grants to the world mercy and propitiation. On this account they set sail through the dangerous storm of the world's sins,[1] battling at great risk the waves and skimming over the deeps to reach the port of the heavenly navigator's[2] peace. They offered a crown of honor to the king of light; when they reached the city they were freed from the spray of impiety and were prepared for unending joy and adorned with the precious pearl and crowned with the gems of spiritual light—they who sold their lives to those who inflicted them with torment. They were elevated to eternal grandeur, they set the prosperity of the world upright, inviolable, immovable, establishing it firmly on the ships of their faith.

11. For such reward what price would ever suffice? Yes, what indeed? Only a ready willing heart, lovingly offering its attention, in faith extending its ears as a ready receptacle for (God's) words; then, complementing the willing heart,

սեալ գեղեցկագոյն իբրև զպատուական մարգարիտն ծանրագին ընդ յօժարութեանն զարդ ականջաց՝ գինդ եղեալ կախեսցի. միայն զգլուխդ խոնարհեցո՛, և անդէն հոգևորական պսակն ի վերայ գլխոյդ դնի, և առաւել քան զսկանս պատուականս զարդարեսցէ զքեզ։ Միայն յօժարեաց ի կոչունս արքայականս, և անդէն քաղցրութեան անուշութիւն խորտկացն ի քիմս քո պարարեսցի. միայն ծարաւի՛ լեր սիրոյն, և անդէն աղբիւր կենդանութեան զերաշտութիւն ծարաւոյն պասքելոյն յագեցուսցէ զքեզ. միայն լուա՛ զքեզ յաղտոյ, և անդէն անթառամ և լուսաւոր զգեստուն առաւելագոյն ևս քան զանուշահոտ շուշան ծաղիկն զքեզ զգեցուցանէ։

12. Արդ ջան յանձին կալեալ մտանել ի պատմագիր մատենիցս խորութիւն, ցուցանել այնոցիկ, ոյք իմաստութեամբ կամիցին ունկընդիր լինել օգտակար պատմութեանս։ Արդ՝ հրաման հասեալ առ իս ոմն Ագաթանգեղոս, որ ի քաղաքէ ի մեծն Հռովմայ, և վարժեալ հայրենի արուեստիւ, Հռոմայերէն և Յունարէն ուսեալ դպրութիւն, և ոչ կարի ինչ անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրաց. և ի վերայ այսոցիկ հասեալ ի դուռն Արշակունւոյ, յամս քաջի և առաքինւոյն, ուժեղ և պատերազմողն Տրդատայ, որ քան զամենայն նախնիսն քաջ եղեալ՝ զանցոյց արութեամբք, որ ըմպշամարտ սկայա-

it will hang as beautiful earrings like the precious pearl of great price. Only bow your head, and then the spiritual crown will be placed on your head and will adorn you more than would precious gems. Only incline to the royal summons, and then sweet savors will delight your palate. Only be thirsty for love, and then a spring of life will satisfy your arid thirst. Only wash yourself of dirt, and then the immortal and luminous garment will clothe you more splendidly than the sweet-smelling lily.

12. So I have attempted to penetrate to the core of these historical writings, to reveal their profundity to those who may wish to attend in wisdom to the profitable history. Now a command came to me, one Agathangelos[1] from the great city of Rome, trained in the art of the ancients, proficient in Latin and Greek and not unskilled in literary composition. Thus we came to the Arsacid[2] court in the reign of the brave, virtuous, mighty and heroic Trdat, who has surpassed all his ancestors in valor and who

զօր քաջութիւնս գործեաց ի մարտս պատերազմաց։ Ոչ զիւր ինչ քաջութիւն՝ սուտ հրամայեաց մեզ վիպասանել, և ոչ զքմազարդ բանից ինչ առասպելս աւելի քան զարժանն ընթանալ. այլ իբր որ եղեալք վասն յեղանակաց յեղափոխ ժամանակաց, մարտամբոխ պատերազմաց, սուրակոխ բազմահեղ արեանց կոտորածոյ, անհուն զօրաց շփոթելոց, գերութեան աշխարհաց, աւերածոյ գաւառաց, քանդելոյ քաղաքաց, մատնելոյ աւանաց, հարկանելոյ բազմութեան մարդկան վասն քաջութեան քինախնդիր վրիժուց։

13 Արդ՝ հասեալ առ իս հրաման ի մեծ արքայէն Տրդատայ՝ կարգել ինձ ի ձեռնարկութենէ նշանագիր ժամանակագրացն՝ պատմել նախ զհայրենեացն գործս քաջութեան քաջին Խոսրովու, և որ ինչ գործք գործեալք քաջութեան մարտից պատերազմացն, ընդ շրջշրջումն տէրութեանն փոխելոյ ընդ կոյսս հարկանելոյ, և ազգաց խռովելոյ. և կամ վասն մահուանն քաջին Խոսրովու, թէ ուստի՞ և կամ զիա՞րդ և կամ ո՞րպէս, և կամ զի՞նչ անցք անցին. և կամ վասն հօրամոյն քաջութեանն Տրդատայ, և որ ինչ գործ գործեաց յամս յաւուրս իւրոյ ժամանակաց. և կամ վասն սիրելեաց վկայիցն Աստուծոյ, թէ ո՞րպէս և կամ զիա՞րդ եկեալ, իբրև լուսաւորք ծագեցին, փարատել զմէգ խաւարի ի Հայաստան աշխարհէս. կամ ո՞րպէս զանձինս իւրեանց

has done deeds in battle worthy of champions and giants. He ordered us to narrate, not a falsified account of his own brave deeds, nor unworthily to elaborate capricious fables, but what really occurred in various times, warlike battles, the slaughter of men with great bloodshed, the clash of vast armies, the subjection of lands, the plundering of provinces, the razing of cities, the capture of towns, the struggle of many men for renown or vindictive revenge.

13. So the order came to me from the great king Trdat to compose a narrative from literary historical sources:[1] first, the valiant deeds of his father the brave Khosrov, and whatever valorous acts were performed in battle when his kingdom was in confusion and flux; and then the death of the valorous Khosrov, whence, why, how and what took place; and then the bravery of Trdat equal to his father's,[2] and whatever deeds he accomplished in his own time; and then about God's beloved martyrs, how and why they came, who arose like luminaries to scatter the mist of darkness from this land of Armenia; then how they gave up their lives

*փոխանակեցին ընդ Աստուծոյ ճշմարտութեանն. և կամ որպէս գթացեալ Աստուծոյ՝ այց արար Հայոց աշխարհիս, ի ձեռն առ միոջ եցոյց զսքանչելիս մեծամեծս, որ համբերութեամբ բազում և ազգի ազգի փորձութեանց և կապանաւոր վրշտաց մենակռիւ մենամարտիկ երկպատական բռնութեան յԱրտաշատ քաղաքի վասն Քրիստոսի յաղթութեամբ տարեալ, որոյ զվկայ անուն ժառանգեալ, որ ի մահ հասեալ մտեալ, և կամօքն Աստուծոյ այսրէն դարձեալ՝ ի վերակացութիւն դառնայր յերկիրս Հայոց։ Սա մտեալ ի դրունս մահու՝ դարձեալ անտի կամօքն Աստուծոյ, վարդապետութեանն Քրիստոսի պատգամաւոր գտեալ, յետ Աստուծոյ սքանչելագործ պատուհասին մարդասիրութեանն։ Իսկ բարեացապարտն Տրդատ յանկարծակամ՝ կենացն ապնջական ցանկալի ամենեցուն լինէր, որ աշխարհածնունդ հայրենեացն որդի գտանէր շնորհօքն Աստուծոյ, և յաւիտենական կենացն մերձաւոր լինէր։*

14 *Եւ արդ՝ քանզի ըստ օրինակի գրելոցս առ ի մէնջ՝ ոչ եթէ ի հին համբաւուց տեղեկացեալք մատենագրել զայս կարգաւ, այլ որոց մեզէն իսկ եղեալ ականատես կերպարանաց և առընթերակաց հոգևորական գործոցն, և լուսաւոր շնորհապատում վարդապետութեանն, ըստ աւետարանական հրամանացն, և կամ որպէս լուսաւոր վարդապետութիւնն գեր ի վերոյ ամե-*

for God's truth; how God had mercy and visited this land of Armenia, and showed great miracles through one man, who endured many and various torments and afflictions in prison, as in his solitary struggle he triumphed for Christ over a double tyranny in the city of Artashat,[3] who acquired the title of martyr, who came as far as death yet by God's will returned from there and was raised up again to life in this land of Armenia. He entered the gates of death [cf. Ps. 106.18] but returned by the will of God; he became the messenger of Christ's teaching, after God's miraculous and merciful punishment. Then how the meritorious Trdat accepted unhoped for salvation and became dear to all, becoming by the grace of God the son of his reborn native land and heir[4] to eternal life.

14. So since we intend to set out this account properly, we have not composed our book by taking our information from ancient reports but after seeing with our own eyes the persons involved and the accompanying spiritual deeds and the illuminating and graceful teaching which followed the precepts of the gospel.[1] (We shall tell) how this illuminating teaching was honored above all else

նեցուն շնորհօքն Աստուծոյ յարգեցաւ։ Զոր առեալ թագաւորին՝ զամենեսեան աստուածակարգ լծոյն հնազանդեցուցանէր. մանաւանդ թէ ոչ նա, այլ կամք մեծազօրին Քրիստոսի։ Եւ կամ որպէս զմեհեանսն ի ձեռս տուեալ՝ կործանեալ աւերեցին, և սուրբ հիմունք եկեղեցեաց կանգնէին. կամ որպէս զնոյն ինքն աշխարհի հովիւ կացուցեալ՝ վայելէին ի նորուն վարդապետութեանն. և կամ որպէս դարձաւ Տրդատ անդրէն յաշխարհն Յունաց յամս աստուածասէրն Կոստանդեայ, թագաւորի կացելոյ Յունաց և Հռովմայեցւոց աշխարհին, և կամ որպէս ուխտ եդեալ, հաստատեալ զնա յաստուածպաշտութիւն՝ դարձեալ լինէր անտի մեծաւ պարգևօք և բազում փառօք, և կամ որպէս զբազում տեղիս՝ Աստուծոյ նուիրեալ Տրդատ մատուցանէր։ Զայս ամենայն մի ըստ միոջէ ոճով պատմեսցուք, Վարդապետութեամբ սորոյն, որ արժանի եղև ի մեծ յեպիսկոպոսական աթոռն հասանել, և զհայրապետական անուն ժառանգեաց, մեծամարտն առաքինութեամբ, թէ ուստի՞, յորո՞ց կամ ո՛ ոք էր, կամ յորմէ՞ ազգէ, որ զայս արժանի եղև գործել աստուածատուր շնորհօքն տուելովք։

15 Արդ՝ ելից ի մտաց երիվարն, և յարմարեցից զասպարէզն հանճարոյ. ուղղեցից զնպատակն խորհրդոյ, և թափ տաց ուժի բազկօքս և ձգեցից ի կորովս գրչի մատանցս, և լեզուաւս

by the grace of God. This the king accepted, and he subjected everyone to the divine yoke—or rather not he but the will of the all-powerful Christ. And how they undertook the destruction of the pagan temples and the holy foundations of churches were established. How they appointed the same man as shepherd of the land and enjoyed his teaching. And how Trdat went back to the land of the Greeks in the reign of the pious Constantine, the established king of the empire of Greeks and Romans. And how he made a covenant and strengthened him in piety and then returned with great gifts and much honor. And how Trdat dedicated to God many places. All this we shall relate in detailed succession, with the *Teaching*[2] of the saint who was made worthy of ascending the great episcopal throne and who inherited the patriarchal title[3] as the champion of virtue—whence, from what descent, from what family and who was he who became worthy to do this by divine-given grace.

15. So I shall mount the steed of the mind[1] and follow the course of understanding. I shall aim at the goal of thought and spur on by the strength of my arm and draw upon the force of the scribe's finger. With my tongue

*զխորհուրդս յուզեցից, և շրթունքս ի շշնջել իմաստունս կարասցեն, և կարգել հաստատական, յեղեղուկ հոլովել զանիւ պատմութեան բանիցս, զի կամակարագոյնս նուիցեմք զալեօք ժամանակագրական ծովուս. պատմել յազգ յայլ ժողովրդին ստացելոյ, որք օրհնեսցեն զտէր, որք յետ այսր անցեալ ժամանակաց գալոցն իցեն, որք հարցեալ զհայրենական մատեանսն՝ պատմեսցի նոցա, և զծրագիր կարգեալս՝ և ասասցի նոցա։*

16 *Ընթերցեալ զԹորգոմայ ազգիս, զՀայաստան աշխարհիս զաստուածապարգև աւետեացն աւետարանին քարոզելոյ բանին կենաց, թէ ո՛րպէս կամ զիա՛րդ ընկալան, և ո՛րպիսի արամբ, կամ ո՛ ոք ուստեք, որ զայս նորոգատուր զառաքելաբար շնորհս յանձին ցուցանելով՝ այնպիսի աստուածեղէն շնորհօք երևեցաւ։ Եւ վասն նորին լուսաւոր վարդապետութեանն և հրեշտակակրօն վարուցն առաքինութեան և կարգացն, ազնուական համբերութեանցն շնորհալից մեծազօր նահատակին, որ և խոստովանող Քրիստոսի գտեալ և վկայ ճշմարտութեան. և կամ ո՛րպէս յայնմ հետէ շինութիւն և խաղաղութիւն, լիութիւն և պտղաբերութիւն և բժշկութիւն աղօթիւք նորա շնորհեցաւ յԱստուծոյ։ Եւ թէ զիա՛րդ նորուն աստուածսիրութեամբ և Քրիստոսի զօրութեամբ նմա տուելով՝ անկան փշրեցան ունայ-*

I shall provoke thoughts, and my lips will be able to enunciate wise sayings. I shall keep a steady course and turn the rotating wheel of my historical narrative, so that we may happily navigate the waves of this chronological sea;[2] that it may be told to future generations of this people, who are to come after these times have passed, and who will bless the Lord [cf. Ps. 101.19]. They will inquire in their ancestral books and it will be narrated to them, and (they will inquire) in the ordered accounts and it will be told them [cf. Deut. 32.7].

16. They will read about the preaching of the divine gospel of the word of life to this race of T'orgom,[1] this land of Armenia. How and why they received it, by what man, and who and whence he was who showed in himself this newly-given apostolic grace, and appeared by such divine grace; and concerning his illuminating teaching and the virtue and order of his angelic life, the honorable endurance of this grace-filled and mighty champion, who was a confessor of Christ and a martyr to truth. And how, after this, prosperity and peace, plenty,[2] fruitfulness and healing through his prayers were granted by God. And how by his love for God and the power of Christ given him, the cults of inanity fell and were crushed,

նութեան պաշտամունքն, և աստուածպաշտութիւն տարածեցաւ ընդ ամենայն երկիրս Հայոց։ Եւ կամ որպէս շինեցան եկեղեցիք ի Հայաստան աշխարհիս, և քակեցան ունայնութեան պաշտամունքն, այն որ ի սովորական մոլորութենէ նախնեացն՝ ընդվայրակոշկոճ, գրթախադաց քարանցն և փայտիցն յիմարութիւնքն էին, և ուրուապաշտ թմբրութիւնքն անզգայութեանց. իբրև արբեալք անմտութեամբքն, պակուցեալք շռայլութեամբն մեղաց, դիւցախելառ մրրօքն գնայլին ի մէջ ծովացեալ մեղացն չարութեան։ Որ կամօքն Քրիստոսի քարոզ գտեալ արդարուսոյց՝ ամենեցուն Հայաստան աշխարհիս, չկապել ընդ գարշապարս մեղաց ի ծովանման յաշխարհիս յայսմիկ։ Այլ ի հողմախաղաղ յանքոյթ նաւահանգիստն հասեալ աստուածահօրն շինութեան, կենաց մշտնջենականաց անդ պատրաստեաց օթեվանս նոցա։

17 Իսկ իմ անցեալ սահեալ շրջեալ ի վերայ յորձանախոր, լայնանիստ, յարաճօճ, անդընդապտոյտ, սարսռասէր, անհանգիստ, արշաւասոյր, օդավար, ջրակուտակ յուզակ ալեացն, սրավարացն մոլեգնելոցն, ձգտեալ ի կղզիս քաղաքացն և յաշխարհս հեռաբնակս, գտեալ լցեալ մեծաբեռն խստաբեռունս, ինչ ինչ պատուական և արգոյ, ի զարդ և յօգուտ՝ եկեալ հասուցաք ի կայս հանգստեան ձերոյ օգտութեան. փութա-

and true piety spread through the whole of this land of Armenia. And how churches were built in Armenia, and the cults of inanity were broken, which through the habitual error of our ancestors had been foolish forms of uselessly worked and beguiling stone and wood, idolatrous fancies of insensibility. They were as if drunk in folly [cf. Prov. 4.17] and stupified by the glamour of sin, and like lees in their demonic frenzy they sank down in the sea of wickedness of sin.[3] But he by the will of Christ became a preacher teaching justice to all in this land of Armenia, lest they be stuck in the footsteps of sin in this world which resembles the sea. But when he entered the calm unruffled harbor of God the Father's tranquility, he there prepared for them lodgings of eternal life.

17. But I have skimmed over the deeply billowing waves, the extensive oceans that are ever swelling, and like a vortex swirl as they are restlessly driven by the wind and piled up to agitated and furious heights. After reaching islands, cities and distant lands, finding heavy argosies filled with treasure, and numerous valuables and wealth for decoration and profit, I have brought them to the sure repose of your profit.

ցեալ բացցուք զթանգարական վաճառս խանթից. վաճառեսցուք լսելեաց զգիւտս աշխատութեան մերոյ, առնուլ զունկնդրութիւն և տալ զպատմութիւն։ Մանաւանդ վասն քոյոյդ հրամանի, քա՛ջ արանց Տրդատ արքայ Հայոց մեծաց, բերեալ զշահ վաճառին աշխարհի շինութիւն՝ քեզ ի գանձ յաւելցուք ի մերոյ ծովավաստակ նաւաստեացս։

Let us hasten to open the treasures of these stores. Let us sell to the audience the results of our labor, win their attention and offer our story.[1] Especially on account of your command, noblest of men,[2] Trdat, king of Greater Armenia, we shall bring as the gain of our commerce the prosperity of the country, and we shall increase your treasure through the labor of our seagoing voyages.[3]

# ԱԳԱԹԱՆԳԵՂԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՎԱՐՔ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

18 *Ընդ նուազել ժամանակաց թագաւորութեանն Պարթևաց, ի բառնալ տէրութեանն յԱրտաւանայ որդւոյ Վաղարշու, ի սպանանել զնա Արտաշրի որդւոյ Սասանայ,—որ էր նախարար ոմն ի Ստահր գաւառէ, որ եկեալ միաբանեաց զզօրս Պարսից, որք լքին խոտեցին մերժեցին անարգեցին զտէրութիւնն Պարթևաց, և հաճեցան հաւանութեամբ ընտրել զտէրութիւնն Արտաշրի որդւոյ Սասանայ,—արդ իբրև յետ մահուն հասանելոյ գուժիս այսորիկ առ Խոսրով թագաւորն Հայոց,—որ էր երկրորդ տէրութեանն Պարսից, զի որ Հայոց թագաւոր էր՝ նա էր երկրորդ Պարսից տէրութեանն,—արդ՝ թէպէտ և վաղու լուեալ զբօթն՝ ոչ ինչ ժամանեաց հասանել յամբովկ գործոյն պատերազմի իրացն պատրաստութեան։ Յետ այսորիկ դարձեալ լինէր յիրացն եղելոց մեծաւ տրտմութեամբ, զի ոչ եհաս ինչ նմա գործել գործ. ի մեծ ի տրտմութենէն և յիրացն վճարելոյ դարձեալ անցեալ եկեալ լինէր յաշխարհն իւր։*

# THE LIFE AND HISTORY OF SAINT GREGORY

[Chapter 1. The wars of Khosrov against Sasanian Iran; his murder and the occupation of Armenia]

18. The period of the Parthian kingdom came to an end when sovereignty was taken away from Artavan son of Vaḷarsh on his murder by Artashir son of Sasan.[1] The latter was a prince from the province of Stahr[2] who had come and united the forces of the Persians; they then abandoned and rejected and disdained the sovereignty of the Parthians and happily chose the sovereignty of Artashir son of Sasan. So after the sad news of his death reached Khosrov king of the Armenians—who was second in the kingdom of the Persians, for whoever was king of Armenia had second rank in the Persian kingdom[3]—although he was quickly informed of the sad news, he had no time to complete preparations for war. Then he returned in great sadness at the course of events, for he had been unable to accomplish anything. And he returned to his own country greatly distressed.[4]

19 *Արդ՝ ի միւս ևս ի գլուխ տարւոյն սկըսանէր Խոսրով թագաւորն Հայոց գունդ կազմել և զօր բովանդակել, գումարել զզօրս Աղուանից և Վրաց, և բանալ զդրունս Ալանաց և զՃորայ պահակին, հանել զզօրս Հոնաց, ասպատակ դնել ի կողմանս Պարսից, արշաւել ի կողմանս Ասորեստանի, մինչև ի դրունս Տիզբոնի: Աւար առեալ զերկիրն ամենայն՝ յապականութիւն դարձուցանէր զշինանիստ քաղաքացն և աւանացն ցանկալեաց. զշէն երկիրն ամենայն թափուր և աւերակ թողոյր. ջնջել ի միջոյ ի բաց կորուսանել, խլել քակել, հիմն ի վեր ջանայր առնել, համարէր բառնալ զօրէնս տէրութեանն Պարսից: Ուխտ եդեալ միանգամայն՝ վրէժ խնդրել մեծաւ քինութեամբ զանկանելն իւրեանց ի տէրութենէն. սպառ սպուռ ջանայր զվրէժ խնդրել, մեծաւ քինու նախանձաբեկ լինելով. մեծամեծս փքայր՝ ի բազմութիւն զօրացն ապաստան եղեալ, և ի քաջութիւն զօրացն յուսացեալ: Վաղվաղակի ի թիկունս հասանէին մեծաւ բազմութեամբ ժիր և քաջ առն և ձիոյ և բուռն կազմութեամբ Աղուանք, Լփինք և Ճիղպք, Կասպք և այլ ևս որ ի սմին կողմանց, զի զվրէժ արեանն Արտաւան խնդրեսցեն:*

20 *Զի թէպէտ և էր ինքն ի մեծի տըրտմութեան վասն բնութեան եղբայրութեան ազգատոհմին, զի հնազանդեցան և ի ծառայութիւն*

19. But at the start of the next year Khosrov king of Armenia began to raise forces and assemble an army. He gathered the armies of the Albanians[1] and the Georgians,[2] opened the gates of the Alans[3] and the stronghold of the Chor;[4] he brought through the army of the Huns[5] in order to attack Persian territory and invade Asorestan[6] as far as the gates of Ctesiphon. He ravaged the whole country, ruining the populous cities and properous towns. He left all the inhabited land devasted and plundered. He attempted to eradicate, destroy completely, extirpate, and overthrow the Persian kingdom and aimed at abolishing its civilization. At the same time he made an oath to seek vengeance with great rancor for their (the Parthians')[7] loss of sovereignty; ruthlessly he attempted to exact thorough vengeance [cf. I Macc. 9.42]. He was greatly puffed up [cf. II Macc. 9.4], trusting in the number of his forces and hoping in the valor of his army. There quickly arrived in support great numbers of strong and brave cavalry detachments, Albanians, Lp'ink',[8] Chiḷpk',[9] Kaspk'[10] and others from those regions, in order to seek vengeance for the blood of Artavan.

20. For because of[1] his family relationship to that dynasty he was very grieved that they (the Persians) had submitted

մտին համբարձելոյ թագաւորութեան Ստահրացւոյն, և ընդ նմին միամտեցան. զի թէպէտ և էր Խոսրովու և դեսպան արարեալ, զի իւրեանց տոհմայինքն ի թիկունս եկեսցեն և նոցա ընդդէմ կայցեն ընդ նորա թագաւորութեանն, անտի սմա ձեռն տուեալ ի կողմանց Քուշանաց, և յայնմ մարզէ և յիւրեանց ի բուն աշխարհէն և ի քաջ ազգաց և ի մարտիկ զօրացն զի ի թիկունս հասցեն. սակայն տոհմքն և ազգապետքն և նախարարքն և նահապետքն Պարթևաց ոչ լինէին ունկնդիր. զի միամտեալ և հաւանեալ և նուաճեալ էին ի տէրութիւնն Արտաշրի, քան ընդ տէրութիւն իւրեանց ազգատոհմին և եղբայրութեանն։

21 Սակայն առեալ Խոսրովու զբազմութիւն զօրաց իւրոց, և որ ուստեք ուստեք եկեալ հասեալ էին ի թիկունս օգնականութեան նիզակակիցք գործոյն պատերազմի։ Իսկ իբրև ետես թագաւորն Պարսից զայն ամբոխ բազմութեան գնդի, զի մեծաւ ուժով դիմեալ եկեալ հասեալ էին ի վերայ նորա՝ ել և նա ընդ առաջ նոցա ի պատրաստութիւն պատերազմի։ Բայց սակայն ոչ կարաց ունել զդէմ նորա, փախստեայ լինէր առաջի նոցա. զհետ մտեալ կոտորէին զամենայն զօրսն Պարսից, և դաշտացն և ճանապարհացն ցիր դիաթաւալ կացուցանէին և չարախտավատ վատնէին և անհնարին հարուածս ի վերայ հա-

and accepted the rule of the Stahrian and had united with him. And although Khosrov sent an embassy so that his relatives would support him and with his own kingdom oppose (the Persians), and that there would also come to his aid (contingents) from the regions of the Kushans,[2] brave and valiant armies both from that area and their own land, yet his relatives, the chiefs and princes and leaders of the Parthians paid no heed. For they had attached themselves in obedience and subjection to the rule of Artashir, rather than to the rule of their relative and brother.

21. Nonetheless Khosrov took the vast numbers of his army, plus whatever lancers had arrived to support him in the war. And when the Persian king saw the great size of this force bearing down upon him with enormous strength, he advanced against them in battle array. However, he was unable to resist them, and fled before them. In pursuit they cut down the whole army of the Persians, scattering corpses over the plains and roads, and inflicting cruel and unbearable suffering.

սուցանէին։ Եւ թագաւորն Հայոց դառնայր ի մեծ կոտորածէն մեծաւ յաղթութեամբ և բազում աւարաւ և ցնծալից ուրախութեամբ ի կողմանսն Հայոց յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, մեծաւ ուրախութեամբ և բարի անուամբ և բազում աւարաւ։

22 Ապա հրաման տայր ընդ կողմանս կողմանս դեսպանս արձակել, հրովարտակս առնել, յեօթն բագինս մեհենիցն ուխտաւոր լինել պատկերաց կռոց դիցն պաշտաման։ Սպիտակ ցլուք և սպիտակ նոխազօք, սպիտակ ձիովք և սպիտակ ջորւովք, ոսկեղէն և արծաթեղէն զարդուք, ի վերջաւորս փողփողեալս, նշանակապ պալարակապ մետաքսիւքն և ոսկովք պսակօք և արծաթի զոհարանօք, յանօթս ցանկալիս ակամբք պատուականօք, ոսկով և արծաթով, ի հանդերձս պայծառս և ի զարդս գեղեցիկս, զիւր ազգին Արշակունեաց զհայրենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր։ Նա և հինգերորդ ևս հանէր յամենայն մեծամեծ աւարացն ածելոց, և մեծամեծ պարգևս քրմացն շնորհէր։ Իսկ զօրացն որ զիւրեաւն էին՝ ետ պարգևս և արձակեաց յիւրմէ։

23 Իսկ ի գալուստ ամին միւսոյ զօր բազում կուտէր յոյժ, գումարտակ առնէր, զնոյն զօր կոչէր, և ևս բազում քան զնոյն ասպատակ սփռեալ զկողմամբքն Ասորեստանի. մանաւանդ

After this great slaughter the Armenian king joyfully and victoriously returned with much booty to the land of Armenia, to the province of Ayrarat and the city of Valarshapat,[1] with great rejoicing, with good renown, and with much plunder.

22. Then he commanded that ambassadors be sent throughout the land, that edicts be composed and vows be made to the seven altars of the temples of the cult of the images of the idols.[1] He honored the sites of the ancestral worship of his Arsacid family[2] with white oxen and white rams, white horses and white mules, gold and silver ornaments, fringed and tasseled silks, gold crowns and silver altars,[3] beautiful vases with precious gems, gold and silver, shining raiment and lovely decoration.[4] Similarly he took a fifth of all the enormous booty he had collected and gave splendid gifts to the priests. And to the soldiers who had followed him he gave gifts before dismissing them.

23. Then at the beginning of the next year he gathered a great army [cf. I Macc. 4.27-8], summoning the same troops; and with even more than these, because the forces of the Tachiks[1] had come to his support, he spread his invasion over the regions of Asorestan.

գի և զօրք Տաճկաց ի թիկունս եկեալ էին. աւար առեալ զերկիրն ամենայն՝ քաջութեամբ դառնային յիւրաքանչիւր տեղիս։ Եւ ամս մետասան ստէպ ստէպ զայս օրինակ աւար առեալ՝ աւերէին զամենայն երկիր սահմանացն, որ ընդ Պարսից թագաւորութեամբն և ընդ իշխանութեամբն էր։

24 Իսկ իբրև զայն ամենայն չարիս ետես թագաւորն Պարսից, որ եկին հասին ի վերայ նորա՝ նեղեցաւ, տառապեցաւ, տագնապեցաւ, տարակուսեցաւ, վարանէր յանձն իւր. առ ինքն կոչէր զամենայն թագաւորս և զկուսակալս և զնախարարս և զզօրավարս և զպետս և զիշխանս իւրոյ տէրութեանն. ի խորհուրդ մտանէին. աղաչէր զամենեսեան՝ հնարս ինչ մարթել խնդրել գտանել. ազգի ազգի պարգևս խոստանայր. թերևս ոք միայն գտցի, ասէ, որ զվրէժս հատուցումն խնդրել մարթասցէ. յերկրորդական գահ իւրոյ տէրութեանն մատուցանել խոստանայր, թէ միայն նախանձու մեծի ձեռն արկեալ հատուսցէ ոք. բայց միայն աթոռովս ես ի վեր եղէց քան զնա, եթէ կարի յանարգաց ոք իցէ կամ ի պատուականաց. ազգի ազգի պատիւս և պարգևս և վարձուց հատուցմունս շնորհել խոստանայր։

25 Արդ՝ ումն ի միջոյ խորհրդեանն գլխաւոր նահապետ էր Պարթևաց տէրութեանն, որոյ

They plundered the whole land and victoriously returned to their own countries. And for ten[2] years they made continual incursions in this manner, plundering all the lands which were under the suzerainty and authority of the Persians.

24. But when the Persian king saw all these misfortunes which had befallen him, he was oppressed, afflicted, tormented, and plunged into hesitation and doubt [cf. I Macc. 3.29-31]. He summoned all the kings and governors and princes and generals and leaders and nobles of his kingdom[1] and they held council. He begged them all to seek and find a solution, promising all sorts of rewards. "If only someone be found," he said, "who will be able to exact vengeance," he promised to elevate him to second rank in his kingdom, if only someone would undertake to avenge him. "Only I and my throne will be above him, be he of very humble or of honorable origin." He promised to grant him all sorts of honors and gifts and rewards.

25. Now there was in the council a leading chieftain of the Parthian kingdom,

անունն էր Անակ. յոտն կացեալ, ի մէջ անցեալ՝
յիւրմէ ազգէն իբրև ի թշնամւոյ վերայ խոստա-
նայր վրէժ խնդրել:
26 Խօսել սկսաւ ընդ նմա և ասէ. «Եթէ մի-
այն զայդ նախանձ խնդրեսցես միամտութեամբ՝
զընութիւնն պարթևական, զձեր սեփական Պալ-
հաւն ի ձեզ դարձուցից, և քեզ թագ եղեալ փա-
ռաւորեցից, և երևելի և փառաւոր ի թագաւո-
րութեանս իմում արարից, և երկրորդ ինձ կո-
չեցից»:
27 Պատասխանի ետ Պարթևն և ասէ. «Զմնա-
ցորդս ազգի իմոյ կեցուսցես դու. այլ ես և եղ-
բայր իմ հարազատ այսօր հրաժարիմք ի քէն»:
28 Յայնմ ժամանակի հանդերձեցաւ կազ-
մեցաւ Պարթևն եղբարբն իւրով հանդերձ, ըն-
տանեօք կանամբք և որդւովք և ամենայն աղ-
խիւ իւրեանց. չու արարեալ յուղի անկեալ, դէտ
ակն կալեալ ճանապարհացն՝ ելեալ երթայր հա-
տուածի պատճառաւ ի կողմանս Հայոց, իբրև
թէ ապստամբեալ իցէ յարքայէն Պարսից: Եկեալ
յանդիման եղև թագաւորին Խոսրովու յՈւտի
գաւառի, ի Խաղխաղ քաղաքի, ի ձմերոցս ար-
քայութեանն Հայոց:
29 Իբրև ետես թագաւորն Հայոց՝ ցնծա-
ցեալ ել ընդ առաջ նորա և մեծաւ խնդութեամբ
ընկալաւ զնա. մանաւանդ իբրև կեղծաւորու-
թեամբ և դաւով սկսաւ խօսել ընդ նմա և զիւ-

called Anak.[1] He rose, and coming forward promised to exact vengeance from his own king as if from an enemy.

26. He (the king) began to address him and said: "If only you settle this account loyally, I shall return to you (your) native[1] Parthian (land), your own Pahlav, and I shall honor you with a crown and make you famous and honored in my kingdom and call you second to me."

27. The Parthian replied and said: "Do you succor the rest of my family, while my brother and I today take our leave from you."

28. Then the Parthian made his preparations and arrangements, and with his brother, his household, their wives and children, and all his retinue, took his departure; he journeyed, spying out the roads, and came to Armenia on the pretext of emigrating, as if he had revolted against the Persian king. He came before king Khosrov in the province of Uti, at the city of Khaḷkhaḷ, in the winter quarters of the Armenian king.[1]

29. When the Armenian king saw him, he gladly went to meet him and welcomed him with great joy—especially when he began to speak deceitfully and fradulently with him and

րոյ գալոյն հաւատարմութիւն ցուցանել։ «Վասն այնորիկ եկի ես առ քեզ, ասէ, զի հասարակ զհասարակաց վրէժ խնդրել մարթասցուք։

30 Արդ՝ իբրև ետես թագաւորն զայրն, զի դիմեալ եկեալ էր առ նա ամենայն ընտանեօքն հանդերձ, և մտերմութեամբ հաւատաց ի նա. յայնժամ տայր նմա պատիւ ըստ օրինաց թագաւորաց, և հանէր նստուցանէր զնա յերկրորդ աթոռ թագաւորութեանն. և զամենայն ժամանակս ձմերայնոյն ուրախութեամբ զաւուրս ցըրտաշունչ հողմաշունչ սառնամանեացն անցուցանէին։

31 Իսկ իբրև եկին հասին աւուրք ջերոտ հարաւահողմն գարուն դրանցն բանալոյ՝ համբարձաւ թագաւորն ի կողմանցն յայնցանէ. եկին իջին յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք. և մինչդեռ ուրախութեամբ հանգուցեալ էին, ի միտ արկեալ թագաւորին՝ գումարտակ առնէր՝ անդրէն արշաւել ի կողմանս Պարսից։

32 Իբրև զայն լսէր Պարթևն՝ զերդումն ուխտին յիշէր որ ընդ Պարսից արքային ուխտեալ էր։ Նա և զխոստմունսն յիշէր զպարգևացն, և ի բուն աշխարհն փափագէր որ Պալհաւն կոչէր, և վատ խորհուրդ ի միտ արկանէր. առնոյր զթագաւորն մեկուսի նա և եղբայր իւր հարազատ՝ իբրև ի պատճառս ինչ զբօսանաց, իբրև խորհուրդ ինչ խորհել ընդ նմա. և զսուսերսն պո-

to show the sincerity of his coming: "I came to you," he said, "in order that we might be able to make common cause in seeking vengeance."

30. Now when the king saw this man arriving with all his household, he sincerely believed in him. Then he honored him in royal fashion and established him in the second rank of his kingdom. And for the whole duration of that winter they passed the days of chilling winds and ice in cheerfulness.

31. But when the warmer days of the southerly winds arrived to open the gates of spring, the king departed from those regions. They descended to the province of Ayrarat, to the city of Vaḷarshapat. And while they happily relaxed there the king decided to gather an army and invade Persian territory [cf. I Macc. 4.35].

32. When the Parthian heard of this he remembered the oath of his compact with the Persian king. He also remembered the promises of rewards, and had a yearning for his own country which was called Pahlav.[1] So he decided on an evil plan. He and his brother took the king aside, as if for recreation and to consult with him [cf. II Macc. 4.46].

ղովատիկս թերաքամեալս ունէին. յանկարծ յե-
ղակարծումն ժամանակի զէնս վերացուցեալ՝
զթագաւորն դիաթաւալ կացուցեալ յերկիր կոր-
ծանէին։ Անդուստ ուստեմն իրագգած եղեալ
իրացն որ եղեն՝ գոյժ աղաղակի ամբոխին թանձ-
րանայր. մինչ այս մինչ այն՝ նոքա հեծեալ յիւ-
րաքանչիւր երիվարս փախստական լինէին։

33 Իսկ իբրև զայն գիտացին նախարարք
հայակոյտ զօրացն՝ գունդ գունդ հատանէին,
զկնի լինէին. ոմանք ընդ ցամաքն աճապարեալ,
հասանել ի խելս կամրջացն առ դրունս Արտա-
շատ քաղաքի։ Զի գետն Երասխ յարուցեալ գայր
լի դարիւ և դարիւ, սառնահալ, ջրակուտակ,
ձիւնասոյզ, ձիւնախաղաղ բազմութեամբն յա-
ւուրս իւրոյ պղտորութեանն։ Կէսքն անցեալ ընդ
կամուրջն Վաղարշապատ քաղաքի, զոր և կա-
մուրջ Մեծամօրի կոչեն՝ աճապարէին հասանել
յառաջ մի ի խելս կամրջին Արտաշատու։ Ի
կիրճս ճանապարհացն արգելին զնոսա, ի մէջ
արարեալ զնոսա՝ ի Տափերական կամրջացն զե-
տավէժ առնէին զնոսա։ Եւ ինքեանք անդրէն
դարձեալ՝ վայիւք, ճչովք և ողբովք, և ամենայն
երկիրն ժողովեալ զթագաւորն աշխարէին։

34 Եւ մինչ դեռ ջերմ ոգիքն ի ծոցոյն չև
էին թափեալ, և շունչ վախճանին չև էր հա-
սեալ՝ հրաման տայր զազգատոհմն սատակել։
Յայնժամ սկսան սատակել և կոտորել. մինչև ոչ

They had half-drawn their steel swords, and suddenly raised their weapons and struck the king dead to the ground. As soon as the news of this event was divulged, the lamentation of the crowd waxed strong; meanwhile they had mounted their horses and had fled.

33. But when the princes of the Armenian army learned of this they split into groups and made pursuit. Some hastened by land to reach the head of the bridge at the gate of the city of Artashat. For the river Araxes had risen and was flowing full to both banks [cf. Jos. 3.15] with swollen masses of icy water from melting snow at the time of its flooding. The others passed over the bridge of the city of Vaḷarshapat which is called the bridge of *Metsamawr*[1] and hastened to precede them to the head of the bridge of Vaḷarshapat. In a narrow passage of the road they arrested them and from the bridge of *Tap'er*[2] they cast them into the river. They themselves then returned with cries of woe and lamentation, and the whole land gathered to mourn the king.

34. Before the warm spirit had left his breast and he had breathed his last [cf. II Macc. 7.14], (the king) ordered the extermination of their family. Then they began to massacre and slaughter them.

*թողին յերիտասարդաց մինչև յայն՝ որ ընաւ զաջ և զձախ ոչ գիտէր. Նաև զիգական տոհմն մաշէին ի սուր սուսերի իւրեանց: Բայց միայն երկուս մանկունս փոքրկունս յորդւոցն Պարթեւին պրծեալ ոմն ապրեցուցանէր ի ձեռն դայեկաց ուրումն. զմին ի կողմանս Պարսից, և զմին ի կողմանս Յունաց առեալ փախչէին:*

35 *Եւ եղև իբրև լուաւ զայս ամենայն թագաւորն Պարսից՝ զուարճանայր, զուարթանայր, տօն մեծ ուրախութեան առնէր զօրն զայն, և բազում ուխտ տրուշանացն կատարէր: Զօրաժողով լինէր, խաղայր գնայր, ասպատակ սփռէր զկողմամբք Հայաստան աշխարհին. զխօսուն և զանասուն, զծեր և զտղայ, զերիտասարդ և զմանուկ առ հասարակ խաղացուցանէր ի գերութիւն:*

36 *Անդ ոմն պրծեալ ապրեցուցանէր ի հինէ անտի որդւոցն Խոսրովու թագաւորին Հայոց՝ մանկիկ մի փոքրիկ, անուն Տրդատ. առեալ դայեկացն փախուցեալ ի դուռն կայսեր ի կողմանս Յունաց: Եւ զերկիրն Հայոց այնուհետև եկեալ արքային Պարսից յիւր անուն զտեղիսն անուանէր. և զզօրսն Յունաց փախստական արարեալ հալածական տանէին մինչև ի սահմանս Յունաց: Վիհս փոսացուցեալ՝ սահմանս հաստատէին, և տեղւոյն անուն եդեալ Դրունս Փոսից, առ տեղեաւն որում Սոյգն կոչէին: Եւ զայլ մարդիկ*

From among the children they left not even those too young to know their right hand from their left [cf. Jonah 4.11]. Likewise they exterminated the female side of the family by the sword. Only two[1] infant sons of the Parthian did someone[2] save and rescue through their nurses, who took them and fled,[3] the one to Persian territory and the other to Greek territory.

35. And it happened that when the Persian king heard of all this he greatly rejoiced, and he made that day a great and joyous festival and carried out many vows to the fire-temples.[1] He assembled an army and hastened to make incursions throughout the regions of Armenia. He brought into captivity men and beasts, old men and infants, youths and children alike.

36. But there escaped from the raid one of the sons of Khosrov king of Armenia, an infant[1] called Trdat; his tutors took him and fled to the emperor's court in Greek territory.[2] Then the Persian king came and imposed his own name on Armenia, and set the Greek army to flight, pursuing it to the borders of Greece. He had ditches dug to fix the frontier, and called the place "the gate of ditches" instead of the earlier title "the Pit."[3]

երկրին խաղացոյց, և զաշխարհն յինքն գրաւեաց։

37 Արդ՝ երթեալ, սնեալ և ուսեալ Տրդատէս առ կոմսի ումեմն Լիկիանէս անուն կոչեցելոյ։ Իսկ որդի Պարթևին որ ի կողմանս Յունաց գաղթեաց՝ սնանէր և ուսանէր ի Կեսարիայ Կապադովկացւոց քաղաքին. և մերձաւորեալ զնա սնոյց դայեկօք երկիւղիւն Քրիստոսի. և ուսեալ ևս զքրիստոսական դպրութեան հանգամանս, ընտանի եղեալ գրոց Աստուծոյ, և մերձեալ յերկիւղ Տեառն, որոյ անուն ճանաչէր Գրիգորիոս։ Իբրև տեղեկացաւ ի դայեկացն հայրենի գործոցն որ եղեալն էին՝ ել և գնաց առ Տրդատիոս ըստ հեշտ պաշտաման։ Եւ թաքուցանէր զանձն, և զայն ինչ ի վեր ոչ հանէր, թէ ո՛յր, կամ ուստի՛, կամ ո՛րպէս, կամ զի՛արդ. զանձն ի ծառայութիւն տուեալ ի հնազանդութեան պաշտէր առաջի նորա։

38 Ընդ ժամանակս ընդ այնոսիկ իշխանն Յունաց ի հալածել կայր զեկեղեցի Աստուծոյ։ Իսկ իբրև զգացեալ Տրդատիոս վասն Գրիգորի, թէ Քրիստոսական պաշտամանն հաղորդ է՝ սկսեալ այնուհետև պատուհասակոծ առնէր զնա, և ազգի ազգի արհաւիրս արկանէր ի վերայ նորա. բազում անգամ ի բանդս և ի կապանս տանջանօք նեղէր զնա՝ թողուլ ի բաց լինել նմա յերկրպագութենէն Քրիստոսի, և ի հնազանդու-

And he deported the other inhabitants of the land[4] and took possession of the country for himself.

[Chapter 2. Trdat in exile; his restoration to the throne of Armenia]

37. Now Tiridates[1] was raised and educated in the house of a certain count called Licinius.[2] On the other hand, the son of the Parthian who had taken refuge in Greek territory was brought up and educated in Caesarea, the capital of Cappadocia. And he was brought up by his tutors[3] in the fear of Christ; he received a Christian education, became acquainted with the scriptures of God, and drew near to the fear of the Lord. His name was called Gregory. When he had discovered from his tutors the deeds committed by his father, he went to Tiridates and voluntarily entered his service. But he hid his identity and did not reveal whose (son) he was or whence or how or why (he had come). He gave himself over to his employ and served him obediently.

38. In those times the ruler of the Greeks was engaged in persecuting the church of God.[1] And when Tiridates discovered that Gregory was a member of the Christian cult, he thenceforth began to castigate him and made all sorts of frightening threats to him. Often he imprisoned and bound him and tormented him, that he might abandon the worship of Christ

թիւն գտանել նմա դիցն սնոտեաց և պղծու-
թեանն պաշտաման։

39 Յաւուրս ժամանակացն այնոցիկ զօ-
րաժողով լինէր իշխանն Գթաց, և բազում գունդս
զօրաց ժողովեալ՝ գայր տալ մարտ պատերազմի
ընդ իշխանին Յունաց։ Պատգամս յղէր օրինա-
կաւս այսուիկ, եթէ «Ընդէ՞ր ընաւ եղանիմք
խառնամխի ի պատերազմ՝ սպառել զզօրս մեր,
և վտանգ և տագնապ միանգամայն աշխարհի
հասուցանեմք. ես աւասիկ ախոյեան եղանեմ
քեզ ի մերոց զօրաց աստի, և դու ինձ ի յու-
նականաց այտի. հասցուք եկեսցուք ի մարտի
տեղի. եթէ ես զքեզ յաղթահարեցից՝ Յոյնք ինձ
հնազանդեսցին ի ծառայութիւն. և թէ դու ինձ
յաղթեսցես՝ մեր կեանքս քեզ նուաճեսցին և հնա-
զանդեսցին. և առանց արեան և կոտորածոյ լիցի
շինութիւն կողմանցս երկոցունց»։

40 Եւ իբրև զայն ամենայն լուաւ թագա-
ւորն Յունաց՝ երկեաւ. քանզի օրինօք կազմու-
թեամբ, գունդ առ գունդ ճակատել ոչ առնուին
յանձն, և ըստ պատգամին պատշաճի ոչ կարէր
ունել յանձին, քանզի տկար էր յոսկերաց զօ-
րութեամբ. սրտաթափ եղեալ զարհուրեցաւ,
քանզի ոչ գիտէր, զի՛նչ տացէ բանիցն պատաս-
խանի։

41 Յայնմ ժամանակի հրաման տայր թագա-
ւորն՝ հրովարտակս և դեսպանս առնել առ իշ-

and turn to comply with the cult of the vain and impure gods.

39. At about that time the ruler of the Goths raised an army and assembled many forces and came to wage war with the ruler of the Greeks.[1] He sent messages to this effect: "Why do we come to make indiscriminate battle, to spread abroad our armies and bring disaster and tribulation on the country? Behold I come forth as a champion[2] from my army to challenge you, and do you (come forth) from the Greeks. Let us come together in a place of battle. If I vanquish you, the Greeks will submit to my rule. And if you vanquish me, our lives will be subject to you and in your hands. And let both our lands be spared blood and slaughter."

40. And when the Greek king heard all this he was afraid, because they[1] did not accept battle in fixed order, army opposing army.[2] And he was unable to agree to the proposition, because he was weak in bodily strength. He was disconcerted and terrified, because he did not know what reply to give.

41. Then the king gave a command that decrees and messages should be sent to

խանս և զօրս զօրութեան իւրոյ, զի ուր և իցեն՝ առ նա հասանիցեն վաղվաղակի։ Յայնմ ժամանակի իշխանք և զօրք և նախարարք առ նա հասանէին վաղվաղակի։ Առեալ և Լիկիանէ զբուն գունդն որ ընդ իւրով ձեռամբն էր՝ փութայր հասանէր ի տեղի պատերազմին՝ յանդիման լինել Թագաւորին, և Տրդատէս ընդ նմա։

42 Եւ մինչ դեռ գային գունդք զօրացն՝ դէպ եղև նոցա գալ մտանել ի նեղագոյն տեղի մի, յառուամէջս այգեստանւոյն, ի փողոցամէջս համբարոցացն, առ դրունս քաղաքին· քանզի զդրունս քաղաքին աղխեալ էր, զի ժամ էր հասարակ գիշերոյ։ Իբրև ոչ գտաւ խար երիվարաց զօրուն բազմութեան դարման կերակրոյ մինչև ի մէջգիշեր՝ հայեցեալ տեսանէին ի զուարափակ քաղաքորմի միոջ, զի խոտահամբար մթերեալ էր· և ոչ ոք կարաց ձգել զձեռն իւր վասն որմոյն բարձրութեան։ Յայնժամ Տրդատէս ելեալ և իջեալ՝ հոսէր ընկենոյր բարդս բարդս ի մէջ զօրացն մինչ ի լիութիւն բաւականի։ Նա և զհամբարապանսն իսկ և բազումս ի շանց յայսկոյս որմոյն ընկենոյր ի մէջ զօրացն, և ինքն անդրէն ելեալ իջանէր։

43 Զայն ամենայն ոյժ պնդութեան տեսեալ Լիկիանէս զարմացաւ։ Իսկ իբրև այգն զառաւօտն մերկացաւ՝ դրունք քաղաքին բացան, և զօրքն ամենայն առ հասարակ ի ներքս մտանէին·

the nobles and troops of his command,[1] that wherever they might be they were to come to him immediately. Then the nobles and troops and princes hastened to his presence. Licinius also took his own force that was under his command [cf. III Macc. 1.2] and hastened to the battlefield to meet the king; and Tiridates was with him.

42. And while the troops of his force were still on their way, they happened to enter a narrow place in a sunken pathway through the vineyard and barns leading to the gate of the city. Now the gates of the city were locked, it being midnight. Since no forage[1] could be found for the horses of the vast army in the middle of the night, they looked around and saw in a walled pen a great pile of hay. But no one was able to lay hand on it because of the height of the wall. Then Tiridates climbed over and threw back heaps of it to the troops until there was enough. He also threw the guards and many donkeys[2] over the wall among the troops, and he himself then climbed back.

43. When Licinius saw this great feat of strength[1] he was amazed. So when the morning dawned and the gates of the city were opened and all the troops had entered inside,

և Լիկիանէս յանդիման լինէր Թագաւորին, և ամենայն մեծամեծքն և սպարապետքն և զօրագլուխքն և իշխանքն։

44 Ապա կաց պատմեաց Թագաւորն իշխանացն զամենայն պատգամս Թագաւորին Գթաց։ Յայնժամ խօսել սկսաւ Լիկիանէս ընդ արքային և ասէ. «Մի՛ ինչ զարհուրեսցի սիրտ տեառն իմոյ. զի գոյ աստ այր մի ի դրան քում, զի իրքդ այդ նովաւ վճարին. Տրդատէս անուն նորա, ի տոհմէ Թագաւորին Հայոց աշխարհին»։ Եւ կաց պատմեաց զերեկորին զգործս քաջութեան նորա։ Յայնժամ հրաման ետ, և ածին զՏրդատիոս յանդիման Թագաւորին. և պատմեաց նմա կարգաւ զամենայն։ Յայնժամ ժամ ետուն կազմութեան մարտի՝ առ ի ժամ վաղուի զմիմեանս տեսանել պատերազմաւ։

45 Իսկ ի միւսում աւուրն ընդ այգն ընդ առաւօտն հրամայեաց արկանել ծիրանիս. և զարդարեցին զՏրդատիոս ի զարդ կայսերական, արկեալ զնովաւ զնշան Թագաւորութեանն. և ոչ ոք գիտէր վասն նորա. հրաման ել ամենեցուն, թէ ինքն իսկ կայսրն իցէ։ Եւ նորա առեալ զգունդն զօրաց բազմութեան՝ ի ձայն փողոյ տագնապաւ յառաջ մատուցանէր մինչև յանդիման Թշնամեացն։ Իբրև յանդիման եղեն միմեանց կայսերակերպն և Թագաւորն՝ մարակ ի կուշտ արարեալ երիվարացն ի միմեանս հասանէին. անդ

Licinius went to meet the king, with all the magnates and generals and officers and nobles.

44. When the king told his nobles all the words of the king of the Goths, then Licinius began to speak with the sovereign and said: "Let my lord's heart not be disturbed. There is here in your court a man by whom this affair can be managed. His name is Tiridates and he is from the family of the king of Armenia." And he told of his deeds of strength the previous night. Then he gave a command and they brought Tiridates before the king, and he told him everything in order. Then they agreed to the duel and arranged that they would meet each other in combat the next morning.

45. At dawn on the next day he ordered him to be clothed in purple, and they robed Tiridates with imperial garb and put on him the royal emblem. And no one recognized him, so the word went out to everyone that it was the emperor himself. So he left the vast mass of the army and with the sound of the trumpet advanced rapidly [cf. I Macc. 9.12] to meet the enemy. When the false emperor and the king came face to face, they whipped the flanks of their horses and charged each other.

յաղթահարէր կայսերակերպն զթագաւորն. ձերբակալ արարեալ՝ ածեալ յանդիման առաջի կայսերն կացուցանէր։

46 Յայնժամ մեծացոյց յոյժ թագաւորն զՏրդատիոս, և մեծամեծ պարգևս ետ նմա. թագ կապեաց ի գլուխ նորա և ծիրանեօք զարդարեալ մեծացոյց զնա, և կայսերակերպն զարդու շքեղացուցեալ մեծարեաց զնա. և գումարեաց ի ձեռս նորա զօրս բազումս յօգնականութիւն նմա, և արձակեաց յիւրական աշխարհն Հայոց։

47 Եւ յետ մարտին յաղթութեան քաջութեանցն զոր արար՝ դարձեալ լինէր ի կողմանցն Յունաց Տրդատ արքայ Հայոց մեծաց։ Խաղաց գնաց թագաւորն ի կողմանս Հայոց, և եկն եգիտ անդ զօրս բազումս Պարսից, զի զաշխարհն յինքեանս գրաւեալ էին ի ծառայութիւն. զբազումս կոտորէր, և զբազումս փախստականս արարեալ ի կողմանս Պարսից արկանէր. և զհայրենեացն տէրութիւն յինքն նուաճեաց, և զօրացաւ ի վերայ սահմանաց նորա։

48 Յառաջին ամին Տրդատայ արքայութեանն Հայոց մեծաց, խաղացին եկին հասին յԵկեղեաց գաւառ, ի գեւղն Երիզայ, ի մեհեանն Անահտական, զի անդ զոհս մատուսցեն. և իբրև կատարեցին զգործն անարժանութեան՝ իջին բանակեցան առ ափն գետոյն զոր Գայլն կոչեն։

49 Իբրև եկն եմուտ ի խորան անդր և յընթ-

Then the false emperor overthrew the king, and seizing him brought him before the emperor.

46. Then the emperor greatly honored Tiridates and bestowed handsome gifts on him. He crowned his head with a diadem, and decorated him with the purple and the imperial insignia. And he entrusted to him a great army for his support, and sent him to his own land of Armenia.[1]

47. So after his victorious show of strength, Trdat, king of Greater Armenia, returned from Greek territory. The king hastened to Armenia; when he arrived he found there a great army of Persians, because they had subdued the country for themselves. Many he slaughtered and many he threw back in flight to Persia. And he brought under his own sway his ancestral kingdom and ruled over its borders [cf. I Macc. 2.46].[1]

[Chapter 3. Gregory's tortures

*A. Dialogue between Gregory and Trdat*]

48. In the first year of the reign of Trdat in Greater Armenia, they[1] went to the province of *Ekeḷeats*'[2] to the village of *Erēz,*[3] to the temple of Anahit[4] in order to sacrifice there. And when they had completed this unworthy deed, they went down and encamped on the bank of the river called Gayl.[5]

49. When he had entered his tent and sat down to table,

*րիս բազմեցաւ, և իբրև ընդ գինիս մտին՝ հրաման ետ թագաւորն Գրիգորի, զի պսակս և թաւոստս ծառոց նուէրս տարցի բագնին Անահտական պատկերին։ Այլ նա ոչ առնոյր յանձն պաշտօնատար լինել դիցն երկրպագութեան։*

50 *Յայնժամ խօսել սկսաւ թագաւորն ընդ Գրիգորի և ասէ. «Այր մի օտարական և անաշխարհիկ՝ եկիր յարեցար ի մեզ, և զիա՞րդ իշխես պաշտել զԱստուածն զայն, զոր ես ոչ պաշտեմ»։ Եւ առ այն օր պահել հրամայեաց։ Եւ ի վաղիւանդր հրաման ետ, և ածին զԳրիգորիոս առաջի թագաւորին։*

51 *Խօսել սկսաւ թագաւորն ընդ Գրիգորի և ասէ. «Այսչափ ամք են, զի տեսի ես զքեզ, և յամենայն զօրութենէ քումմէ ծառայեցեր դու ինձ միամտութեամբ. և ես գոհ էի զվաստակոց քոց և ունէի ի մտի կեցուցանել զքեզ. ընդէ՞ր ոչ առնես զկամս իմ»։*

52 *Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Հրամայեալ է յԱստուծոյ, զի «Ծառայք հնազանդ լիցին մարմնաւոր տերանց», որպէս օրէն է, որպէս և դուդ իսկ վկայեցեր ինձ, զի ծառայեցի քեզ յամենայն զօրութենէ իմմէ։ Այլ զԱստուծոյ զպատիւն և զպաշտօն ոչ ումեք վայել է տալ. զի նա միայն է արարիչ երկնից և հրեշտակաց, որ փառաւորիչք են մեծութեան նորա, և երկրի և մարդկան, որ ի նմանէ են*

and when they had drunk well, the king ordered Gregory to present to the altar of Anahit's statue offerings of crowns and thick branches of trees. But he did not agree to serve the worship of the gods.[1]

50. Then the king began to speak with Gregory and said: "You have come and joined us as a stranger and foreigner.[1] How then are you able to worship that God whom I do not worship?" And he ordered him to be imprisoned for that day. The next morning he commanded and they brought Gregory before the king.

51. The king began to speak with Gregory and said: "It is these many years that I have known you, and you have served me faithfully with all your strength. I have been very satisfied with your labors and I intended to reward[1] you. Why then do you not do my will?"

52. Gregory replied and said: "It is commanded by God that 'servants should be obedient to their bodily lords' [Eph. 6.5], as is right and as you have borne witness to me that I have served you with all my strength. But it is not fitting to pay to any one else the honor and worship due to God. For he alone is the creator of heaven and of the angels, who glorify his majesty, and of earth and of men, who have been fashioned by him

*ստեղծեալ. որոց պարտ է պաշտել զնա և առնել զկամս նորա. և այլ ամենայն որ է ի նոսա, որ ի ծովու և ի ցամաքի»։*

53 *Արքայ ասէ. «Գիտասջի՛ր, զի ապախտ արարեր զվաստակսն զոր ինձն վաստակեցեր, որում ես եմ վկայ։ Արդ՝ փոխանակ կենացն զոր պարտ էր առնել քեզ՝ յաճախեմ քեզ նեղութիւնս, և փոխանակ պատուին՝ անարգանս. և փոխանակ բարձ տալոյ և յառաջ ձգելոյ՝ բանդ և կապանս, և մահ՝ որ հատանէ զյոյս կենաց մարդկան, եթէ ոչ առնուցուս յանձն դիցն պաշտօն մատուցանել, մանաւանդ այսմ մեծի Անահտայ տիկնոջս, որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ, զոր և թագաւորք ամենայն պատուեն, մանաւանդ թագաւորն Յունաց. որ է մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան, և ծնունդ է մեծին արին Արամազդայ»։*

54 *Ասէ Գրիգորիոս. «Ես քեզ միամտութեամբ վաստակեցի. ինձէն երբեք զիմ վաստակս ապախտ ոչ արարից. զի և գրեալ է յԱստուածոյ, եթէ «Ծառայեսցեն մարմնաւոր տերանց». զի այնմ տէր է հատուցանող բարեաց. զի ոչ ինչ ակն ի քէն ունէի եթէ հատուսցես ինձ, այլ յԱրարչէն, որոյ են ստացուածք իւր, երևելի և աներևոյթ արարածք ամենայն։*

55 *«Այլ վասն որոյ ասեսն, թէ նեղութիւն*

and whose duty it is to worship him and do his will; (as also should) everything else that is in them, in the sea and on land."[1]

53. The king said: "Know that you have made useless the services which you have rendered me and to which I am witness. Now, instead of the rewards which you should have received, I shall increase affliction upon you; and instead of honor, dishonor; and instead of elevation to high rank, prison and bonds and death which removes all hope of life for men—unless you agree to offer worship to the gods, and especially to this great lady Anahit.[1] She is the glory of our race and our savior; her all kings honor, especially the king of the Greeks. She is mother of all virtues, benefactor of all human nature, and the offspring of the great and noble Aramazd."[2]

54. Gregory said: "I have served you loyally. I myself shall never render vain my services. For it is written by God that 'they should serve their bodily masters' [Eph. 6.5]; because such the Lord recompenses[1] with blessings. For I had no expectation that I would receive compensation from you but from God, whose creation are all creatures visible and invisible.

55. "But as for your saying 'I shall increase affliction

յաճախեմ քեզ փոխանակ կենաց՝ հանելով զիս յայսց կենաց առ յաճախես ինձ զպատրաստեալ ուրախութիւնն Քրիստոսի. այն որոյ ուրախութիւնն յաւիտենից է, և արքայութիւնն ոչ անցանէ, և բարիքն ոչ պակասեն։ Եւ փոխանակ պատուին որ ասես անարգանս՝ շնորհես ինձ զպատիւն հրեշտակաց, փառաւորչաց Արարչին իւրեանց ցնծութեամբ։

56 «Եւ որ ասես, թէ փոխանակ բարձ տալոյ և յառաջ ձգելոյ ի բանտ և ի կապանս արկանեմ՝ երանի է ինձ, զի առից յանձն զօրինակ կապանաց Տեառն իմոյ. և ընդ նմին ուրախ եղէց և ցնծացայց յաւուր գալստեան նորա։ Եւ մերժելով ի քոց բազմականացդ՝ առ արկանես ինձ բազմականս առ հօրն հաւատոյ Աբրահամու, և ընդ արդարսն ամենայն, որ ուրախ լինելոց են յարքայութեանն Աստուծոյ։

57 «Եւ որ սպառնաս ինձ մահու՝ առ խառնես զիս ի գունդն Քրիստոսի, ուր են ամենայն կոչեցեալքն, հարքն և արդարք, և մարգարէքն և առաքեալքն, մարտիրոսքն և ամենայն ընտրեալքն։

58 «Այլ որ ասես, եթէ մահուամբ զկոյս հատանեմ կենաց՝ որպէս քո յոյսդ հատեալ է, և ամենայն աստուածապաշտաց և աստուածասիրաց յոյսն զօրացեալ է։ Իսկ որ միանգամ են իբրև զքեզդ, որ պաշտէք զկուռս համերս և ան-

for you rather than rewards,' by removing me from this life you will merely increase for me the joy of Christ that has been prepared for me [cf. Jn. 14.2-3]; his majesty is eternal, his kingdom passes not away [cf. Dan. 7.27], and his blessings do not fail. And instead of the dishonor which you promise in place of honor, you will grant me the honor of the angels, the joyous praisers of their creator.

56. "And as for your saying 'instead of elevation to high rank I shall cast you into prison and bonds,' I would be blessed to accept the example of my Lord's bonds. And with him I would be happy and rejoice in the day of his coming. And by depriving me of your company at table, you will merely cast me into the company of Abraham,[1] the father of the faith, and of all the just who will rejoice in the kingdom of God [cf. Matt. 8.11].

57. "And as for your threatening me with death, you will merely join me to the band of Christ, where are all those called, the fathers and the just, the prophets and the apostles, the martyrs and all the elect.

58. "You say 'by death I shall cut off hope of life,' just as your own hope is cut off, whereas the hope of all who serve and love God is strengthened. But those who are like you, who worship gods that are mute and

*շունչս, ձեռագործս մարդկան՝ արդարև իսկ էք յուսահատք ի ճշմարիտ կենաց անտի Աստուծոյ։*

59 *«Այլ զոր դուք կոչես մեծ Անահիտ տիկին՝ լեալ իցեն արդեօք մարդիկ ոք յայնժամ երբեմն ժամանակի։ Քանզի դիցապաշտ կախարդութեամբ զմարդիկն որ յայնժամն էին, ցնորիւք կերպս ի կերպս լինելով դիւացն՝ հաւանեցուցին մեհեանս շինել և պատկերս կանգնել և երկիր պագանել։ Որ ոչ իսկ են, ո՛չ չար և ոչ բարի ումեք ինչ կարեն առնել. ո՛չ պատուել կարեն զպաշտօնեայս իւրեանց, և ոչ անարգել զթշնամանադիրս իւրեանց. զոր դուքն ցնորեալ պաշտէք յափշութիւն մտաց ձերոց։ Եւ փոխանակ Աստուծոյ, յորոյ ի բարիսդ վայելէք՝ պաշտէք զփայտեղէնսդ և զքարեղէնսդ և զոսկեղէնսդ և զարծաթեղէնսդ, զոր Աստուծոյ կարգեալ է ի սպաս և ի պէտս և ի փառաւորութիւն մարդկան։*

60 *«Իսկ ինձ լիցի ամենայն հնազանդութեամբ և ամենայն միամտութեամբ և երկիւղիւ պաշտել զԱստուած արարիչ և զՈրդին հաստիչ և զՀոգին կազմիչ արարածոց, որ արար զամենայն, և եղծանել կարէ, և դարձեալ նորոգէ ողորմութեամբ իւրով։ Այլ մեր կեանքս չեն յուսահատութեամբ. զի պաշտեմք զկենդանին, որ կարող է կենդանութիւն տալ մեզ, յորժամ և կամի. զի թէպէտ և մեռանիմք՝ կենդանի եմք։*

lifeless, the work of men's hands [cf. Wis. 14.29; Is. 46.6], truly you are without hope of the true life of God.[1]

59. "But as for the one whom you call the great lady Anahit, there may well have been some such person at some time. For the demons by impious magic and by assuming various deceiving forms persuaded the men who lived at that time to build temples and set up images and worship them. But they do not really exist; they can do neither harm nor good to anyone; they can neither honor their worshippers nor dishonor their opponents. Your mind is deranged if you worship them. Instead of God, in whose blessings you rejoice, you are worshiping objects of wood and stone and gold and silver, which God has established for the service and needs and glory of mankind.[1]

60. "But may I in all obedience [cf. I Tim. 2.11] and all sincerity and fear worship God the creator and the Son the establisher[1] and the Spirit the disposer[2] of all creatures,[3] who made everything and can destroy and renew again by his mercy. Our life is not hopeless, for we worship the living one who can give us life when he wishes [cf. Rom. 4.17]. For although we die, yet we live.

*Զի որպէս որդին Աստուծոյ մեռաւ և եկեաց՝ և մեզ եցոյց օրինակ կենդանութեան յարութեամբն իւրով. զի որ մեռանիմքս վասն նորա՝ լինելոց եմք կենդանիք, յորժամ յայտնեսցի թագաւորութիւն Արարչին առ արարածս իւր, յորժամ խնդրեսցէ զվրէժ ամբարշտութեան, անաչառ դատաստանաւն ստուգութեամբ պահանջեալ յամենեցունց առ հասարակ»։*

61 *Արքայ ասէ. «Որ ասացերդ, թէ ի քէն ակն ոչ ունէի և ոչ պիտի իսկ՝ ես գիտեմ զի մահ խնդրես դու և անդէն ի գերեզմանի զհատուցումն քեզ, ուր են իսկ առաջինքն որ մեռանն. փաղփաղակի յղեմ զքեզ՝ ուր կամիսն երթալ։ Կամ ո՞վ այն Քրիստոսն իցէ. ցո՛յց ինձ, զի գիտացից. ո՞ այն ոք իցէ հատուցանող վաստակոցն քոց, զոր կոչես դու արարիչ. միթէ նա՞ ոք իցէ շահապետ գերեզմանաց, որում դուն ցանկաս հասանել, կամ բանդակալ կապանաց քոց նա՞ իցէ արձակիչ։*

62 *«Եւ ո՞ւր իցեն արդեօք անպակաս ուրախութիւնքն զոր ասես, և կամ զի՞նչ գալուստն իցէ, ոչ գիտեմ. կամ զի՞նչ հրեշտակք իցեն, զոր ասես, կամ զի՞նչ յոյսն ձեր իցէ և մեր յուսահատութիւնն. ա՛ղէ, դու ասա՛ ինձ զայս ամենայն մեզմով։ Այլ ոչ թողից քեզ զանարգանս դիցն զոր թշնամանեցեր զնոսա. զի ասացեր, բա՛ս, մարդիկ են, և ի մահկանացու բնութիւն*

For just as the Son of God died and rose[4] and by his resurrection showed us the model[5] of life, so we who die for his sake will come alive [cf. I Thess. 5.9] when the kingdom of the creator will be revealed to his creatures, when he will seek vengeance for impiety, demanding it with impartial and rigorous judgment from all alike [cf. II Thess. 1.8-9]."

61. The king said: "As for your statement 'from you I expected nothing, nor have I need,' I know that you are seeking death and recompense for yourself in the tomb, where are the former men who died. I shall quickly send you where you wish to go. But show me who that Christ may be, that I may know who might be that recompenser [cf. Rom. 2.6; II Tim. 4.8] of your labors, he whom you call Creator. Could he be some ruler of the tombs whom you wish to meet, or is he one who would free you from your imprisoning bonds?[1]

62. "Where then the unfailing joy of which you spoke might be, or what the coming might be, I know not. Or what the angels are of whom you spoke, or what are your hope and our hopelessness. Come then and kindly explain all this to me. But I shall not absolve you from the opprobrium of the gods whom you have insulted. For you yourself said 'they are men' and you brought them down to mortal nature.

իջուցեր զնոսա. և անհնարին թշնամանս զոր եդեր դիցն և կամ մեզ իսկ թագաւորացս. զի ասացեր, եթէ խեղագարք են թագաւորք որ պաշտեն զնոսա»։

63 Գրիգորիոս ասէ. «Քրիստոս է որդի Աստուծոյ, յորոյ ի ձեռն արար նա զաշխարհս և կազմեաց. դատիչ կենդանեաց և մեռելոց, տէր և հատուցանող բարերարացն բարիս և չարարարացն չարիս միանգամայն։

64 «Նա, որպէս ասացեր իսկ դու, արդարև շահապետ է գերեզմանաց և պահապան. զի իբրև մեռաւ նա կամօքն իւրովք և եմուտ ի գերեզման, որ պահէ զոսկերս ամենայն մարդկան, և յարութեամբն իւրով եցոյց և յայտնի արար զյարութիւն մեռելոց. զի ինքն իսկ է յարութիւն և կեանք, և յարուցիչ և նորոգիչ ամենայն մարմնոց. և պահէ զշունչս մարդկան կենդանիս։ Վասն զի նա ինքն է կենդանութիւն, զի նորոգեսցէ զշունչս մարդկան՝ զգեցեալ նովին մարմնով. և ապա յայտնի արասցէ ըստ իւրաքանչիւր վաստակոցն զիւրաքանչիւր հատուցմունս. զի նա արձակեսցէ զկապեալս ի տանէ կապանաց կռապաշտութեան, որ կապեալ են ի մեղս, և խզեսցէ զշղթայս անօրէնութեան՝ որ են իբրև զքեզդ։ Իսկ յայդպիսի կապանաց, զոր դուդ ասացես՝ սովոր է յայտնել զողորմութեան զշնորհս և փրկել զյուսացեալս իւր։

65 «Եւ անպականս ուրախութիւնքն այն են,

And the terrible insult which you made to the gods (applies)[1] also to us kings, for you said that the kings who worship them are insane."

63. Gregory said: "Christ is the Son of God, through whom he made this world and fashioned it [cf. Jn. 1.3]; he is the judge of the living and the dead [cf. II Tim. 4.1], Lord and recompenser of bounty to the bountiful and of evil to the evil [cf. Matt. 16.27; Rom. 2.6; II Tim 4.8].

64. "He, as you indeed said, is truly the lord and guardian of the tombs. For he died willingly and entered a tomb, which guards the bones of all men; and by his resurrection he demonstrated and revealed the resurrection of the dead. For he himself is resurrection and life [cf. Jn. 11.25], the raiser and renewer of all flesh[1] [cf. I Cor. 15.52; Phil. 3.21], and he keeps the breath of men alive[2] [cf. Acts 17.25]. For he himself is life that he may renew the breath of men, having been clothed in the same flesh.[3] And then he will reveal each one's recompense for each one's labors [cf. Col. 3.24]. For he will bring forth the bound from the house of bondage to idolatry, those who are bound in sin; and he will break the chains of lawlessness (for) those who are like you. But from such bonds as you threaten, he is accustomed to reveal the grace of mercy and to save those who hope in him.

65. "And the unfailing joy is this,

յորժամ զիւր սիրեցեալսն և զկոչեցեալսն և զհրաւիրեալսն և զպատուիրանապահսն անմահացուսցէ յիւր աստուածութիւնն, և զմեղաւորսն անմահացուսցէ ի տանջանսն յաւիտենից։ Եւ գալուստն այն է, յորժամ գայցէ առնել զայս ամենայն։ Եւ հրեշտակքն այն են, որ սպասաւորքն են նորա մեծութեանն և աստուածութեանն, մշտնջենաւոր արքայութեանն։

66 «Իսկ մեր յոյսն այսմ ակն կալեալ սպասէ. և ձեր յուսահատութիւն այն է, զի ոչ ճանաչէք զԱրարիչն ձեր, որ պահանջէ ի ձէնջ վասն այնորիկ, զի ոչ ելէք ի խնդիր տեառն Արարչին ձերոյ, և ոչ ծանեայք զնա։ Արդարև իսկ իբրև զձիս եղէք կամ իբրև զջորիս, զի ոչ գոյ ի նոսա իմաստութիւն, և քան զեզն և զէշ ևս պակասամտագոյն գտայք, զի ոչ ծանեայք զձեր հաստիչն. որ ի ժամանակի իւրում ի սանձս և ի դանդանաւանդս ճմլեսցէ զկզակս ձեր, որ առ նա դուք ոչ մարթայցէք մերձենալ։

67 «Այլ զոր ասացերն, թէ դիցն թշնամանս եդիր, զի՞նչ ինչ արդեօք իցէ նոցա այն թշնամանք՝ որ երբեք և պատուելոյն ուրուք զնոսա ոչ զգան. զի ի ձեռաց մարդկան են ստեղծեալք, և ի խելացնոր կարծեաց յերազոց իցեն հաստեալք և եղեալք։ Քանզի յանդրիագործ պատկերաց առաջին մարդկանն հրապուրեցան գործել զայն, յոր և անդէն իսկ մոլորեցան, կու-

when he will make immortal and raise to his own divinity his beloved and called and invited[1] and those who kept the commandments; whereas the sinners he will make immortal in their eternal torments. And the coming is this, when he will come to do all this.[2] And the angels are those who are the servants of his majesty and divinity and of the eternal kingdom.[3]

66. "Our hope expects and awaits this. And your hopelessness is this, that you do not recognize your Creator who makes this demand on you, nor do you seek the Lord your creator nor have you recognized him. Truly you have become like horses or mules, since there is no wisdom in you. And you have been found to be less intelligent than an ox or donkey since you have not recognized your fashioner, who in his own time will fit your cheeks into a bridle and bit, you who will not be able to approach him [cf. Ps. 31.9; Is. 1.3].

67. "But as for your saying 'you have insulted the gods,' what could this insult mean to them who have no sensation even of anyone's honoring them? For they have been fashioned by the hands of men, and have been created by aberrant and dreaming thoughts. For (men) were enticed by the sculpted images of earlier men to work these, in which indeed they have gone astray,

բացեալք ի լուսոյ Արարչին։ Իսկ որ զնոսայն պաշտեն՝ յիրաւի են իբրև զանասունս. զի «Բերան է նոցա, և ոչ խօսին. աչս ունին, և ոչ տեսանեն. ականջս ունին, և ոչ լսեն. ունչս ունին, և ոչ հոտոտին. ձեռս ունին, և ոչ շօշափեն. ոտս ունին, և ոչ գնան, և ոչ գոյ շունչ ի բերանս նոցա։ Նման նոցա եղիցին որք արարին զնոսա, և ամենեքեան ոյք յուսացեալ են ի նոսա»։

68 Խօսել սկսաւ թագաւորն և ասէ. «Քանի՞ցս անգամ տուեալ է քեզ խրատ և պատուէր, զի մի՛ երկրորդեսցես առաջի իմ զհաստատուածս բանիցդ առասպելաց, զոր յօդեալ և ուսեալդ ես, զոր ոչդ վայել է քեզ խօսել. վասն որոյ ես խնայեցի ի քեզ՝ իբրև ի վաստակաւոր, զի եկեսցես ի կարգ ուղղութեան՝ պաշտել զդիսն։ Զորոց դու առեալ զնոցա պատիւն՝ ումպէտ կարգաս արարիչ. և որ են իսկ ճշմարտիւ արարիչ՝ թշնամանես, և զմեծն Անահիտ, որով կեայ և զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց. և ընդ նմին և զմեծն և զարին Արամազդ, զարարիչն երկնի և երկրի. ընդ նմին և զայլ աստուածսն կոչեցեր անշշունչս և անմռունչս. և ի մեզ ևս ձգտեցար դնել թշնամանս, համարձակեցար ասել ձիս և ջորիս։ Եւ քանզի զամենայն թշնամանս յաճախեցեր, մինչ իշխեցեր ևս մեզ ասել անասունս՝ արդ ես արկից զքեզ ի տանջանս և եղից զանդանաւանդ ի կզակս քո. զի գիտասցես եթէ ի սին բանից քոց, զոր

deprived of the creator's light. But those who worship the same are truly like animals. For 'they have a mouth and do not speak. They have eyes and see not. They have hands and feel not. They have feet and move not. There is no breath in their mouths. Those who made them will become like them, and also all those who hope in them [Ps. 113.13-16; 134.16-18].'"

68. The king began to speak and said: "How often have I given you warning and commands not to repeat in my presence these compositions of fabulous stories which you have pieced together and learned up and which it is unfitting for you to tell? So I have spared you, because of your services, in order that you might come to the right path and worship the gods, whose honor you have slighted by calling someone else creator. And those who are truly creator you insult, calling lifeless and mute the great Anahit,[1] who gives life and fertility to our land of Armenia, and with her the great and noble Aramazd,[2] the creator of heaven and earth, and with him the other gods. And you have gone so far as to insult us as well, daring to call us horses and mules. Because you have multiplied all these insults—even to calling us animals—now I shall cast you into torments and I shall place a bridle on your cheeks, that you may know that for your futile words, which

յաճախեցեր առաջի իմ առնել՝ վաղվաղակի եղեն քեզ արդիւնքն։ Եւ այս, ասէ, մեծ է ինձ, որ խօսեցայս ընդ քեզ և մեծարանս եդի քեզ, և դու ետուր ինձ պատասխանի իբրև ընկերի»։

69 Եւ ետ կապել զնա ձեռս յետս, և արկանել զայլ ի բերան նորա. և ետ կախել շառաշեղս աղի ի վերայ ողին նորա, և տալ զելոցս կրծից նորա, և արկանել առասանս ի կապս կրծից գելարանացն, կապել և համբառնալ ի բարձրաւանդակ տանիս ապարանից որմոյն մենքենայիւք։ Եւ կայր պրկեալ կապեալ այնպէս զաւուրս եօթն։ Եւ յետ եօթն աւուրն ետ հրաման, և լուծին զնա ի չարաչար և ի դառն կապանացն, և ածին կացուցին առաջի նորա։

70 Սկսաւ հարցանել զնա, թէ «Զիա՞րդ կարացեր ժուժալ, տոկալ, տևել, հեալ և հասանել մինչև ցայսօր։ Եւ կամ առե՞ր զչափ, թէ արդարև իբրև զէշ և իբրև զջորի այնպէս բստանձնեալ բեռինս պահեցեր և ետեղակալ կացեր դու բեռամբքն հանդերձ։ Վասն զի իշխեցեր դու թըշնամանել զդիսն թէ անշարժ են՝ վասն այսորիկ հատուցին քեզ զայսպիսի պատուհաս։ Իսկ արդ՝ եթէ ոչ առցես դու յանձն պաշտօն տանել դիցն, և յաճախեսցես դու ի նոյնպիսի թշնամանս աստուածոցն՝ և այլ ևս չարք չարագոյն անցք անցանիցեն ընդ քեզ»։

71 Գրիգորիոս ասէ. «Վասն դիցն թէ ասես,

you repeated before me, you immediately received your deserts. This," he said, "was a great courtesy on my part in speaking with you and honoring you, yet you replied to me as an equal."

*[B. The first and second tortures; Gregory's prayer]*

69. So he had his hands bound behind him, and a muzzle put in his mouth; and he had a block of salt hung on his back and a noose placed round his chest, and cords put round and tightened on him; and he had him bound and raised up by machines to the highest part of the palace wall. And he remained thus, tightly bound, for seven days. And after the seventh day he commanded and they released him from this torture and binding, and they brought him before (the king).

70. He began to question him. "How could you suffer, resist, endure, and last until today? Did you perceive that truly like a donkey or mule[1] you took on and carried such a great load and were stationary under your burden? Because you dared to insult the gods by saying they are immobile, therefore they have repaid you with such punishment. So now, if you will not agree to worship the gods, and if you repeat such insults to the deities, then still worse and crueler sufferings will come upon you."

71. Gregory replied: "Concerning the gods that you mention,

զոր կոչես դու աստուածս՝ ստոյգ իսկ են հաստուածք. վասն զի հատեալք են ի մարդկանէ, և եղեալք պատկերք ի ձեռաց ճարտարի. ոմն փայտեայք են և ոմն քարեայք. ոմն են պղնձիք և ոմն են արծաթիք և ոմն ոսկիք. ոչ խօսեալ նոցա երբեք և ոչ իմացեալ և ոչ զմտաւ ինչ ածեալ, ոչ վասն քո և ոչ վասն իմ։ Եւ դու ինքնին իսկ քեզէն վկայես ինձ, թէ ոչ երբէք ասացեալ է նոցա ցքեզ զայդ վասն իմոյ տանջելոյս ի քէն. և կամ ընաւ արդեօք իմացման քարինք անմռունչք զցաւս մարդկան։

72 «Այլ վասն որոյ կապեցեր ինձ աղ, զի կատեցայց ես կապանօք՝ յուսամ ես ի Տէրն իմ, որոյ են ստացուածք իւր երկինք և երկիր, և յՈրդին համագործ և ի Հոգին բարեխօս, զի համեմեսցեն զանմահութիւնս իմ ստուգութեամբ աղիւն ճշմարտութեան որ ոչ անցանէ։ Եւ ինձ տացէ զամենահեշտ լուծն խոնարհութեան թեթևութեան պարգևացն, որ ոչ անցանէ յաւիտեանս յաւիտենից. որ բարձրացուցանէ զխոնարհս իւրով մարդասիրութեամբն յայն յանըսպառ և յանվախճան հատուցմունսն, յանկէտ և յանժամանակ, յանթիւ յաւուրն ընտրութեան դարին մտելոյ եօթներորդին, իբրև հանգուցանէ զամենայն վաստակաւորս իւր և պարգևեսցէ իւրով մեծութեամբն։

73 «Իսկ որ պաշտեն զկուռս քարեղէնս՝

whom you call deities, they truly are fabricated, because they have been made by men and set up as images by the hands of an artisan. Some are of wood and some of stone, some are of bronze and some of silver and some of gold. They have never spoken nor thought nor made any decision—neither for you nor for me. And you yourself bear me witness that they have never spoken to you about the torments you are inflicting on me. Have indeed mute stones ever comprehended the sufferings of men?

72. "But as for your hanging[1] salt on me in order to torment me with bonds, I hope in my Lord, whose creation are heaven and earth, and in the co-worker the Son, and in the Spirit, the intercessor [cf. Rom. 8.26, 34], that they may season[2] my immortality with the real salt of the truth that passes not away [cf. Matt. 5.13]. And (I hope) that he may give me the very easy yoke [cf. Matt. 11.30] of the gifts of humility and calm, which passes not away for ever and ever. He raises the humble [cf. Lk. 1.52] by his benevolence to that inexhaustible and unending recompense, to the infinite, timeless, and unending day of election, in the seventh age to come[3] when he will give rest to all his laborers and reward them in his majesty.

73. "But of those who worship stone idols,

ասէ մարգարէն վասն նոցա, թէ «Իջցեն որպէս զվէմս ի ջուրս բազումս»։ Իսկ որ զփայտակերտ քանդակեալսն պաշտեն՝ այսպէս ասէ վասն նոցա, թէ «Հուր վառեցաւ ի վերայ ամենայն փայտի ազարակի, և այրեսցէ զմեղաւորս, և մի՛ շիջցի»։ Իսկ որ պաշտեն զարծաթեղէնս և զոսկեղէնս՝ այսպէս ասէ. «Արծաթ նոցա և ոսկի նոցա մի՛ կարասցէ փրկել զնոսա յաւուր բարկութեան Տեառն». որ կարողն է կախել նոցա բերինս ծանրութեան և ամենայն դիմադարձաց և մեղաւորաց, որ իբրև զքեզդ իցեն ամբարիշտք»։

74 Եւ յետ այսորիկ հրամայեաց կախել զնա գլխիվայր զմիոյ ոտանէն. զի մինչ դեռ կայցէ գլխիվայր՝ ծխեսցեն ի ներքոյ նորա աղբ, և արբցէ զան սաստիկ բրոք դալարովք։ Եւ տանջեցին զնա տասն այր՝ ըստ հրամանի թագաւորին. և կայր նա կախեալ այնպէս աւուրս եօթն։

75 Արդ՝ մինչ դեռ կայր նա կախեալ՝ սկսաւ խօսել ի կախաղանին այսպէս. «Գոհանամ զքէն, Տէր, որ արժանի արարեր զանարժանութիւնս իմ քոյոյ պարգևիդ. զի ի սկզբանէ իսկ սիրեցեր զստեղծուածս ձեռաց քոց, և ետուր զփափկութիւն անաշխատ հանգստեան դրախտին վայելչութեան. անմահս, անցաւս, անանց կենաց վիճակացն ուրախութեան պատրաստեցեր՝ եթէ կացեալ էաք ի պատուիրանին, զոր եդեր ի ծառոյն չճաշակելոյ. զի ասացեր, թէ «Մի՛ ուտի-

the prophet says: 'They will go down like stones in many waters' [Ezra 19.11 = Neh. 9.11; cf. Ex. 15.5]. And of those who worship wooden sculptures he speaks thus: 'Fire burned over all the wooden field, and it will consume sinners, and will not be extinguished' [Jer. 7.20]. As for those who worship (images) of silver and gold, he speaks thus: 'Their silver and their gold will not be able to save them in the day of the Lord's anger' [Ez. 7.19; Zeph. 1.18]. He is able to impose on them heavy loads [cf. Lk. 11.46] and also on all resisters and sinners who may be impious like you."

74. Then he ordered him to be hung upside-down from one foot and that while he was upside-down they should burn dung beneath him and he should be flogged with vicious green rods. Ten men tormented him according to the king's command. And he remained suspended thus for seven days.

75. While he was hanging he began to speak from the gibbet[1] as follows: "I am grateful to you, Lord,[2] for making my unworthiness worthy of your gift. For from the beginning you have loved the creatures of your hands, and you have given (us) the joy of untroubled repose in the garden of delight. You made us immortal and free of pain and prepared for us the joyful destiny of unending life, (which we would have enjoyed) if we had kept the commandment that you placed on us not to eat from the tree.[3] For you said: 'Do not eat

ցէք յայգմ ծառոյ, զոր պատուիրեցի չուտել ի դմանէ»․ իբրև ոչ թէ ծառն անուանեալ կենաց՝ կարէր տալ կենդանութիւն առանց քոյոյ բանիդ հրամանի կամացդ բարերարութեան, որ է կամք քո և բանդ և բարերարութիւնդ՝ միածին Որդիդ, ծնունդ աստուածութեան քո․ և Հոգիդ սուրբ, որ ի քէն բղխէ լնու զամենայն տիեզերս, որ է ընդ քեզ և ընդ միածնիդ յէութեանդ քում։

76 «Զի եթէ կացեալ էաք ի պատուիրանիդ քում, Տէր, և պահեալ էր զպատուիրանս, զոր եդեր վասն լաւութեան հանդիսի փորձութեան մերոյ՝ շնորհեալ լինէր քո մեզ զկեանս անցաւս, անաշխատս, անբիծս, անհոգս, անտրտումս, առանց ծերանալոյ։ Եւ յետ սերելոյն և բազմանալոյն, որ պատուիրեցեր կեալ մարմնաւորապէս, անամօթ փառօքն զգեցեալ իբրև հանդերձիւ ի դրախտին քում, յոր եդեր զմեզ, և յետ այնորիկ, որպէս յետ սրբութեան ամուսնութեան և որդի ծնանելոյ Ենովքայ, վերացուցեր զնա ի կարգս հրեշտակաց յուրախութեան վիճակն անմահութեան․ արդ՝ եթէ կացեալ էաք ի պատուիրանիդ ի քում հրամանի՝ ցուցեր դու մեզ օրինակ զԵնովք, զի և զմեզ յետ ի դրախտին վայելից և յետ երկրաւոր կարգացս՝ յանմահութիւն փոխեալ լինէր քո զմեզ իբրև զԵնովք ի կարգս հրեշտակաց․ և միահաղոյն ածեալ լինէր զարքայութիւն քո, զոր պատրաստեցեր կան-

from that tree from which I have commanded you not to eat' [Gen. 2.17; 3.11]. Not that the tree, called of life, could give life without your command and benevolent will—and your will and word and benevolence are the only-begotten Son, the offspring of your divinity, and the holy Spirit who proceeds from you and fills all the world, who is with you and with your only-begotten in your being.[4]

76. "For if we had observed your commandment, Lord, and had kept the command which you imposed for the sake of testing our virtue, you would have granted us life without pain, free of labor, fault, care, sadness or old age.[1] We sowed and increased, as you commanded us to live in bodily fashion [cf. Gen. 1.28], being clothed in shameless glory for a garment in your garden in which you had placed us. Thereafter, as after the holy marriage and birth of a son to Enoch you raised him to the ranks of the angels, to the destiny of joy and immortality [cf. Gen. 5.22, 24], so, if we had observed your commandment, you would have shown us the example[2] of Enoch. For you would have transferred us from the delightful garden and from our earthly condition to immortality, as (you transferred) Enoch to the ranks of the angels.[3] And you would have brought in your universal kingdom, which you had prepared

խաւ ի փառս մեր՝ մինչ չև էր աշխարհ. զի «Զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ՝ պատրաստեցեր դու սիրելեաց քոց յառաջագոյն», զոր տացես դու, Տէր, այնոցիկ, որ սիրեցին զօր երևելոյ գալստեան Միածնիդ քո։

77 «Իսկ արդ՝ իբրև ետես թշնամին զմեզ պատուեալս ի մարդասիրութենէ կամարար կամաց քոց՝ նախանձեալ ընդ պատիւ թագի պարծանաց մերոց, պատուին քո որ տուաւ ի քէն, զի ասացեր, եթէ «Ի նմանութիւն պատկերի կերպարանաց իմոց արարի ես զմարդն, և կացուցի զնա տէր ամենայնի». որ առ նախանձ թշնամւոյն բանսարկուի՝ հրապոյրք ցոփացուցիչք մտին յաշխարհ, և արկին զմարդիկ ի կենաց և ի հանգստեանց, զոր դու առ քում բարերարութեանդ շնորհեցեր մարդկան, որ կորուսին զայն։

78 «Իսկ իբրև գթացաւ աստուածութիւնդ քո առ մարդկութիւն տկարութեանս մերոյ, վասն յաճախ ողորմութեանդ քո՝ ոչ թողեր ի ձեռանէ վասն բարերարութեանդ քո. ի ներբել երկայնմտութեանդ քո առաքեցեր զսուրբ զմարգարէսն յերկիր և զսիրելիս քո, որ եղեն լուսաւորք յերկրի, ի խաւարչտական միջոյ ազգացն հեթանոսաց. որ և յանմիտ և յանօրէն մարդկանէն ատեցեալք հալածեցան. որք յայտնեցին զքո խոր-

previously for our glory before the world existed [cf. Jn. 17.5]. For 'what eye has not seen, nor ear heard, nor has fallen into the heart of man, you have prepared for those who earlier loved you' [I Cor. 2.9], which you will give, Lord, to those who have loved the day when your only-begotten will be revealed.

77. "But when the enemy saw us being honored by the benevolence of your will, he was jealous[1] of the honor of the crown of our boasting, of the honor given by you in that you said 'I have made man in the likeness of the image of our form and I have set him up as lord of all' [Gen. 1.27; Ps. 8.7]. At the jealousy of the slandering enemy the charms of debauchery [cf. II Macc. 6.21][2] entered the world and threw men from life and repose [cf. Wis. 2.24], which you in your mercy had granted mankind who lost them.

78. "But since your divinity had compassion on the weakness of our humanity, in your perpetual mercy you did not abandon us because of your benevolence. In your long-suffering indulgence you sent the holy prophets, your beloved ones, to earth, who became luminaries on earth in the midst of the benighted heathen races [cf. II Pet. 1.19]. But by these irrational and lawless men they were hated and persecuted; they revealed the mysteries

հուրդս լուսաւորութեանդ, և քարոզեցին զկամս քո և զգալուստ Որդւոյդ քո յաշխարհ, որ գալոցն էր և բառնալոց զկարիս յանցուցելոց պատուհասի մեղաց մարդկութեան։

79 «Որք վասն գալս քարոզելոյ յաշխարհի չարչարանօք մեռան, տանջանօք և պէսպէս փորձութեանց խռովութեամբք, դառնութեան ճաշակօքն կեցին յաշխարհի, վասն զքեզ քարոզելոյն առ նեղիչս իւրեանց. և նեղիչք և թշնամիքն՝ նոքա տկարացան և անկան։ Վասն որոյ ընդ յարուցեալ ի վերայ իմ պատերազմիս ոչ երկիցէ սիրտ իմ. և ընդ յարուցեալ ի վերայ իմ ճակատամարտի՝ ի քեզ եմ յուսացեալ. որ ի վախճան ժամանակացն յայտնեցեր զխորհուրդս կամաց քոց, զոր յառաջագոյն պատմեցեր ազգացն առաջնոց սիրելի Որդւովդ քոյ առ նոսա, ի ձեռն սրբոց քոց մարգարէից, զոր ի քէն առաքեցեր գալ ծնանել ի կուսէն սրբոյ։ Զի զոր օրինակ ի ձեռն կուսին առաջնոյ Եւայի մահ եմուտ յաշխարհ՝ սոյն օրինակ և ի ձեռն այսր կուսի կեանք մտցեն յաշխարհ։ Զի զոր օրինակ ի ձեռն ծնընդեան Եւայի՝ Կահելի անէծք և քրտունք և աշխատութիւնք և երերմունք և տատանմունք մտին յաշխարհ՝ սոյն օրինակ և ծնանելով Որդւոյ՛ քոյ ի կուսէն հանգիստք և կեանք և օրհնութիւնք մացեն յաշխարհ։

80 «Որ առաքեցեր զմիածին Որդիդ քո յաշ-

of your illumination, and they preached your will and the coming of your Son to the world, who was to come and remove the burden of the punishment for the sins of erring mankind.[1]

79. "Because they preached this in the world they were put to death with torture, torments and all sorts of trials and tribulations; they led a bitter life in the world for the sake of preaching you to their tormentors. But their tormentors and enemies weakened and fell. Therefore at this encounter which has come upon me my heart will not fear; and in the struggle which faces me I have placed my hope in you [cf. Ps. 26.2-4]. At the end of time you have revealed the mystery of your will, of which you previously informed the first races through your holy prophets [cf. Heb. 1.1-2], by means of your beloved Son, who was sent by you to come and be born of the holy virgin. For as through the first virgin, Eve, death entered the world, so through this virgin life will enter the world.[1] For as through Eve's giving birth, Cain's curse and sweat and toil and agitation and troubles entered the world; so through the birth of your Son from the virgin, rest and life and blessings will enter the world.

80. "You sent your only-begotten Son into the world,

խարհ, լոյս ի լուսոյ, կեանք ի կենաց, որ եկն զգենուլ զմեր նմանութիւնս մարմնոյ ի կուսէ անտի, զի զմեզ անդրէն առ աստուածութիւնն յարեսցէ իւրով նմանութեամբն, որ իբրև զմեզն եղև։ Ծնաւ ի կուսէն մարմնով և մարդացաւ և մարմնացաւ իբրև զմեզ, այլ կայ և մնայ ի փառս աստուածութեան իւրոյ. և ոչ ընկալաւ փոփոխումն յաստուածութենէ իւրմէ. այն նոյն է՝ որ էրն և է և կայ և մնայ յաւիտեան ընդ Հօր և ընդ սուրբ Հոգւոյն։ Այլ զի սիրեաց զմարդիկ՝ վասն այնորիկ եղև իբրև զմեզ, զի զմեզ ածցէ յառաւելութիւն շնորհօք աստուածութեան իւրոյ, որ են կամք ծնողին իւրոյ. և կատարեաց զկամս նորա. որ զսուրբս իւրով փառաւորեաց համբերութեամբն, ի կրել իւրում զանարգութիւն վշտաց մահու տանջանաց, մահուամբն և թաղմամբն հանդերձ. որ վասն զի սիրեցին մարդիկ պաշտել զպատկերս մարդադէմս փայտագործս ճարտարագործս հիւսանց՝ եղև ինքն պատկեր մարդկան, զի զպատկերագործսն և զպատկերասէրսն և զպատկերապաշտսն յիւր պատկեր աստուածութեանն հնազանդեցուսցէ։

81 «Եւ վասն զի սովոր էին մարդիկ երկիր պագանել անշունչ պատկերաց մեռելոց՝ եղև ինքն մեռեալ պատկեր ի վերայ խաչին. և մեռաւ և անշնչացաւ, զի ընդելականաւն զնոսա արագ արագ հնազանդեցուսցէ իւրում պատկերին. իբ-

light from light, life from life, who came to put on the likeness of our flesh from the virgin [cf. Phil. 2.7], in order by his own likeness to raise us to the divinity, who became like us. He was born from the virgin in the flesh and became man and was incorporate like us, yet he is and remains in the glory of his divinity. He is the same, who was and is and remains for ever with the Father and with the holy Spirit. But because he loved mankind, therefore he became like us, that he might bring us to abundance by the grace of his divinity, which is the will of his begetter. And he fulfilled his will. He glorified the saints by his own endurance, in enduring himself the indignity of affliction, death and torments, with his death and burial. Because men loved to worship images in human shape, skillfully carved from wood, he himself became the image of men,[2] that he might subject to his own image of his divinity the image-makers and image-lovers and image-worshippers.

81. "And because men were accustomed to worship lifeless and dead images, he himself became a dead image[1] on the cross. He died and breathed his last, in order that by this (image) familiar to them he might quickly subject them to his own image.

րև զկարթ երևեցուցեալ զխաչն, և զմարմին իւր առնէր կերակուր տիեզերաց. զի այնու որսասցէ յարքունական սեղանն, մշտնջենաւոր արքայութեանն աստուածութեանն իւրոյ։

82 «Եւ փոխանակ զրօշելոց փայտիցն՝ զխաչ իւր կանգնեաց ի մէջ տիեզերաց, զի որ սովորն իցեն երկիր պագանել փայտի՝ սովորականաւ ընդելականաւն հաւանեսցին երկիր պագանել խաչին փայտի և որ ի վերայ նորա պատկերն (և մարդադէմն իցէ։ Զի ի վերայ խաչին ասէր այսպէս, զոր նշանակեալ մարգարէին յերեսաց տեառն ասէ, թէ «Եղէ ես որպէս զխուլ՝ որ ոչ լսէ, և իբրև զհամր՝ զի ոչ բանայ զբերան իւր»։ Զի դու, Տէր, ասէիր մարգարէիւն յառաջ, մինչ չև էր հասեալ ժամ կրելոյ որդւոյ քոյ Յիսուսի զայս ամենայն համբերութիւնս, թէ «Արարից զքեզ համր, և կապեցից զլեզու քո ի քիմս քո. և եղիջիր դու իբրև զայր մի, որոյ ոչ գուցեն բանք յանդիմանութեան ի բերան իւրում»։

83 «Քանզի սիրեցին մարդիկ զանխօս կուռս պատկերաց դիցն սնոտեաց՝ վասն այսորիկ և որդին Աստուծոյ մարմնացն պատկեր եղեալ մարդոյ, ի նմանութիւն մարդկան պատկերաց, ելեալ ի բարձրաւանդակ խաչն, իբրև ի վերայ բարձր դիտակի ելեալ՝ ցուցանէր զանբարբառ մեռելութիւնն առ արարածս. վասն որոյ տեսին զնա ի վերայ բարձուն տիեզերք, ցնծացան և երկիր

He made the cross appear as a hook,[2] and he made his body food[3] for the universe, that thereby he might catch[4] (men) for the royal altar of the eternal kingdom of his divinity.

82. "And instead of carved pieces of wood he set up his cross in the middle of the universe,[1] that those who were accustomed to worshipping wood, by this familiar and accustomed (object) might be persuaded to worship the cross of wood and the image and bodily form upon it. For on the cross he spoke thus, as the prophet indicated on behalf of the Lord: 'I shall become like a deaf man who does not hear, and like a mute, for he does not open his mouth' [Ps. 37.14]. For you, Lord, previously said through the prophet, before the time had come for your Son Jesus to endure all these sufferings: 'I shall make you mute and shall bind your tongue in your palate [Ez. 3.26]. And you will become like a man in whose mouth there are no words of reproach' [Ps. 37.15].

83. "Because men loved the dumb idols of the images of the vain gods, therefore the Son of God too became in the flesh an image of man, in the likeness of human images, mounting the elevated cross as if climbing a high summit;[1] and he showed (his) speechless lifelessness to creation. So the world saw him on a high place and rejoiced,

պագին և հնազանդեցան։

84 «Եւ վասն զի սովոր էին մարդիկ ու-
րախ լինել ի մեհեանս կռոցն զոհիւքն, զոր ան-
մռունչոցն մատուցանէին՝ վասն այնորիկ և դու
կոչեցեր ի զենումն Որդւոյ քոյ զտիեզերս և
ասացեր. «Զպարարակ իմ զենեալ է, զճաշ իմ
պատրաստեալ է»։ և բազմացուցեր զուրախու-
թիւն ի խաչելոյ Որդւոյ քոյ. և յագեցուցեր զա-
մենայն տիեզերս ի կենդանարար մարմնոյն, որ
էն կերակուր և կենդանութիւն բաւական ամե-
նայն երկրպագուաց քոց ընդ ամենայն տիե-
զերս։ Իսկ որ ոչն կամեցան գալ ի կոչունս
հարսանեաց հոգևոր սեղանոյն՝ պատրաստեցեր
զնոսա տանջանացն յաւիտենից, յանմահ սատա-
կումն յանանց դատաստանացն, և զքաղաքս նո-
ցա շինեցեր պատրաստեցեր ի մէջ հրոյն տան-
ջանացն պատրաստելոց բարկութեան։

85 «Եւ քանզի ուտէին և ըմպէին մարդիկ
զարիւն զոհից անասնոց դիւցապաշտութեան՝ վասն
այսորիկ եհեղ զարիւնն իւր ի վերայ փայտին.
զի փայտն ընդ դրօշեալ փայտիցն, և ինքն ընդ
մարդադէմ պատկերացն պղծութեան, և արիւնն
իւր ընդ նուագացն ուրախութեան արեանցն,
որով և նորոգումն մարմնոց դալարութեան մարդ-
կան։ Զի եկն գնեաց զմեզ արեամբն իւրով ի
ստրկութենէ ծառայութեան աստուածութեամ-
բըն իւրով, և ազատեաց ի ծառայութենէ չա-

worshiped, and submitted.

84. "And because men were accustomed to rejoice in the temples of the idols with sacrifices which they offered to the speechless (idols), therefore you summoned the world to the sacrifice of your Son and said: 'I have sacrificed the fatted (calf), I have prepared a meal' [cf. Matt. 22.4; Lk. 15.23]. And you increased their joy by the crucifixion of your Son. And you satisfied the whole world from the living flesh, which is sufficient food and life for all your worshippers throughout the whole world.[1] But those who did not wish to come to the invitation to the spiritual marriage of the altar,[2] these you have prepared for eternal torments, for unending destruction by irrevocable judgments; and their cities you have established in the midst of the fire of the torments prepared (by) your anger.[3]

85. "And because men ate and drank the blood of idolatrous animal sacrifices, therefore he shed his own blood on the wood, so that the wood (might replace) the wooden sculptures,[1] and he himself the impure images in human form,[2] and his blood the blood of joyful feasting,[3] whereby (might be effected) the renewal of the flesh for the blossoming of mankind [cf. Phil. 3.21]. For he came and redeemed us [cf. Gal. 3.13] with his blood from bondage to servitude by his divinity, and freed us from slavery

րութեան մեղացն. զի մեք եմք զինք արեան Որդւոյ քոյ, փրկեալք և ազատեալք արեամբ և մարմնով Նորա. զի ոչ եմք անձանց տեարք՝ եթէ ըստ կամս դիւրութեան անձանց մերոց գնասցուք, և կամ ըստ կամաց ամենայն մահկանացու մարդկան, թէպէտ և իցեն մեր տեարք մարմնապէս։ Սակայն պարտ է պատուել զնոսա, որչափ ի քէն է հրամայեալ, և ոչ զքեզ ընդ անհի մահկանացու մարդկան փոխանակել. զի նոքա զմարմին և եթ կարող են չարչարել, իսկ Որդիդ միածին, տէր մեր Յիսուս Քրիստոս, կարող է արկանել ի տանջանսն յաւիտենից հաւասարակ, ոգւով և մարմնով հանդերձ, ի հուրն անշէջ և յորդնն անմահ։

86 «Այլ, Տէր, տուր ինձ զօրութիւն համբերութեան նեղութեան ցաւոց վտանգիս իմոյ, և ողորմեա՛ց ինձ իբրև ի վերայ աւազակին, որ ընդ քեզ էր կցորդ չարչարանաց խաչի քոյ. և արա՛ առ իս զգութ մարդասէր շնորհաց քոց, որով կեայ ամենայն երկիր առ հասարակ, արդարք և մեղաւորք, վասն ներելոյ քաղցրութեան քոյ. «Զի ծագես զարեգակն քո ի վերայ չարաց և բարեաց, և ածես զանձրև ի վերայ արդարոց և մեղաւորաց». զի պահես զքաղցրութիւն քո, և ցուցանես զողորմութիւն քո առ ամենայն մարդիկ առ հասարակ։

87 «Տո՛ւր ինձ, Տէր, շնորհս համբերութեան

to the wickedness of sin [cf. Rom. 8.2]. For we are the price of your Son's blood [cf. I Cor. 6.19; 7.23], who have been saved and freed by his blood and flesh. For we are not masters of ourselves if we follow our own will or the will of mortal men—although they might be our bodily masters. But we must honor them as is commanded by you [cf. Eph. 6.5; Col. 3.22; I Pet. 2.18], yet not exchange you for fear of mortal men. For they are only able to torture the body, whereas your only-begotten Son, our Lord Jesus Christ, can cast everyone into eternal torments, with soul and body into the inextinguishable fire and the undying worm [cf. Matt. 10.28; Mk. 9.43].

86. "But, Lord, give me power to endure the affliction and pain of my torment, and have mercy on me as on the thief who shared with you the sufferings of your cross [cf. Lk. 23.43]. Bestow on me the compassion of your benevolent grace whereby the whole world lives, the just and the sinners, through your sweet indulgence. 'For you make your sun to rise over the evil and the good, and you bring rain on the just and on sinners' [Matt. 5.45]. For you restrain your anger and demonstrate your mercy to all men alike.

87. "Give me, Lord, grace to endure

դառն տանջանացս՝ որով կատեն զիս. զի և ես արժանի եղէց պահել զաւանդութիւն լուսաւորութեան հաւատոցս, զոր ետուր ինձ՝ ճանաչել զքեզ և առնել զկամս քո։ Զի մի՛ ամաչեսցեն յուսացեալքն ի քեզ, որոց միանգամ պարծեցեալ են ի միածին Որդիդ քո ի տէր մեր Յիսուս Քրիստոս, որ ի քէնդ առաքեցաւ. զոր դու առաքեցեր ի մահ վասն մեղաց մերոց, զի առցէ զմեղս մեր յանձն իւր, և վասն յանցանաց մերոց պատժեսցի, և առցէ զմեղան յանձն իւր, և ընդ նմին տարցի զպատուհասն յանցանաց մերոց յանձն իւր չարչարանօք խաչին, կատարեսցէ և տացէ շնորհս պարգևաց՝ իւրոց հաւատացելոցն։

88 «Եւ արդ Տէր բարերար, որ ասացեր, եթէ «Ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս մինչ ի վախճան աշխարհի»՝ մի՛ թողուր զմեզ ի ձեռանէ քումմէ, այլ զօրացո՛ զմեզ ի կամս քո, զի համբերել կարասցուք պատերազմիս՝ վասն մեծի անուանդ քոյ. զի յայտնի լիցի պարծանք հաւատոցս մերոց ծառայից քոց ի տէրութիւն աստուածութեան քոյ. զի և այս յայտնի լիցի, եթէ ոչ կարէ ոք ի թշնամեաց յաղթել յուսացելոց քոց, որք անձանց են թշնամիք։

89 «Այլ, Տէր, խառնեա՛ զմեզ ի թիւ արդարոց քոց վասն մարդասիրութեան քոյ, որ ոչ թողեր զմեզ ընդ վայր ի մեղս հարցն մերոց և

these bitter torments which they are inflicting on me, that I may become worthy to keep the tradition [cf. II Tim. 1.12] of this faith of light which you gave me, to know you and do your will. May those who hoped in you not be ashamed [cf. Rom. 9.33; I Pet. 2.6], those who once boasted in your only-begotten Son, our Lord Jesus Christ, who was sent by you; whom you sent to death for our sins, that he might take our sins upon himself and therewith bring upon himself the punishment for our transgressions by his sufferings on the cross, that he might fulfill and grant the grace of rewards to those who believe in him.

88. "And so, benevolent Lord, who said: 'I am with you every day until the end of the world' [Matt. 28.20], do not deprive us of your hand [cf. Eccl. 7.18], but strengthen us in your will, that we may be able to endure this struggle on behalf of your great name, that the boast of us your faithful servants in the majesty of your divinity may be revealed; and that this too may be revealed—that none of your enemies can vanquish those who hope in you, who are enemies to themselves.

89. "But, Lord, join us to the number of your just because of your benevolence; you did not haphazardly abandon us in the sins of our fathers and

ի մոլորապաշտութեան նախնեաց մերոց և յանօրէնութիւնս առաջնոցն մերոց։ Եւ ետուր ճանաչել զընութիւն արարչութեանդ աստուածութեանդ քոյ, զի մի կորիցուք յունայնութեան հեթանոսութեան։ Այլ գթացար յարարածս քո, զի մի եկեսցէ ի վերայ մեր ի սպառ բարկութիւն քո, և մի վախճանեսցէ զմեզ սրտմտութիւն քո և մի յուզեսցի ցասումն քո առ արարածս քո։

90 «Եւ արդ՝ տո՛ւր, Տէր, զօրութիւն պատերազմել ի վերայ ճշմարտութեան անուանդ քոյ և մեռանել, և դարձեալ նորոգել փառօք միւսանգամ, յորժամ դարձեալ առաքեսցես առ մեզ զհատուցմանց զիւրաքանչիւր կշռիչ, զՏէր մեր Յիսուս Քրիստոս. զի կացցուք և մեք զուարթ երեսօք առաջի նորա, և առցուք զպսակն յաղթութեան ընդ սիրելիս քո. զի դու միայն կալոց և մնալոց ես յաւիտեան, և ամենայն տարրական անցաւոր արարածք բանիւ քով մաշեսցին. բայց դու միայն ես յաւիտեանս, և ամփոփես զմարդիկ իբրև զցորեան ի շտեմարանս ի ժամանակի իւրեանց, և դարձեալ միւսանգամ նորոգես։ Բուսուցանես յերկրէ զոսկերս մարդկան, դալարացուցանես, նորափետուր զարդարես իբրև զարծուիս զսիրելիս քո։

91 «Տէր տունջեան և հաստիչ խաւարի, արարիչ լուսոյ, քո է տիւ և քո է գիշեր, որ

the fire-worship[1] of our ancestors and the lawlessness of our forefathers. And you permitted us to know your nature as creator and God, lest we be lost in the vanity of paganism. But you had mercy on your creatures, lest your anger overwhelm us, lest your indignation destroy us, and lest your wrath be aroused against your creatures.

90. "So, Lord, give (me) strength to fight for the truth of your name and to die, and once again be renewed in glory [cf. II Cor. 3.18], when you will send again to us the apportioner of each one's deserts [cf. Col. 3.24], our Lord Jesus Christ, that we too may be joyful of face in his presence and receive the crown of victory with your beloved [cf. I Cor. 9.25]. For you only will exist and remain for ever, while every material and transitory creature at your word will pass away. But you alone are eternal,[1] and you gather mankind like grain in barns [cf. Matt. 3.12; 13.30; Lk. 3.17] in their time and again renew them. You make grow from the earth men's bones,[2] you make them blossom and give new wings to your beloved like eagles [cf. Is. 40.31].

91. "Lord of the day and establisher of darkness, creator of light, yours is the daytime and yours the evening;

կարգեցեր լուսաւորս ի պէտս՝ առաջնորդս արարածոց քոց, որ են յերկրի քում. որ արարեր զերկուս լուսաւորս առ ի պէտս շրջմանց տարեաց, ամսոց, ժամանակաց, առ ի բոլորել զժամանակս չափովք աւուրց՝ որ են յաշխարհի. զմին՝ իշխանական տունջեան, որ ունի զօրինակ Միածնիդ քոյ, զանշէջ և զանպակաս, զաննուազ և զանխափան լուսոյդ, որ յայտնելոց է իւրոց արդարոց ի հանդերձեալ աշխարհին, ուր ո՛չ աւուրք և ոչ գիշերք, ո՛չ շաբաթք և ոչ ամիսք, և ո՛չ ամք և ոչ ժամք և ոչ ժամանակք, և ո՛չ շրջմունք տարեաց և ոչ շրջանք ժամանակաց. բայց միայն Տէր է, և անուն նորա միայն։ Որ առնես զհատուցումն ուրախութեան քոյոց երկրպագուաց բարեօքն, որոց ոչ գոյ փոփոխումն բարեացն, և ոչ հանումն պարգևացն տուելոց։

92 «Իսկ գնացք իշխանականին գիշերոյ, որ ունի քոյով կամօք զՄիածնիդ քո զօրինակ՝ զնորոգումն յարութեան յանձին բարձեալ բերէ, ցուցանել նշանակել ամենայն երկրաւորաց զքաջալերութիւն ամենայն մեռելոց յարութեան։ Յարևմտից մինչև յարևելս երթայ ի մանկութիւն. դարձեալ յարևմուտս կամօք քովք ծերացեալ հասանէ. պատի, թաղի, գուշակ թաղելոց յարութեան մեռելոց, մխիթարութիւն քաջալերութեան առ արարածս մատուցանէ, զգալուստ Որդւոյդ նշանակէ յերկնից և զնորոգումն տիե-

you have set luminaries for use as guides to your creatures that are in your earth. You created the two luminaries for the service of the years' seasons, months and periods, to complete the periods by the (appropriate) measures of days (for those) who are in the world [cf. Gen. 1.14].[1] The one is the lord of the daytime, who has the example[2] of your Only-begotten,[3] the unextinguishable, unfailing, inexhaustible and uninterrupted light, who will be revealed to his just in the future world, where there are no days and no evenings, no weeks and no months, no years and no hours and no periods of time, no changing of years and no flowing of time. But he alone is Lord and his name is unique. You make recompense of joy with blessings to your worshippers, whose blessings have no variation and whose rewards have no diminution.

92. "But the course of the lord of the evening, who has by your will your Only-begotten as example, supports and carries (the example of) the renewal of the resurrection, in order to show and indicate to all earthly creatures the encouragement of the resurrection of all the dead.[1] From the West to the East he moves toward youth, and again by your will he reaches the West in his old age. He is shrouded and buried, as a prediction of the resurrection of the buried dead, and he brings the comfort of encouragement to creatures; he indicates the coming of your Son from heaven and alludes to the renewal of the universe;

զերաց ակնարկէ, զհաշուեմն մաշմանն մեղաւորաց ուսուցանէ, զծագել արդարոցն յարքայութեանն ի գալստեան, դարձեալ զպահանջումն հնացելոց ի մեղս՝ ցուցանէ։ Նա և գուշակէ մաշականն զյաւիտենականէդ, անցականն զանանցէդ, հնականն զնորոգչէդ իւրմէ. որ կամօք քովք փոփոխի ի կերպարանս՝ որպէս կամք քո հրամայեցին լինել. մինչև բարձցին առակք լինելոցն, զոր եդեր պատրաստեցեր յօր կատարման խոստմանց քոց, յորժամ առնիցես ամենեցուն հատուցումն ի ձեռն Միածնիդ և Հոգւոյդ սրբոյ. զի քոյ է, և քեզ վայելեն փառք յաւիտեան և յաւիտեանս։

93 «Տէր ամենակալ, որ պսակես զյուսացեալս ի քեզ և կատարես զկամս երկիւղածաց քոց, արժանի արա զիս, Տէր, զի պահեցից զյոյսն իմ որ ի քեզ, և զերկիւղն զմեծ՝ զոր ածելոց ես առ դիմադարձ ամբարշտեալսն ի քէն, և ինձ տո՛ւր համբերութիւն կատարել զընթացս իմ նեղութեամբս՝ յոր կամս։ Բժիշկ ցաւոց մերոց, ողջացուցիչ բեկելոց, անդորրիչ նեղելոց և արձակիչ կապելոց, մխիթարիչ սգաւորաց, յոյս անյուսից, խռովելոց հանգիստ, աշխատելոց նաւահանգիստ, որ նայիս սիրով յարարածս քո և կերակրես զամենեսեան քաղցրութեամբ քով. տո՛ւր ինձ, Տէր, առնուլ պսակ ընդ այնոսիկ, զորս արժանիս արարեր մեռանել վասն անուան

he teaches the perdition and decay of sinners and the rising of the just in the kingdom at the coming, and shows again the vengeance made on those grown old in sin. Similarly, that which decays indicates you the eternal, the transitory you the permanent, that worn old you its renewer; by your will it is changed in form as your will commanded to occur, until the parables of the future be abolished, which you established and prepared for the day of fulfillment of your promises,[2] when you will exact retribution on everyone through your Only-begotten and your holy Spirit; for yours is, and to you is fitting, glory for ever and ever [cf. Rom. 16.27; II Tim. 4.18].[3]

93. "Lord omnipotent, who crown those who hope in you and fulfill the will of those who fear you, make me worthy, Lord, to keep my hope [cf. II Tim. 4.7] in you and the great fear which you will bring on the impious who oppose you. And give me, Lord, endurance to complete my course [cf. II Tim. 4.7] in the suffering that I am enduring. Doctor [cf. Matt. 9.12] of our ills, healer of the broken, comforter of the oppressed, liberator of the bound [cf. Ps. 145.7], consoler of the mourning [cf. Is. 61.2; Matt. 5.4], hope of the despairing [cf. Jud. 9.16], rest [cf. II Thess. 1.7] for the troubled, harbor [cf. Ps. 106.20] for the toiling, who lovingly care for your creatures and feed them all with your sweetness [cf. Ps. 103.28; 144.16]—grant me, Lord, to receive the crown with those whom you have made worthy to die for your name,

քոյ, որոց փառաւորեալ են մահք իւրեանց առաջի քո. զի և ես արժանի եղէց վերանալ ընդ առաջ Որդւոյ քոյ սիրելոյ, յորժամ յափշտակեսցէ զանձկացեալսն իւր ի ճառագայթ լուսոյ իւրոյ, դատել ճշմարտութեամբ զամենայն տիեզերս հրով բարկութեամբ իւրով։

94 «Այլ այժմիկ, Տէր, զօրացո՛ զծառայս քո վասն անուան քոյ, զի յաղթեսցուք զօրութեանց թշնամւոյն. և բարձ և փարատեա՛ զմէգ չարութեան կռապաշտութեան հեթանոսութեան քաղցրութեամբ սիրով քով առ արարածս քո. որ եդեր զանձն քո ի վերայ խաչանց քոց, մի՛ թողուր զհօտ քո, զի ածցես յուղղութիւն. որ դու միայն կարող ես թողուլ զմեղս, և քաւել զյանցանս և զանօրէնութիւնս քոյոց արարածոց, զի զքեզ միայն պաշտեսցեն և զկամս քո արասցեն, և լիցին փառաւորիչք աստուածութեանդ քոյ. և ապրեսցին ի դատաստանացդ քոց, և վայելեսցեն յանճառ բարիս քո. զի ամենեքին արժանի լիցին առանց ամօթոյ և պատկառանաց կալ առաջի մեծութեանդ քոյ. զի և զգործ ագիտութեան սոցա անմեղութիւն համարեսցիս։

95 «Եւ զի սովոր ես յարգել յոչնչէ, զամենայն յինչ ածել, և յոչնչէ ի լինելութիւն արարածոց. որ ոչ թողեր զազգս մարդկան ի կամս անձանց զինչպիտութեան իւրեանց. այլ զթաչար առաքեցեր զմիածին Որդիդ քո, որ եկն

whose deaths are glorious before you, that I too may become worthy to be raised to the presence of your beloved Son when he will carry off those who long for him to the rays of his light,[1] to judge in truth the whole world by fire and his anger.

94. "But now, Lord, strengthen your servants for your name's sake, that we may overcome the forces of the enemy. Remove and scatter the fog of evil and heathen idolatry by your sweet love for your creatures. You who laid down your life for your sheep [cf. Jn. 10.11], do not abandon your flock but lead them to the true path. You alone are able to forgive sins and expiate the transgressions and lawlessness of your creatures, that they may worship you alone and do your will, and become glorifiers of your divinity, and be saved from your judgment and rejoice in your ineffable blessings, that all may become worthy to stand in the presence of your majesty without shame or confusion [cf. Ps. 70.13], so that you may reckon their acts of ignorance as innocence.

95. "For you are accustomed to create from nothing, to bring into existence non-existent things and to bring into being creatures from nothing [cf. II Macc. 7.28; Rom. 4.17],[1] you who did not abandon the races of mankind to their own inane desires, but had mercy and sent your only-begotten Son, who came

*դարձոյց զարարածս յաստուածութիւն քո, և հրամայեաց քարոզել Աւետարանին ընդ ամենայն տիեզերս։ Այն զի քո միայն է փառաւորութիւն, և քեզ իսկ վայել է երկրպագութիւն յամենայն արարածոց. զի դու միայն ես փառաց և պատուոյ արժանի։ Արդ՝ գթա յարարածս քո, քոյով բարերարութեամբ շնորհօքդ և առ երկիրս Հայոց աշխարհիս, զի և սոքա ծանիցեն զքեզ և զմիածին Որդի քո, զՏէր մեր Յիսուս Քրիստոս, որ ի քէնդ առաքեցաւ առ մեզ, և զգեցաւ զմարմին մարդկութեան մերոյ, և նկարեաց և տպաւորեաց զանձն իւր ի ստեղծուածս ձեռաց իւրոց, զի զգեցցի զմարմին մարդկեղէն, և ազգականաւն մերձեցուսցէ զմարդիկ առ քեզ։ Քանզի ոչ հանդարտէին մարդիկ տեսանել զերեսս քո և ապրել. վասն այնորիկ եղև նա ի նմանութիւն մարդկան, զի զմարդիկ արժանիս արասցէ աստուածութեանն իւրում. զի ազգակից մարմնովն որ ի մէնջ տեսեալ զաստուածութիւնն Որդւոյն՝ յարգեսցուք բարերարութեամբ Հօր, և ընդ նմին ընկալցուք զշնորհս բարերարութեան Հոգւոյդ սրբոյ որ ի քէն. զի և շնորհեսցին պատգամք Աւետարանի քոյ այսմ աշխարհի. զի և սոքա ծանիցեն զքեզ և զերախտիս բարերարութեանդ շնորհի քոյ, որ առ ամենեսին է։*

96 *«Այլ որ առատանասդ ամենեցուն՝ տուր*

and brought back creatures to your divinity, and ordered the Gospel to be preached throughout the whole world [cf. Matt. 28.19]. For yours alone is glory and to you is worship from all creatures fitting, as you alone are worthy of glory and honor [cf. I Tim. 1.17]. Now have pity on your creatures in your benevolence and grace towards this land of Armenia, that they may know you and your only-begotten Son, our Lord Jesus Christ, who was sent by you to us and who put on the flesh of our humanity,[2] and who depicted and imprinted himself[3] on the creatures of his own hands, that he might put on human flesh and by its relation to theirs bring men close to you. For men could not endure to see your face and live [cf. Ex. 33.20]. Therefore he became in the likeness of men [cf. Phil. 2.7], that he might make men worthy of his divinity, that we, seeing the divinity of the Son through the flesh related to ours, might honor (the same) in the benevolence of the Father, and in him receive the grace of the benevolence of the holy Spirit who (proceeds) from you. Thus the words of your Gospel may be granted to this world, so that they may know you and the benefits of your benevolent grace which extends to all.

96. "You who are bountiful to all, grant

մեզ, զի լիցուք վկայք աստուածութեանդ քոյ, չարչարել վասն անուան քոյ, և մեռանել վասն ճշմարտութեան քոյ, և նորոգել միւսանգամ ի գալստեան քոյ. զի դու եկիր և մեռար ի վերայ արարածոց քոց, և խառնեցեր զմահկանացու բնութիւնս մեր յանմահութիւն քո։ Վասն այսորիկ և մեք մինչև ի մահ լիցուք վկայք կենդանութեան քոյ, զի խառնեսցուք ի թիւ վկայից քոց. զի այլ զի՞նչ ինչ արդեօք կարիցեմք առնել դարձուածս փոխարէն բարեացն որ ի քէն՝ եթէ ոչ տացուք զանձինս մեր փոխանակ պատուիրանաց քոց, ի հաճութիւն կամաց քոց. զի լիցուք ժառանգորդք արքայութեան քում ընդ այնոսիկ որ հաճոյ եղեն առաջի քո. զի մատուսցուք զանձինս մեր պատարագ աստուածութեան քում. զի կորուսցուք զանձինս, և դարձեալ գտցուք զնա յաւուր յարութեան. կացցուք ընդ աջմէ քումմէ զանմեղութիւն զգեցեալ ընդ գառինս աջակողմեան դասուն, կամարարաց քոց, յուրախութիւն սրբոց քոց, որ սիրեցին զաստուածութիւն քո և զմիածին Որդիդ, զՏէր մեր Յիսուս Քրիստոս. որ եղև գառն ճշմարիտ և մատոյց զանձն իւր քեզ պատարագ վասն մեղաց ամենայն աշխարհի, զի լիցի հաճեցուցիչ և բարեխօս ընդ արարիչդ և ընդ արարածս։ Իսկ որ յայս հաճութիւն ընթացեալ մերձեցան՝ պատրաստեայ նոցա օթեվանս յարքայութեան ա-

us to become martyrs for your divinity, to be tortured for your name's sake [cf. Phil. 1.29], to die for your truth [cf. Acts 21.13], and to be renewed again at your coming. For you came and died on behalf of your creatures and joined[1] our mortal nature to your immortality. Therefore let us be martyrs unto death for your life, that we may be joined to the number of your martyrs. For what other return indeed can we make for the blessings (that come) from you, unless we give up our lives for your commandments to the good-will of your desire, that we may become inheritors of your kingdom with those who were pleasing before you and we may offer ourselves as a sacrifice to your divinity;[2] that we may lose our lives and again find them [cf. Matt. 10.39] on the day of resurrection, when we sit on your right hand clothed in innocence among the lambs of the group on the right-hand side [cf. Matt. 25.33], your servants, in the joy of your saints, who have loved your divinity and your only-begotten Son, our Lord Jesus Christ? He was the true lamb [cf. Jn. 1.36] and offered himself to you as a sacrifice for the sins of the whole world, that he might be a reconciler and intercessor between you the creator and the creatures [cf. Gal. 3.19; Heb. 7.27; 9.14-15]. But for those who have hastened to draw near to this good-will, he has prepared dwellings in the kingdom

տուածութեանն իւրոյ։ Իսկ որք ոչն կամեցան մտանել ի հաճութիւն հնազանդութեան գալըստեան նորա՝ յաւիտենից տանջանս խոստացաւ։

97 «Եւ արդ՝ Տէր բարերար, որ եկիր և խոնարհեցար և առեր զկերպարանս մարդկան, և ետուր զանձն քո ամենայն համբերութեան, և ոչ դարձուցեր զանձն քո յանարգանաց ընդ երեսս թքանելոյ, և մատուցեր հարկանելեաց զծնօտ քո, քացախ և լեղի դառնութեան վասն մեր արբեր, քաղցրացո՛ զսիրտ ամենայն մարդկան ի պաշտօն քո, զի հնազանդեսցին ընդ ամենահեշտ լծով քով և ապրեսցին ի յաւիտենից տանջանացն. զի լցաւ իսկ երկիր աստուածպաշտութեամբ քով. և որ մնացեալքս են՝ զի և սոքա մի՛ վրիպեսցին ի ճշմարտութեան ճանապարհաց քոց, և հրաւիրեսցին յարքայութեան սեղանդ և վայելեսցեն ի համբերութենէ քումմէ։ Որ վասն ամենեցուն եկիր ի սպանումն իբրև զգառն, և ուրախ արարեր ի մարմին քո, զոր ետուր ի փրկութիւն ամենեցուն, և զուղխս փափկութեան քոյ ետուր ըմպել, զարիւն քո, վասն կենաց ամենայն աշխարհի, զթա՛, զի յիշեսցեն և դարձցին և եկեսցեն առ քեզ ամենայն ծագք երկրի, և երկիր պագցեն առաջի քո ամենեքեան, որք իջանեն ի հող. զի կարող ես միւսանգամ կանգնել, կենդանացուցանել և առնել արժանիս մարդասիրութեան քոյ. զի քո իսկ արեամբ են փըր-

of his divinity [cf. Jn. 14.2]. But to those who did not wish to enter into obedience to the good-will of his coming he promised eternal torments [cf. Matt. 25.46].

97. "So, benevolent Lord, who came and was humbled and took the form of mankind [cf. Phil. 2.8] and gave yourself to every endurance, and did not turn yourself from the insults of being spat in the face [cf. Matt. 26.67], and offered your cheek to those striking you [cf. Lam. 3.30; Lk. 6.29] and drank bitter vinegar and gall for us [many refs.]—sweeten the heart of all men for your service, that they may submit to your easy yoke [cf. Matt. 11.30] and be saved from eternal torments; for the earth has been filled with piety towards you. And as for those who remain, let them not miss your paths of truth, and may they be invited to your royal table[1] and may they enjoy your long-suffering. You came for the sake of all to be slaughtered like a lamb [cf. Acts 8.32], and you made (them) rejoice in your flesh which you gave for the salvation of all. And you gave as drink the stream of your gentleness [cf. Ps. 35.9], your blood, for the life of the whole world. Have pity, that all corners of the earth may remember and turn and come to you [cf. Ps. 21.28], and that all may worship before you, who go down to the dust [cf. Ps. 21.30]. For you are able to raise them up again, to revive them and make them worthy of your benevolence. For by your blood they have been saved

կեալք և ազատեալք յիշխանութենէ խաւարի։ Արդ՝ ծանիցեն զքեզ՝ յորոց վերայ մեռար դու. զի քո իսկ են ծառայք և քեզ լիցին երկրպագուք. զի մի՛ եկեսցէ ի վերայ մարդկան բարկութիւն սրտմտութեան քոյ։

98 «Արա՛ զմեզ որդիս լուսոյ և որդիս տուընջեան, զի փառաւորեսցի անուն քո ի վերայ ամենայն տիեզերաց. զի դու ես փառաւորեալ ի մշտնջենաւոր արքայութեանդ, որ եսդ յէութեանդ, յիսկութեանդ, յինքնութեանդ։ Որ ետուր օրինակ չարչարանաց քոյովդ չարչարանօք խոնարհութեամբ՝ քոյոց սիրելեաց, և ցուցեր զհալածանս քոյով հալածելովդ, և ցուցեր զտանջանս քոց սրբոց՝ ի քո մտանել ի տանջանս կափահարութեանդ։ Իսկ մեք հողեղէնքս ընաւ իսկ զի՞նչ բերիցեմք ի համար զմեր նեղութիւնս չարչարանաց. զի դու, Տէր, խոնարհեցար և առեր յանձն զամենայն, և բարձեր զվիշտս և զչարչարանս ամենայն տիեզերաց։ Արդ՝ զօրացո՛ զիս, Տէր, ի ժուժկալութիւն պնդութեան նեղութեանս՝ ուր կամս. զի յերկարեսցի իմս պարծել ի նեղութիւնս տանջանաց. զի հաւասարեցայց և ես ընդ սիրելիս քո յաւուրն, յորում հատուցանիցես զանպատում բարիսդ, որ կայ պահի յուսացելոց քոց որ յաւիտենից»։

99 Եւ մինչդեռ կայր նա կախեալ այնպէս՝ խօսեցաւ զայս ամենայն. և գրեցին ատե-

and freed from the power of darkness [cf. Col. 1.13-14]. So let them know you who died for them. For they are your servants and will become your worshippers, lest there come upon men the anger of your wrath.

98. "Make us sons of light and sons of the daytime [cf. I Thess. 5.5], that your name be glorified over all the universe. For you are glorified in your eternal kingdom,[1] you who exist in your essence, in your being, in your individuality.[2] You gave an example of suffering to your loved ones through your own sufferings and humility;[3] you showed torment by being tormented yourself; you showed torture to your saints by enduring the torture of being buffeted yourself [cf. Matt. 26.67]. But we earthly creatures, how at all can we number our tribulations and sufferings? For you, Lord, humbled yourself and accepted everything, and you removed the afflictions and torments of the whole universe. So strengthen me, Lord, to endure the severity of the tribulation in which I find myself, that my boasting in the tribulation of (my) torments [cf. Rom. 5.3] may endure, so that I too may be considered equal with your beloved ones on the day in which you will bestow your ineffable blessings, which are stored up for those who hope in you for ever [cf. I Cor. 2.9; Pet. 1.4]."

99. All this he said while hanging thus suspended. And the scribes of the tribunal[1] wrote it down.

նակալ դպիրքն նշանագրացն. զի առ ոչինչ համարեալ զկախաղանն, և ոչ զբրածեծ զանխն գրեաց ինչ զվիշտս. զի ջարդեալ էր զամենայն մարմինսն յօդորածեծն առնելոյ։ Եւ այլ ևս բազում քան զայս խօսեցաւ՝ մինչդեռ կայր կախեալ զլխիվայր, և գրեցին և մատուցին զայն առաջի թագաւորին. քանզի էր կախեալ զեօթն օր զմիոյ ոտանէն։ Եւ յետ այսորիկ ետ հրաման, և իջուցին զնա անտի։

100 Սկսաւ խօսել ընդ նմա թագաւորն Հայոց Տրդատ և ասէ. «Զի՞նչ ունիս, և կամ զի՞նչ եղեր ի մտի, լինե՞լ կցորդ կենաց իմոց, որպէս աշխատեցարն ընդ իս ի մանկութենէ վաստակովք, եթէ մեռանել տարապարտուց, ի տարապարտ խորհուրդս ընդունայնութեան մտացդ՝ ուր կասդ իսկ»։ Նա պատասխանի ետ և ասէ. «Փութամ ես ելանել ի մարմնոյս, և առնուլ զկէանսն յաւիտենից. այլ տո՛ւր հրաման վասն իմ որպէս և կամիս, զի՛նչ մահ և հրամայես ի վերայ իմ»։

101 Ետ պատասխանի արքայ և ասէ. «Ոչ տամ զայդ պարգև՝ եթէ լիցի քեզ վախճան մահու երագ երագ և հանգչել ի տանջանաց, զոր կոչես դու կեանս յաւիտենից. այլ կատել զքեզ յերկար, զի ոչ լիցի հնար քեզ երագ մեռանել, այլ տանջել զքեզ յերկար և պահանջել ի քէն զանարգանս դիցն և զյամառութիւնդ քո, որ ոչ

For he paid no heed to the gallows and disregarded the blows of the bastinado. For they had broken all his body from the flagellation. And he said many more things while he was hanging upside down, and they wrote them down and brought them before the king, since he was hanging for seven days from one foot. Then he gave a command and they brought him down.

[*C. The other ten tortures; the revelation of Gregory's ancestry and his imprisonment*]

100. Trdat, king of Armenia, began to speak with him, saying: "What is your opinion and what decision have you made? To share in my life just as you have labored with me from a young age; or to die vainly in the inane thoughts of your foolish mind?" He replied and said: "I am anxious to leave this body [cf. II Cor. 5.8] and receive eternal life. But command in my case as you wish, whatever death you impose on me."

101. The king replied and said: "I shall not give you that reward, for you to receive death quickly and have respite from tortures, which you call eternal life. But I shall cause you to be tormented for a long time to prevent you from dying quickly, and shall rather torture you at length and exact retribution from you for your insults to the gods and your obstinacy

կամեցար պաշտել զնոսա»։

102 Եւ ետ հրաման բերել կոճեղս փայտից, և առնել ըստ ոլոքի խոտցաց ոտից նորա. և դնել և պնդել ուժգին առատկօք, մինչև իջանէր արիւնն ընդ ծայրս ոտից մատանց նորա. և ասէ. «Գիտիցե՞ս կամ զգայցե՞ս ինչ արդեօք զցաւսդ»։ Նա պատասխանի ետ և ասէ. «Տուաւ ինձ զօրութիւն, քանզի խնդրեցի ես յԱրարչէն արարածոց, որ է ճարտարապետ և Արարիչ ամենայնի՝ որ երևի և որ ոչն երևի»։ Եւ հրամայեաց, և լուծին զնա յայնմանէ։

103 Եւ ետ հրաման բերել բևեռս երկաթիս և վարել ընդ ներբանս ոտից նորա. և առեալ զձեռանէ նորա աստի և անտի՝ ընթացուցանէին զնա յայս կոյս և յայն կոյս. և արիւնն հոսէր իջանէր յոտից անտի, և ոռոգանէր զերկիրն սատիկ յոյժ։ Եւ դարձեալ ասէ ցնա. «Ա՞յդ են աներևոյթ արարածք Աստուծոյն քո, զոր դուն տեսանես»։

104 Նա ասէ. «Բարւոք ասացեր, եթէ այս իցեն աներևոյթ արարածք Աստուծոյն իմոյ. վասն զի «Սերմանի տկարութեամբ՝ և յառնէ զօրութեամբ. սերմանի անարգութեամբ՝ և յառնէ փառօք»։ Զի «Լալով լան՝ որք տանիցին զսերմանիս իւրեանց», այսինքն են վիշտ և չարչարանք, որ հասանեն մեզ որ վասն աստուածպաշտութեանն են. այլ յորժամ որայն ի հունձս

in being unwilling to worship them."

102. He commanded that blocks of wood be brought and fixed to his shins and feet and tightened with strong cords until the blood ran down to the tips of his toes.[1] And he said: "Do you feel or sense your pain at all?"[2] And he replied and said: "I have been given strength [cf. Acts 1.8], because I asked the Creator of creation, who is the architect and creator of everything visible and invisible [cf. Heb. 11.10]." And he commanded, and they loosed him.

103. And he commanded iron nails to be brought and driven through the soles of his feet.[1] They took him by the hand and made him run this way and that. And the blood ran out from his feet and watered the earth in great abundance. And again he said to him: "Are these the invisible creations of your God, which you now see?"

104. He replied: "Rightly have you said that these are the creations of my God, because 'it is sown in weakness and rises up in power; it is sown in dishonor, and rises up in glory' [I Cor. 15.42-3]. For 'they weep indeed, who will take away their seeds' [Ps. 125.6a]—that is toil and torment which come upon us for the sake of piety. But when the germ of wheat comes to harvest

եկեալ մատուսցէ զատուքութեանն բերրի զպը-տուղ սերմանողացն՝ ընդ Նմին և զցնծութիւն բերկրութեան ուրախութեանց ամենայնի բերէ»։

105 Ասէ թագաւորն. «Բախեցէք զաման լալոյ արտասուացն. թող եկեսցէ դմա ուրա-խութիւն»։ Եւ հանին Նմա կոււփս ի գլուխն, հարկանելով զնա անհնարին։ Սկսաւ հարցանել զնա և ասէ. «Ա՞յդ է ուրախութիւնն»։ Եւ Նա ասէ. «Այո այս է. զի թէ ոչ քրտնեսցի մշակն ի տապ խորշակի ջերմոյն արեգակնակէզ լինե-լով՝ ոչ ըմբռնէ զարդիւնս շայեկանս ուրախու-թեան պտղոցն ձմերայնւոյն հանգստեան»։ Եւ պատասխանի արքայ և ասէ. «Դու աստէն իսկ աշխատեա՛ց ի մշակութիւն տանջանացդ, յորում կաս»։

106 Եւ ետ հրաման բերել աղ և բորակ և բարկ քացախ, և ընկենուլ զնա յորսայս, և դնել զգլուխ Նորա ի հիւսանց մամուլս և դնել փող եղեգան ի քիթս Նորա, և արկանել զայն ընդ քիթս Նորա։

107 Եւ յետ այսորիկ ետ հրաման, և բե-րին պարկս օղենիս մեծամեծս և լցին զայն մոխ-րով հնոցի. և արարին թուլագոյն, զի մի կարի լի իցէ, վասն տուրեաու շնչոյն, զի հարկանելով ընդ խելսն վտանգեսցէ զնա։ Եւ ագուցին զայն ի գլուխ Նորա, և կապեցին զբերան պարկին ի փողս Նորա. և կաց Նովաւ աւուրս վեց։ Եւ յետ

it will offer to the sowers the ripe fruit of its maturity, and likewise it brings the joy of happy fruitfulness to all [cf. Ps. 125.6b]."

105. The king said: "Break the vessel of these tears of weeping; let joy come to him." They buffeted him on the head, striking him cruelly. He began to question him and said: "Is this happiness?" He replied: "Yes, it is. For unless the laborer sweats in the torrid heat of the shining sun, he will not gain the true reward of joyful fruit, rest in the winter." The king answered and said: "You indeed have labored here at the toil of these torments in which you find yourself."

106. And he ordered salt and borax and rough vinegar to be brought, and for him to be turned on his back, his head to be placed in a carpenter's vice, and a reed tube to be put in his nose, and this liquid to be poured down his nose.

107. After that he commanded and they brought a large sack[1] of sheepskin and filled it with cinders from a furnace. They made it not quite full in order to let him breathe, but so that his brain was affected and he would be thus tormented. They fixed this over his head and tied the mouth of the sack round his neck. And he remained thus for six days.

այսօրիկ ետ հրաման, և ածին առաջի թագաւորին, և ի բաց հանին զպարկն ի գլխոյն։

108 Սկսաւ խօսել թագաւորն և ասէ. «Ուստի՞ գաս. թերևս յարքայութենէ անտի գայցես զոր ասէիր»։ Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Այո՛, իսկ յարքայութենէ զոր ասէի՝ անտի գամ. վասն զի արժանի արար զիս Աստուած զայս ամենայն կրել յանձին վասն անուան իւրոյ։ Արդարև իսկ կայ մնայ ինձ արքայութիւնն որ ոչ անցանէ. փոխանակ մոխրոյն՝ անթառամ ծաղիկքն, և փոխանակ քացախոյն՝ անսպառ ուրախութիւնքն»։

109 Եւ սաստկացեալ թագաւորին՝ ետ պնդել զոտս նորա ի հրապոյրս տկաց, և կախել զնա գլխիվայր. և ետ դնել ձագար ի նստոյ տեղւոյ նորա, և արկանել ջուր տկաւ յորովայն նորա։ Եւ ետ հրաման, և իջուցին յայնմանէ. և սկսաւ հարցանել զնա և ասէ. «Առնե՞ս զկամս իմ, թէ ոչ պաշտես զդիսն, որ են ամենայն երկրի կեանք և շինութիւն»։

110 Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Ես տեառն Աստուծոյ իմոյ երկիր պագանեմ, զի նա է արարիչ և կեանք և շինութիւն. և զՈրդին հաստիչ և համազօր և համագործ, և զՀոգի նորին, որ ելից իմաստութեամբ զամենայն տիեզերս։ Այլ զկուռս կռեալս, կոփեալս, քերեալս և արարեալս՝ ոչ կալայ երբեք առ աստուածս, և

After that he commanded and they led him before the king and removed the sack from his head.

108. The king began to speak, and said: "Whence come you? Perhaps you come from the kingdom which you mentioned?" Gregory replied and said: "Yes, I indeed come from the kingdom of which I spoke. For God made me worthy to endure all this for his name's sake. Truly there awaits me the kingdom that passes not away—instead of cinders, unfading [cf. I Pet. 1.4] flowers; instead of the vinegar, inexhaustible joy [cf. Job 36.26; Lam. 3.22]."

109. The king, even more incensed, ordered his feet to be bound with cords of wineskins[1] and him to be hung upside down. And he had a funnel placed in his bottom and had water poured from a wine-skin into his belly. Then he gave a command and they brought him down. And he began to question him, saying: "Will you do my desire, will you not serve the gods who are the life and prosperity of the whole earth?"

110. Gregory replied and said: "I worship the Lord my[1] God, for he is creator and life and prosperity; and the Son, fashioner and equal in power and deed; and his Spirit, who filled the whole universe with wisdom.[2] But the hammered idols, sculpted and polished and worked [cf. Wis. 13.11; Is. 41.7], I never held to be gods—and

*մի՛ լիցի այլ ունել՝ մինչև իցէ շունչ իմ ի մարմնի իմում»։ Եւ պատասխանի թագաւորն և ասէ. «Փոխանակ զի իշխեաց ասել կռեալս և քերեալս դիցն՝ պահանջեսցի դա ընդ այդորիկ»։*

111 *Եւ ետ հրաման քերել զկողս նորա երկաթի քերչօք, մինչև ոռոգան վայրքն ամենայն յարենէ նորա։ Եւ սկսաւ ասել ցնա. «Արդ արտացե՞ս զկամս իմ, Գրիգորիոս, որ յայդպիսի տանջանս մատնեցար»։ Ասէ ցնա. «Ինձ լիցի պահել զուխտ աստուածպաշտութեան, զոր ուսայ ի մանկութենէ իմմէ, որ կարողն է փրկել զիս յամենայն նեղութենէ, և զքեզ արկանել ի տանջանս՝ որ ոչ ճանաչես զնա, և դարձեալ զայլս ևս զարհուրեցուցանել կամիս և քակել ի պաշտմանէ սիրոյ նորա»։ Եւ պատասխանի թագաւորն և ասէ. «Ո՞ւր է Աստուած քո, որ փրկէն զքեզ ի ձեռաց իմոց, և կամ դատի, որպէս ասցեր, դատաստանօք իւրովք»։*

112 *Եւ ետ հրաման, և բերին տատասկ երկաթի բազում սակառօք, և արկին ի վերայ գետնի թանձր. և մերկացուցին զԳրիգորիոս, և արկին ի վերայ տատասկին մերկ. և ծակոտեալ լինէին մարմինք նորա առ հասարակ. և քարշեցին և թաղեցին զնա ի տատասկին. և շրջշրջէին զնա անդէն, մինչև առ հասարակ ծակոտեցան մանրիկ մարմինք նորա, մինչ զի ոչ մնաց ի նմա տեղի ողջ։*

may I never so hold any other so long as my breath is in my body." The king replied and said: "In return for daring to call the gods hammered and polished, let him pay retribution for that."

111. He ordered his flanks to be torn with iron scrapers[1] until all the ground was running with his blood. And he began to say to him: "So will you do my desire, Gregory, now that you have been given over to such torments?" He replied: "May I keep the covenant of piety which I learned from my youth [cf. II Tim. 3.15]; (God)[2] can save me from every tribulation [cf. I Tim. 4.8], and cast into torment you who do not know him and wish to frighten others still more and separate them from the service of his love." The king replied and said: "Where is your God, who will save you from my hands, or is judged, as you said, by his own judgments?"

112. He gave a command and they brought iron "thistles"[1] in many baskets and cast them thickly on the ground. They stripped Gregory and threw him naked onto the "thistles." His flesh was pierced all over. They dragged and buried and rolled him in the "thistles" until every part of his body was torn, leaving[2] no place intact.

113 Եւ ի միւսում աւուրն ածին զնա առաջի նորա։ Սկսաւ հարցանել զնա և ասէ. «Զարմացեալ զարմացեալ եմ, և կարի քաջ. զիա՞րդ կեաս դու կենդանի. և ոչ ինչ զրեցեր դու զցաւսդ, և խօսիս ևս. զի արժան էր, թէ վաղուց էիր դու վախճանեալ ի տանջանաց այտի»։

114 Եւ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Ոչ է իմ ժուժկալութիւն տոկալոյդ՝ իմով զօրութեամբ, այլ ուժով շնորհի Տեառն իմոյ, և իմոյ յօժարութեան կամացս, որ խնդրեցի ի նմանէ, զի և դու զփորձ առցես զծառայիս Աստուծոյ. զի գիտասցես, թէ ոչ ոք կարէ մեկնել զյուսացեալս ի նա ի սիրոյ նորա։ Զի նա տայ ոյժ և զօրութիւն համբերութեան՝ համբերել նեղութեանց և փորձութեանց. զի ամաչեսցեն անօրէնք յունայնութեան իւրեանց և յամբարշտութեան և յապստամբութեան իւրեանց, որ իբրև զքեզդ իցեն, և կացցեն ամօթով յաւուրն այցելութեան և յանդիմանութեան»։

115 Եւ ետ հրաման արկանել կապիճս երկաթիս ի ծունկս նորա, և վարել ուռունս ստուարս, և բառնալ ի կախաղան՝ մինչև յօշեսցին ծունկք նորա անդէն։ Եւ կաց կախեալ այնպէս զերիս աւուրս։

116 Եւ յաւուրն չորրորդի հրաման ետ թագաւորն, և իջուցին զնա ի կախաղանէն, և ածին կացուցին զնա առաջի նորա։ Խօսել սկսաւ

113. The next day they brought him before (the king).[1] He began to question him, saying: "I am very greatly amazed how you are able to stay[2] alive. You have counted your pains as nothing and you still speak. For long before now you should have died from (such)[3] torments."

114. Gregory replied and said: "My ability to endure this is not through my own power but through the strength of the grace of my Lord and of my well-disposed will, which I sought from him so that you might test this servant of God, that you might know that no one can separate from his love those who hope in him [cf. Rom. 8.39]. For he gives strength and power to endure and bear afflictions and testings, that the lawless may be ashamed in their inanity and impiety and rebellion [cf. Ps. 24.4]—who will become like you and will stand in shame at the day of visitation and reproach."

115. And he commanded iron leggings[1] to be put on his knees, and that he be struck with heavy hammers and be suspended on the gibbet until his knees were broken. And he stayed hanging thus for three days.

116. And on the fourth[1] day the king gave a command, and they brought him down from the gibbet and led him before him. The king began to speak

*թագաւորն և ասէ. «Տե՛ս դու, Գրիգորիոս, զի ոչ փրկեաց զքեզ սնոտի յոյսն քո, յոր յուսայիր դու. չեհան զքեզ ի ձեռաց իմոց»։*

117 *Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Տե՛ս դու, զի սնոտի են յոյսքն քո, և ոչ կարացին հաւանեցուցանել և ոչ երկեցուցանել զիս. զի զոր դուն պաշտես՝ սնոտի է, և ամենայն գործ մոլորութեան քոյ։ Այլ տե՛ս դու, զի ո՛չ ի տանջանաց քոց երկեայ ինչ ես, և ոչ զսաստ ահի քոյ համարեցայ ինչ. այլ զօրութեամբ Տեառն իմոյ մարտեալ ընդ թշնամւոյն՝ որ ի ծածուկն քև պատերազմի ընդ ճշմարտութեան, և մատնեցի զմարմինս իմ ի կիզումն տանջանաց. զի եթէ վաղ եթէ անագան՝ սակայն քակտի հնացեալ մարմինն. զի եկեսցէ ճարտարապետն, զտեալ զորդիս մարդկան՝ միւսանգամ զնոյն հնացեալն անդրէն նորոգեսցէ։ Զի զորոց զոգիսն գտանէ ի պարկեշտութեան, ի զգաստութեան, ի սրբութեան, ի քաղցրութեան, ի հեզութեան, յաստուածպաշտութեան կեցեալ՝ նորոգէ, զարդարէ, կեցուցանէ զնոյն ոգիս նովին մարմնով։ Իսկ զորս գտանէ յանօրէնութեան և յամբարշտութեան, յաստուածատեցութեան, ի կռապաշտութեան կեցեալ՝ թէպէտ և բուսանել բուսանին մարմինք նոցա առ ժամանակ մի՝ այլ զնոսին նովին ոգւով և նովին մարմնով արկանէ ի գեհեն, յանշէջ հուրն, յաւիտենից տանջանս, մանաւանդ զայնոսիկ, որ իբրև զքեզդ են ի կռա-*

and said: "See, Gregory, that your futile hope in which you had confidence did not save you or deliver you from my hands."

117. Gregory replied and said: "See, your hopes are vain and they could not persuade me or make me doubt. For that which you serve is vain, as is the whole activity of your error. But see, I was not in the least afraid of your torments and I considered as nothing your fearsome menaces. But through the power of my Lord I fought with the enemy, who in hidden fashion wars through you against the truth, and I submitted my body to the burning torments. For be it sooner or later, nonetheless the body grows old and is dissolved [cf. II Cor. 5.1]. The architect [cf. Heb. 11.10] will come and find the sons of men, and will renew this same that has grown old [cf. Phil. 3.21]. For those whose souls he finds living in decency, in sobriety, in holiness, in sweetness, in gentleness, and in piety [cf. Tit. 2.12]—he will renew, adorn and vivify these same souls with the same body.[1] But those whom he finds living in lawlessness and impiety, hating God and worshipping idols, although their bodies may flourish for a while, yet with that same soul and body he will cast them into hell, into the inextinguishable fire [cf. Mk. 9.43], into eternal torments—and especially those who are like you in idolatry."

պաշտութեան»։

118 Իսկ իբրև լուաւ զայն Թագաւորն՝ բարկացաւ ընդ բանսն և ասէ. «Ինձ ոչ է փոյթ զայնմանէ, թէ նորոգեսցէ՞ զքեզ Աստուածն քո թէ ոչ. ինձ ոչ է պէտ զայնմանէ։ Այլ զի ասացեր, եթէ զքեզ յանշէջ հուրն արկանէ՝ ես զքեզ աստէն իսկ այրեցից շիջանուտ հրով. տեսցուք, քո Աստուածն զի՞ արասցէ»։

119 Եւ ետ հրաման երկաթի պուտամբք հալել կապար, և մինչդեռ ջերմ էր՝ իբրև զջուր հոսել արկանել զմարմնով նորա։ Եւ այրեցին զմարմինս նորա առ հասարակ, և ոչ մեռաւ. այլ կայր մեծաւ ուժով, և զինչ հարցանէին՝ փաղփաղակի տայր պատասխանի։

120 Եւ զարմացեալ Թագաւորն ընդ ժուժկալութիւն համբերութեանն կարի անհնարին և ընդ տոկալ նորա՝ և ասէ, թէ «Զիա՞րդ կայ ի քեզ շունչդ յայդչափ ժամանակաց, և ի չարաչար տանջանացդ, որով զքեզն կոտեցի»։ Ետ պատասխանի Գրիգորիոս և ասէ. «Ո՞չ վաղ իսկ ասացի քեզ, եթէ զի առցես դու զփորձ համբերութեան ծառայիս Աստուծոյ. զի տայ զօրութիւն յամօթ առնել զայնոսիկ, որ առանց նորա իցեն և մարտնչիցին ընդդէմ նորա իբրև զքեզդ։ Զի այսպէս ասէ. «Ոչ թողից զձեզ, և ոչ ընդ վայր հարից»։ Արդ՝ այս է պահպանութիւն նորա առ արարածս իւր և առ սիրելիս իւր,

118. When the king heard this he was angry at the speech and said: "I have no interest in that; whether your God will renew you or not is not my concern. But because you said 'he will cast you into inextinguishable fire,' I now will burn you with fire that can be extinguished. Let us see what your God will do."

119. He ordered lead to be melted in iron cauldrons,[1] and while it was still hot to be poured like water over his body. And his flesh was completely burned. Yet he did not die, but withstood it with great fortitude. And to whatever they asked he immediately replied.

120. And the king was amazed at his incredible fortitude and endurance and at his persistence, and said: "How does there remain breath in you after so long and after these cruel tortures with which I have afflicted you?" Gregory replied and said: "Did I not tell you earlier to test the endurance of this servant of God? For he gives strength in order to confound those who are without him and who fight against him like you. For thus he says: 'I shall neither abandon you nor cast you down' [Ps. 36.28; Jn. 14.18]. So this is his protection towards his creatures and his loved ones,

*զի պահեսցէ զնոսա ի հաւատս իւրեանց որ ի նա, մինչև հատուսցէ նոցա ի գալստեան իւրում»։*

121 *Եւ մինչդեռ խորհէր Տրդատիոս խօսել և այլ ողոքով ընդ նմա, և յղել պատգամ և խոստանալ կեանս և պատիւս, որում ոչ ինչ էր լսելոց,—«Եթէ այնմ ևս ոչ լսիցէ՝ ասէ, և այլ ևս յաւելից, և ի տոկ կտտեցից».—յառաջ մատուցեալ ոմն ի նախարարացն, որում անուն էր Տաճատ, փեսայ Ալտաւանայ սպարապետի արքայի՝ սկսաւ խօսել և տալ տեղեկութիւն և ասել այսպէս վասն նորա, թէ «Վասն զի չէ պարտ կենաց՝ վասն այնորիկ ոչ կամի կեալ և զլոյս տեսանել։ Զի այսքան ժամանակք են, որ առ մեզ բնակեալ է, և ոչ գիտէաք զսա. այլ դա է որդի Անակայ մահապարտի, որ սպան զհայր քո Խոսրով, և արար խաւար Հայոց աշխարհիս և ի կորուստ մատնեաց զայս աշխարհ և ի գերութիւն. արդ՝ չէ պարտ կեալ դմա, զի որդի վրիժապարտի է դա»։*

122 *Եւ յետ այսչափ հարցից և տանջանաց, զանից և բանտից, գելարանաց և կախաղանաց, դառն նեղութեանց և ամենայն կտտանաց, որով կտտեցին զնա, բազում համբերութեամբ յանձն իւր տարեալ վասն անուան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. այդ՝ իբրև այնմ ևս հասանէր թագաւորն ի վերայ իրացն, եթէ արդարև որդի*

to keep them in their faith in him until he will reward them at his coming."

121. While Tiridates was planning to speak with him in a gentler fashion and to reply and promise him life and honors, to which he would not have agreed—"If he does not agree to this, he said, then will I increase (the tortures)[1] still more and break his endurance"—there came forward one of the princes, whose name was Tachat, son-in-law of Artavan the High Constable,[2] and he began to speak and give information about him as follows: "Because he is unworthy of life, therefore he does not wish to live and see the light. For it is all this time since he has been living among us and we did not recognize him. But he is the son of the guilty Anak, who killed your father Khosrov and plundered this land of Armenia and brought this country to destruction and captivity. So it is not right for him to live, because he is the son of a guilty man."[3]

122. After so many interrogations and torments, beatings and imprisonments, bindings and hangings, bitter afflictions and every torture that they had inflicted on him, which he accepted with great patience for the sake of the name of our Lord Jesus Christ, then when the king discovered this further about him that he was in truth the son

Անակայ Պարթևի է, որ սպան զԽոսրով հայր նորա՝ հրաման տայր կապել ոտիւք և կապել ձեռօք և կապել պարանոցաւ խաղացուցանել զնա յԱյրարատ գաւառ, և տալ զնա ի դղեակ բերդին Արտաշատ քաղաքի, և իջուցանել ի վիրապն ներքին, որ անհնարին էր խորութեամբ, մինչև անդէն մեռցի։ Եւ եղև նա յայնմ վիրապի ամս երեքտասան։ Եւ ինքն իսկ թագաւորն խաղայր գնայր ի ձմերոց յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, ի Հայոց աշխարհ յաբնելս։

123 Իսկ թագաւորն Տրդատ զամենայն ժամանակս իւրոյ թագաւորութեանն աւերէր քանդէր զերկիրն Պարսից թագաւորութեանն և զաշխարհն Ասորեստանի, աւերէր և հարկանէր ի հարուածս անհնարինս։ Վասն այսորիկ պատշաճեցան բանքս այս ի բանս կարգի առակաց, թէ «Իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն ուռեաց զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ ի սիգալն իւրում զյորձանս ծովուց»։ Վասն զի սէգ իսկ էր առ հանդերձս և այլ ուժով պնդութեան, հարստութեամբ, բուռն ոսկերօք և յաղթ մարմնով, քաջ և պատերազմող անհնարին, բարձր և լայն հասակաւ. որ զամենայն ժամանակս կենաց իւրոց պատերազմեալ և առնէր մարտիցն յաղթութիւն։ Մեծ անուն պարծանաց քաջութեան անձին ստանայր, և զհոյակապ շքեղութիւն

of Anak the Parthian who had killed his father Khosrov, he ordered him to be bound hand and foot and neck and to be taken and shut up in a dungeon in the province of Ayrarat, that he should be taken to the acropolis[1] of the city of Artashat[2] and let down into the bottommost pit[3] that was incredibly deep until he died there. And he was in that pit thirteen[4] years. But the king himself went to the province of Ayrarat to his winter-quarters in the city of Vaļarshapat, in the East of Armenia.

[Chapter 4. Trdat's prowess; his edicts concerning the gods and against Christians]

123. King Trdat spent the whole period of his reign devasting the land of the Persian kingdom and the land of Asorestan.[1] He plundered and caused terrible distress. Therefore this saying was adopted among the proverbial sayings: "Like the haughty Trdat, who in his pride devastated the dykes of rivers and in his arrogance dried up the currents of seas."[2] For truly he was haughty in dress and endowed with great strength and vigor; he had solid bones and an enormous body, he was incredibly brave and warlike, tall and broad of stature. He spent his whole life in war and gained triumphs in combat. He acquired a great renown for bravery

*յաղթութեան ընդ ամենայն աշխարհ կացուցանէր. հարկանէր ի հարուածս զթշնամիսն, և խնդրէր զքէնս վրիժուց իւրոց հայրենեացն. առնոյր աւար բազում ի կողմանցն Ասորւոց, և թափէր կապուտ սաստիկ անհնարին ի նոցանէն։ Արկանէր ի սուր զզօրս Պարսից, և թափէր կողոպուտ անհնարին. լինէր առաջնորդ առն և ձիոյ զօրացն Յունաց, և մատնէր նոցա զբանակս նոցա. հանէր զզօրս Հոնաց սաստիկ յոյժ, և գերէր զկողմանս Պարսից։*

124 *Եւ զայն ամս երեքտասան, որ եղև Գրիգորիոս ի բերդին բանդին և ի խոր վիրապին, կին ոմն այրի, որ էր ի բերդին յայնմիկ, հրաման առեալ յարհաւրաց՝ զի աւուրն նկանակ մի արարեալ պատրաստական ընկենուլ ի ներքս ի խոր վիրապն. և այնու կերակրեալ լինէր նա ի հրամանէն Աստուծոյ զայն ամս, որ եղև նա անդ։ Իսկ յայն վիրապ, ուր ընկեցին զնա՝ պահեալ լինէր նա կենդանի շնորհիւ Տեառն իւրոյ։ Իսկ այլ մարդիկ, որ միանգամ իջուցեալ էր անդր՝ ամենեքեան մեռեալ էին վասն դժնդակ չարաշունչ դառնութեան տեղւոյն, վասն կարակում տղմին, օձախառն բնակութեան և խորութեանն։ Վասն չարագործաց իսկ էր շինեալ զայն տեղի և ի սպանումն մահապարտացն ամենայն Հայոց։*

125 *Եւ յետ այսորիկ հրաման ետ Տըր-*

and extended throughout the whole world the glorious splendor of his victories. He threw his enemies into disarray and revenged his ancestors. He devasted many of the regions of Syria[3] and took a great amount of booty from them. He put to the sword the armies of the Persians and acquired enormous booty. He became commander[4] of the cavalry of the Greek army, and handed over to them the camps (of the enemy). He expelled the armies of the Huns by force and subjected the regions of Persia.[5]

124. And during the thirteen[1] years that Gregory was in the dungeon of the fortress, in the deep pit, a widow who lived in that castle received a command in a dream to prepare a loaf[2] a day and to throw it into the deep pit. And thereby Gregory was nourished[3] by God's command for the years he was there, and in that pit where they had thrown him he was kept alive by the grace of his Lord. But other men, once they had been let down there, all perished because of the atrociously bad air of the place, because of the muddy mire, the snakes who lived there and the depth. That place had been constructed for evil-doers and in order to execute those condemned to death in all Armenia.

125. Then king Trdat ordered an edict to be made

զատ արքայ՝ հրովարտակ առնել ընդ ամենայն աշխարհս իշխանութեան իւրոյ, հրաման հանեալ օրինակ զայս.

126 «Տրդատ արքայ Հայոց մեծաց, առ մեծամեծս և առ իշխանս և առ նախարարս և առ գործակալս և առ այլ մարդիկդ, որ ընդ իմով իշխանութեամբ էք, յաւանս, ի շէնս, ի գեօղս, յագարակս, առ ազատս և առ շինականս, միանգամայն իսկ առ ամենեսեան, ողջոյն։

127 «Ողջոյն հասեալ և շինութիւն դիցն օգնականութեամբ, լիութիւն պարարտութեան յարոյն Արամազդայ, խնամակալութիւն յԱնահիտ տիկնոջէ, և քաջութիւն հասցէ ձեզ ի քաջէն Վահագնէ ամենայն Հայոց աշխարհիս. իմաստութիւն Յունաց հասցէ դաստակերտիդ կայսերաց, և ի մեր դիւցախառն Պարթևաց հասցէ այցելութիւն, ի փառաց թագաւորաց և ի քաջ նախնեաց։

128 «Ամենայն ոք գիտասցէ ի մերոց հրամանացս որ առ ձեզ, զի վասն ձեր շինութեան եմք հոգացեալք. զի յորժամ էաք մեք ի Յունաց աշխարհին՝ անդ տեսանէաք զհոգաբարձութիւն թագաւորացն, ի հոգալ ընդ շինութիւն իւրեանց աշխարհին, ի պատուել զբագինս դիցն աստուածոց շինուածովք և սպանդիւք զոհիցն, և երևելի պատարագացն ընծայիւք, և զունակ զունակ նուիրօքն և ի պտղոցն՝ յամենայնէ զա-

throughout the whole land of his kingdom [cf. III Macc. 3.7], with a command as follows:

126. "Trdat, king of Greater Armenia, to the magnates, the nobles, the princes, the officials and other men under my authority [cf. III Macc. 7.2], in the towns, villages, hamlets, and estates, to the freemen and the peasants, to everyone together, greeting.

127. "May there be greeting and prosperity by the help of the gods [cf. III Macc. 3.9], abundant fertility from noble Aramazd, protection from Lady Anahit, valor from valiant Vahagn[1] to you and all our land of Armenia; may[2] there be the wisdom of the Greeks to the province[3] of the Caesars, protection (to us) from our heroic Parthians, from the glory[4] of (our) kings and brave ancestors.[5]

128. "Let everyone know from this command of ours to you, that we are concerned for your prosperity. For when we were in the land of the Greeks we saw there the solicitude of their kings in caring for the prosperity of their land, in honoring the altars of the gods with buildings and sacrifices and gifts of notable offerings, and all kinds of presents and fruits,

մենայն Նոցա մատուցանելով, և ջերմեռանդն եռալ զեռալ պաշտամանն, շքեղացուցանելով և զարդուքն զարդարելով և զերևելի զհոյակապ զանեղծ դիմն մեծարելով։ Եւ զայն ևս տեսանէաք ի Նոցանէ՝ ի Նոցունց դից անտի՝ զխաղաղաւէր շինութիւն մարդաշատութեան, հոծ բազմամբոխ լիութեամբ պարարտութեամբ՝ Նոցա զայն փոխադարձ փոխարինացն շինութիւն շնորհեալ, ամենալլրիւք բարութեամբ մեծացեալք խաղաղացեալք ի բարիսն վայելէին։

129 «Վասն որոյ պատուէր տուեալ, անհաբեկ աչարեալ Թագաւորաց աշխարհին՝ զմարդիկն զարհուրեցուցանէին վասն պաշտաման դիցն յոլովելոյ. մի՛ գուցէ թէ խառնաղանջ բազմամբոխ խաժամուժ մարդիկ առ ագիտութեան ինչ արհամարհիցեն. կամ եթէ ոք յանկարծ առ փոխելութեան իշխեսցէ արհամարհել զպաշտօն դիցն՝ հրաման ելեալ զօրացեալ ի Թագաւորաց, զի խլեսցեն բրեսցեն իշխանքն որ իցեն յիւրաքանչիւր գործակալութեան, զի շինութիւն աշխարհի ի դիցն բազմասցի։ Զի գուցէ թէ յանկարծ ոք զդիմն անգոսնեսցէ՝ վնաս մեծ ի ցասմանէ դիցն յուզեսցի. այնպիսիքն զանձինս կորուսանեն, և աշխարհի մեծ ոճիրս վնասուց ի Նոցանէն ընդոստուցանեն. վասն այսորիկ իսկ և ետուն զհրամանս սաստից այնպիսեացն՝ պատուհաս մահու՝ Թագաւորքն Յունաց յիւրեանց աշխարհին։

offering them a share of everything, being most assiduous in worshiping, embellishing, adorning and magnifying the noble, magnificent and eternal gods. And this further we saw, how from the same gods in compensation they gained peaceful and populous prosperity, abundant and overflowing fertility, and were honored with every blessing and enjoyed peace and happiness.

129. "Therefore the kings of that land by their commands[1] instilled fear in men to be assiduous in the cult of the gods. Lest perchance some of the common masses in ignorance might neglect it, or someone in a sudden derangement might dare to scorn the cult of the gods, a strong command was issued by the kings that the nobles in each one's sphere of office should extirpate and remove (such people), so that the prosperity of the country might be increased by the gods. For if perchance someone were suddenly to disdain the gods, great harm would be occasioned by the gods' anger. Such people would destroy themselves and bring upon the country terrible damage from them (the gods). Therefore the kings of the Greeks ordered such threats of the death penalty in their land.

130 «Արդ՝ և մեք հրաման շինութեան կամեցեալ ձեզ, հոգացեալ զի և ձեզ ամենալրիւքն ամենաբարիքն ի դիցն բազմասցին. զի ի ձէնջ՝ պաշտօն նոցա և փառաւորութիւն, և ի նոցանէ՝ շինութիւն, լիութիւն և խաղաղութիւն. զի որպէս ամենայն տանուտէր ընդ տան իւրոյ և ընդ ընտանեաց հոգայ՝ սոյնպէս և մեք հոգամք ընդ մեր Հայոց աշխարհիս շինութեան։

131 «Արդ՝ ամենայն նախարարք մեծամեծք և ազատք և գործակալք և սիրելիք մեր թագաւորաց, և շինականք, բնակք և ձեռատունկք և ձեռասունք մեր Արշակունեաց, զոր յանձանձեալսդ և սնուցեալսդ է, անխայեալսդ և յառաջեալսդ, վասն մեր օգտի հասարակաց հոգացեալ, զի զդիսն պատուեսջիք։ Արդ՝ եթէ յանկարծ ոք թէ գտցի, որ զդիսն անպատուեսցէ, և գտցեն զայնպիսին՝ կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք և կապեալ պարանոցաւ ի դուռն արքունի ածցեն. և տուն և կեանք և արարք և ստացուածք և գանձք՝ այն ամենայն այնոցիկ լիցի, որ զայնպիսին ի մէջ ածցեն։ Ողջ լերուք ի դիցն օգնականութենէ դուք ամենեքին և ի մեր թագաւորաց՝ որ ընդ այս հրաման կամիք, և ի շինութեան բնակեսջիք ամենեքեան, զի մեք զըլխովին իսկ ողջ եմք»։

132 Իսկ զամենայն ամս ժամանակաց իւրոց թագաւորն Տրդատ գոռացեալ ընդ Պարսից

130. "So, we, desiring prosperity for you and anxious that fruitful blessings be increased by the gods for you, command that on your part you pay them worship and glory, (then) from them (will flow) prosperity, abundance and peace. For as every householder cares for his house and family, so do we care for the prosperity of our land of Armenia.

131. "So, all princes and magnates[1] and freemen and officials and beloved of our majesty, peasants and inhabitants and clients of our Arsacid family, whom we provided for, raised, took care of and promoted in order to care for our common advantage, do you honor the gods. But if unexpectedly someone be found who may dishonor the gods—if such be found let them be bound foot and hand and neck and be brought to the royal court. And let their house and sustinence and goods and property and treasure belong to all those who expose such people. May you all be well by the help of the gods and of our majesty, you who abide by this command; may you all live in prosperity, as we are well."

132. All the years of his reign king Trdat warred against the Persian empire,

տէրութեանն՝ խնդրէր զքէնս վրիժուց մարտիւք պատերազմաց։ Իսկ ի լնուլ ամացն, որ եղև Գրիգորիոս ի վիրապին, իբրև ամս երեքտասան, և էր մարտ սաստիկ խստութեան Տրդատայ ընդ Պարսից թագաւորին՝ զամենայն աւուրս կենաց իւրոց։

133 Իսկ միւս ևս այլ հրովարտակ հրամայեաց գրել ընդ աշխարհս և ընդ գաւառս իշխանութեանն իւրոյ՝ օրինակաւս այսուիկ.

134 «Տրդատիոս Հայոց մեծաց արքայ. առ աշխարհս և առ գաւառս, առ նախարարս և առ զօրս և առ շինականս և առ ամենեսին ողջոյն. ողջ լիջիք, և մեք մեզէն իսկ ողջ եմք։

135 «Դուք ինքնին գիտէք, զիա՛րդ ի բնէ ի նախնեացն իսկ յաղթութիւն խաղաղութեան բազում էր շնորհեալ մեզ դիցն օգնականութեամբ, և կամ թէ որպէս զամենայն ազգս նուաճեալ էր, և ի հնազանդութեան ունէաք։ Իսկ յորժամ զդիսն ոչ մարթացաք հաճել պաշտամամբն, զկամս նոցա քաղցրացուցանել ընդ մեզ՝ հանին մերժեցին ի ցասմանն իւրեանց զմեզ ի մեծ տէրութենէն։ Մանաւանդ վասն ազանդին քրիստոնէից պատուիրեալ ձեզ, զի հազար և բիւր դէպ է եթէ գտցի ոք, զի նոքա անհնարին լինին խափան դիցն պաշտամանն, զայնպիսին թէ գտցեն և վաղվաղակի ի մէջ ածցեն՝ յարքունուստ պարգևք և պատիւք նոցա լիցին շնոր-

seeking vengeance in battle. And so for all the years that Gregory was in the pit, about thirteen,[1] were continued Trdat's fierce struggle with the Persian king all the days of his life.

133. Then[1] he ordered another edict to be published throughout the lands and provinces of his realm, as follows:

134. "Tiridates, ruler of Greater Armenia, to the lands and provinces, princes and soldiers and peasants, to all, greetings. Be well, as we ourselves are well.[1]

135. "You yourselves know how from the time of our ancestors we were granted many victories and peace by the help of the gods, and how we subjected all races and held them in obedience. But when we were not able to please the gods with worship or favorably incline their will towards us, then in their anger they deprived us of our great authority. So we particularly command you in the matter of the sect of Christians, that if any are found, be they thousands or tens of thousands,[1] because they are an insuperable obstacle to the worship of the gods, that if such people be found and immediately exposed, those who reveal them will be granted gifts and honors from the royal treasury.

հեալ որ զնոսայն յայտնեսցեն։ Ապա թէ ոք չյայտնեսցէ զայնպիսին, կամ թագուսցէ, և գտցի՝ այսպիսին ընդ մահապարտս համարեալ լիցի, և ի հրապարակ արքունի եկեալ մեռցի, և տուն նորա յարքունիս երթիցէ։

136 «Արդ՝ զոր օրինակ ես ոչ խնայեցի յիմ վաստակաւոր Գրիգորիոս, յիմ սիրելին, որ վասն դորին իսկ իրաց չարաչար և սաստիկ տանջանօք տանջեցի, և յետ այնորիկ ետու զնա ընկենուլ ի խոր վիրապն յանհնարին, զի անդէն իսկ միանգամայն օձից լիցի կերակուր. զի և ոչ զմեծ վաստակն նորա համարեցայ ինչ՝ առ սիրով և առ ահիւ դիցն, զի և ձեզ ահ լիցի այս և երկիւղ ի մահուանէն. այլ զի կեցջիք ընդ հովանեաւ դիցն և ի մէնջ բարիս մարթասջիք գտանել։ Ողջ լերուք, և մեք մեզէն ողջ եմք»։

137 Եւ եղև ընդ ժամանակսն ընդ այնոսիկ խնդրեաց իւր կին կայսրն Դիոկղետիանոս. և այնուհետև ընդ ամենայն կողմանս տէրութեան իւրոյ արձակեալք շրջէին պատկերագործք նմանահանք ճշգրտագործք. դեղատախտակ պայծառակշիռ հասակաչափ զգեղ երեսացն և զմրազարդ յօնիցն ի տախտակսն համանմանս դեղովքն պաճուճէին, զի յայտ յանդիման ցուցցեն առաջի ակնահաճոյ կամաց թագաւորին։

138 Յայնմ ժամանակի եկեալ գտանէին ի քաղաքին Հռոմայեցւոց արգելավանս մի կուսա-

But if anyone does not reveal such people but hides them and he be discovered, then let such a one be accounted among those condemned to death, and after being brought to the royal tribunal may he die and his house be confiscated to the court.[2]

136. "Similarly, I did not spare my deserving Gregory, my friend, who for this same cause I tortured with cruel and severe torments, and then had him thrown into the incredibly deep pit that he might be food for the snakes there; for I accounted as nothing his merits in my love and fear of the gods, that you too might have this fear and dread of death. So may you live under the protection of the gods and from us find blessings. Be well, and we ourselves are well."

[Chapter 5. The Martyrdom of Rhipsimē, Gaianē and their companions

*A. Diocletian seeks a wife; prayer of the nuns*]

137. It happened in those times that the emperor Diocletian sought a wife. Then were sent out and circulated throughout his whole empire painters who could produce a true likeness. Rendering naturally on tablets the beauty of the face and the mascaraed eyebrows, with faithful colors they made accurate pictures to show before the king and please his eye.[1]

138. Then they came and found in the city of Rome a convent of nuns,

նաց՝ միանձնական լեռնական, ընդակերս, զգաստացեալս, պարկեշտականս, սրբամատոյց կանայս քրիստոսական հաւատոց, որ զցայգ և զցերեկ և յամենայն ժամանակի փառաւորութեամբ և օրհնութեամբ զկատարեալ աղօթսն իւրեանց առ Աստուած առաքել ի բարձունս արժանի լինէին։ Որոյ անուն էր գլխաւորին Գայիանէ, և սան նորին՝ ի դստերաց ուրումն յաստուածապաշտ և ի թագակալ տոհմէ, զի անուն էր նորա Հռիփսիմէ։

139 Եւ իբրև եկին հասին՝ բռնութեամբ մտեալ ի սուրբ կայեանս առաքինեացն, տեսեալ զպարկեշտագեղն Հռիփսիմէ, զարմացեալ սխրացեալ ընդ սքանչելատեսիկն տեսիլ՝ ի նկարապաճոյճ ի տախտակն յօրինէին, և առ թագաւորն հասուցանէին։

140 Եւ իբրև ետես թագաւորն զգեղապանծ վայելչութիւն պատկերակերպ նկարագրին Հռիփսիմեայ, մոլեգնական ցանկութեամբ տոփողաց զեղխեալ, զի անկարգ ցանկութիւն յիմարութեանն մոլութեան ստիպէր, ժամ տուեալ ուրախութեան հարսանեաց՝ ճեպով տագնապաւ փութայր զուրախութիւնս հարսանեացն կատարել։ Յայնմ ժամանակի տագնապափոյթ ստիպով դեսպանս արձակեալ, պատուիրակս հանեալ ընդ աշխարհս ամենայն, զի ամենեքեան օժտաբեր ընծայատար լիցին մեծի հարսանեացն, և բա-

living solitary hermetic lives, eating vegetables, sober, modest, and pure women of the Christian faith, who day and night and the whole time by praising and blessing were worthy[1] to raise to God in the heights their perfect prayers. Their abbess was called Gaianē, and her protégée, who was one of the daughters of a pious man and of royal lineage, was called Rhipsimē.[2]

139. When they arrived, they entered by force into the holy dwelling-place of these virtuous women; and seeing the modest beauty of Rhipsimē they were amazed and charmed at her wonderful appearance. They painted her likeness on their tablets and sent it to the emperor.

140. And when the emperor saw the graceful beauty of Rhipsimē's portrait, he went mad with licentious desire.[1] The unbridled passion of his folly increased, and he set a time for the marriage, anxiously anticipating the wedding celebration. Then he urged envoys and messengers to be sent throughout the whole empire, so that everyone might bring gifts and presents to the grand wedding,

գում ուրախութեամբ գալ կատարել առ հաստաբակ ամենեցուն զօրէնս արքայական փեսային՝ ըստ օրինացն թագաւորաց։

141 Իսկ իբրև տեսին առաքինիքն զգազտաձիգ նեռս թշնամւոյն, որ ի ծածուկն սովոր էր ձգել ի սուրբսն քրիստոսաէրսն, աման չարի գտեալ զթագաւորն. որպէս ի դրախտի անդ զօձն անդրուվար արարեալ, առ ի պատուիրանն մոռանալոյ, մտեալ յանզգամ յունկն կնոջն առաջնոյ. սոյնպէս և աստ զթագաւորն անօրէն իբրև զվահանակ երեսաց գտեալ՝ նովաւ մարտուցեալ ընդ աստուածաշէն եկեղեցիս։

142 Իսկ զթագաւորն հպարտացուցեալ ամբարհաւաճեցուցանէր որոգայթադիր թշնամին՝ ի գրգռել յարուցանել հալածանս ի վերայ եկեղեցեաց Աստուծոյ, խելացնորեցուցեալ զնա առ ի տալ պագանել երկիր ուրուականաց մեռելոտւոց, ոսկեղէն և արծաթեղէն, փայտեղէն և քարեղէն պղնձագործ պատկերաց դիցն սնոտեաց, և պղծութեանն պաշտաման։ Ուս եղեալ համբառնայր հարկանել ընդ վիմին հաստատնոյ, ընդ հաւատոցն եկեղեցւոյ. վիմին ինչ ոչ սոնանել կարացեալ՝ ինքն առ վիմին խորտակեցաւ։ Սակայն յամբարհաւաճութիւն մոլեգնութեանն վրստահացեալ՝ բազում և անչափ էր այն, որ ի նմանէ անցանէր ընդ եկեղեցիս Աստուծոյ։

143 Իսկ երանելին պարկեշտասէրն Գա-

and that all might come and joyfully celebrate the emperor's marriage according to royal custom.

141. But when the pious women saw the hidden arrows of the enemy [cf. Eph. 6.6], who is accustomed to shoot secretly at the saints who love Christ, they found that the emperor (had become) a vessel of evil [cf. Jer. 51.34], and that just as in the garden he had used the snake as a vehicle for causing the forgetting of the commandment, entering into the foolish ear of the first woman [cf. Gen. 3], so here too he had used the lawless emperor as a mask[1] through which he could fight with the church built by God.

142. The beguiling enemy aroused the king's vanity and arrogance so that he stirred up persecutions against the churches of God; he maddened him so that he worshipped futile corpses[1] [cf. Jer. 16.18], images of vain gods of gold and silver, wood and stone, and their impure cult. He was emboldened to attack the firm rock, the faith of the church [cf. Matt. 16.18]. But unable to harm the rock he was himself broken against the rock. Nonetheless, trusting in the arrogance of his folly, he was the cause of very great harm to the churches of God.

143. But the blessed and chaste Gaianē,

յիմնէ, սրբասնելովն Հռիփսիմեաւ հանդերձ և այլ ընկերօքն իւրեանց, յիշեալ զուխտն սրբութեան, զօրինաւոր կրօնիցն զգաստութեան սրբութիւնն յոր մտեալ էին՝ ողբային յանձինս իւրեանց վասն նկարագրոյց հրամանին, առ ի նկատել զպատկերս նոցա պիղծ և անօրէն թագաւորին. ճգնութեամբ մատուցեալ յաղօթս՝ խնդրել ի բազումողորմ Տեառնէն օգնականութիւն՝ փրկել զնոսա ի փորձութենէն, որ հասեալ էր ի վերայ նոցա։ Եւ յաղաչելն իւրեանց այսպէս ասէին.

144 «Տէր տերանց, Աստուած աստուծոց, Աստուած յաւիտենական, Աստուած երկնից, Աստուած անճառ լուսոյ, որ հաստատեցեր զամենայն բանիւ քով. որ արարեր զերկինս և զերկիր և զամենայն զարդ նոցա. որ ստեղծեր զմարդն հող յերկրէ և իմաստուն կացուցեր և բազմացուցեր զնա ի վերայ երկրի, և օգնական եղեր նոցա ի դարս իւրաքանչիւր՝ որ յուսացան ի քեզ։

145 «Արդ՝ օգնեա՛ և մեզ, Տէր, ի պատերազմիս որ նեղէս զմեզ, զի յաղթեսցուք որոգայթից նենգութեանց սատանայի, և անուն քո, Տէր, փառաւոր լիցի, և եղջիւր եկեղեցւոյ քոյ բարձրացեալ լիցի. զի և մեք արժանի լիցուք հասանել յօթեվանս արքայութեան պատուիրանապահաց քոց։ Եւ մի՛ լիցի պակասութիւն ձի-

with the saintly Rhipsimē and their other companions, remembered the covenant of holiness, the religious rule [cf. II Macc. 4.11; 6.23] of chastity into which they had entered, and lamented amongst themselves [cf. I Macc. 2.7] over the impure and impious emperor's command to have their portraits painted. They fervently prayed, seeking help from the all-merciful Lord, that he would save them from the trial which had come upon them [cf. Mt. 6.13]. And in their supplication they prayed as follows:

144. "Lord of lords, God of gods, God eternal, God of heaven, God of ineffable light, who established everything by your word, who made heaven and earth and all their order, who fashioned man (as) dust from the earth [cf. Gen. 2.1,7] and rendered him wise and made him increase over the earth [cf. Gen. 1.28], and were helpful to those who hoped in you in each one's age [cf. Ex. 15.2],

145. "now help us too, Lord, in this struggle which oppresses us, that we may overcome the traps and deceits of Satan [cf. II Tim. 2.26]. And let your name, Lord, be glorious, and the horn of your church exalted [cf. Lk. 1.69; Psalms, *passim*], that we too may become worthy to attain the dwelling-places of the kingdom of those who keep your commandments [cf. Jn. 14.2]. And let there be no lack of oil

*թոյ ի լապտերաց մերոց. և մի՛ շիջցին ճրագունք հաւատոց ուխտի սրբութեան մերոյ. և մի՛ հասցէ տխրական մթացուցիչն գիշերոյ կորստեան ի վերայ լուսաւոր ճանապարհաց մերոց. և մի՛ գայթակղեսցին ոտք մեր ի լուսազնաց շաւղաց քոց. և մի՛ կուրասցին բիբք տեսանելեաց մերոց ի զուարթարար ճառագայթից ճշմարտութեան քոյ. և մի՛ յափշտակեսցէ թռչունն մահացան զսերմանիսն բուսոյն կենաց, զոր սերմանեաց ի մեզ միածին Որդիդ քո, Տէր մեր Յիսուս Քրիստոս. և մի՛ տարցի զզգաստութիւն սուրբ հօտի քոյ գազանն ապստամբ. և մի՛ յաղթահարեսցէ զգառինս հօտի քոյ գայլն ապականիչ. և մի՛ վարատեսցէ թշնամին ուխտիս մերոյ զոչխարս առաքելական եկեղեցւոյ քոյ սրբոյ։*

146 *«Տէր Աստուած մեր, որ առաքեցեր զմիածին Որդիդ քո, որ եկն և ելից զամենայն տիեզերս հոգւով իմաստութեամբ քով, զի զամենեսեան յԻսրայէլ անուն աստուածատեսս գրեսցէ։ Եւ մեք լուաք զի ասաց, «Թէպէտ և հալածեսցեն զձեզ քաղաքէ ի քաղաք՝ ոչ կարասջիք սպառել զքաղաքս Իսրայէլի, մինչև ի դարձ գալստեան իմոյ այսրէն»։*

147 *«Արդ խնայեա՛, Տէր, յանձինս մեր, որ ապաւինեցաք յանուն քո սուրբ, զի՛ մի՛ խառնակեսցուք ընդ անարգութիւն պղծութեան հեթանոսաց. և մի՛ տար զզգաստութիւն սրբութեան մե-*

for our lamps [cf. Matt. 25.8], nor let the torches of the faith of our oath of holiness be extinguished [cf. Lk. 12.35]. Let not the sad gloom of the night of destruction overshadow our shining paths. Let not our feet stumble from your luminous ways [cf. Ps. 16.5]. Let not the pupils of our eyes be blinded to the bright rays of your truth [cf. II Cor. 4.4]. Let not the bird of death snatch away the seeds of the plant of life which your only-begotten Son, our Lord Jesus Christ, sowed in us [cf. Matt. 13.4]. Let not the rebellious beast carry off the virtue of your holy flock. Let not the corrupting wolf prevail over the lambs of your flock [cf. Ez. 34]. Let not the enemy of our covenant scatter the sheep of your holy apostolic church [cf. Jn. 10.12].

146. "Lord our God, who sent your only-begotten Son, who came and filled the whole world with your Spirit and wisdom in order to inscribe everyone with the name of Israel, 'seers of god.'[1] And we heard him say 'Although they will persecute you from city to city, you will not be able to exhaust the cities of Israel until my return there' [Matt. 10.23].

147. "Now have mercy, Lord, on us who have taken refuge in your holy name. Let us not be joined to the degredation of pagan filthiness. Permit not the chastity of our holiness

րոյ բոզանոց անօրէն շանազգեաց լկտութեան նոցա, և մի՛ զկուսութեան մարգարիտ հաւատոց մերոց՝ ի շաւիղս խոզագնաց ամբարշտութեան նոցա։ Եւ մի՛ շարժեսցէ ուղխ անյագ ջուրց բազմութեանց մոլորահողմն խաբէութեան զբանեղեղն սաստկութեան զհիմունս սուրբ եկեղեցւոյ քոյ, որ բազմապատիկ վիմօքն արդարովք շինեցաւ ի վերայ վիմին հաստատնոյ, որոյ գլուխ անկեանն կատարման եղև Տէր մեր Յիսուս Քրիստոս ի ձեռն մարմնանալոյն, մահուամբ խաչին, հեղմամբ արեանն, յարութեամբն և յերկինս վերանալոյն, նստելովն յաջմէ աստուածութեան քոյ, ուր էրն յառաջ։

148 «Արդ նայեա՛ց, Տէր, յերկնից ի սըրբութենէ քումմէ, զի մի՛ լիցուք մեք իբրև զայն տունն, որ ի վերայ աւազոյն շինեալ էր, զոր դղրդեցին խռովութիւնք նեղութեանց պէսպէս փորձութեանց. այլ հաստատեա՛ զմեզ ճշմարտութեամբ Աւետարանին խաղաղութեան, և առաջնորդեա՛ մեզ ըստ կամաց քոց, և արժանիս արա զմեզ գիշերոյն լուսոյ հարսանեաց. յորում զգիշերն իբրև զտիւ լուսաւոր առնիցես ի ծագել ճառագայթից յերեսաց փառաց քոց, և ապրեցո՛ զմեզ ի ներքոյ թևոց քոց, և մեք հասցուք ի նաւահանգիստ կամաց քոց։ Եւ տո՛ւր մեզ, զի արբցուք զբաժակ նահատակութեան, զի առցուք զփոխարէն պսակն յաւուր արդար դատաստանին

to be a brothel for those obscene dogs; give not the pearl of the virginity of our faith to their impious and swinish ways [cf. Matt. 7.6]. Let not the torrent of the voracious floods of error and deceit [cf. Ps. 17.5] shake the foundations of your holy church, which was built with many true stones on the firm rock [cf. Matt. 7.24; Lk. 6.48], whose chief corner-stone was our Lord Jesus Christ [cf. I Pet. 2.6] through his incarnation and by his death on the cross, the shedding of his blood, his resurrection and ascension into heaven, his sitting on the right hand of your Godhead where he was before.

148. "Now look down, Lord, from heaven from your holiness [cf. Ps. 101.20; Baruch 2.16], lest we become like that house which was built on the sand, and which was toppled by the buffetings of afflictions and various trials [cf. Matt. 7.26]. But confirm us in the truth of the gospel of peace [cf. Eph. 6.15], and lead us according to your will, and make us worthy of the marriage of the evening light, when you will make the evening as bright as the day [cf. Ps. 138.12] at the dawning of the rays from the face of your glory. And preserve us under your wings [cf. Psalms, *passim*], that we may reach the haven of your will [cf. Ps. 106.30]. And give us to drink the cup of martyrdom, that we may receive the crown as reward in the day of the just judgment at the revelation of your glory."

ի յայտնութեան փառաց քոց»։

149 Եւ յետ այսորիկ սուրբն Գայիանէ սանականաւն Հռիփսիմեաւ և պարկեշտաժողով ընկերօքն հանդերձ՝ դէմ եդեալ տարադէմ գնացեալ փախստեայ լինէին, զի զանձինս իւրեանց սրբութեամբ պահեսցեն յայսմիկ հողաթաւալ, մեղսաթաթաւ, մեղանչական, անօրէն ի դիւական խառնից մարդկան. զի առաւելութեան յուսոյն կենդանութեան և լուսոյն յարութեան արժանի լինիցին հասանել, ընդ առաքելական սահմանօքն ապրեալ յանվախճան ի հանդերձեալ դատաստանաց անտի, և յաջակողմն գահուն մտեալ՝ խոստացելոց բարեացն հասանել, անթառամ պսակօքն զարդարեալ՝ ընդ հնգեկան կամարարսն կուսանաց, գործովքն բարութեան լուսաւորեալք ի հանգիստ նորոգական վայելչութեան դրախտին, ընդ աստուածական փեսայրն ի բազմաժողովս արդարոցն, ի բազմականս Աբրահամու անպակաս ուրախութեանցն լինել ժառանգորդ։ Որպէս և Տէրն յԱւետարանի անդ ասաց, եթէ «Որ թողցէ զընակութիւն իւր վասն անուան իմոյ՝ ի միւսանգամ գալստեան իմում զկեանս յաւիտենականս ժառանգեցուցից նմա»։ Իբրև ոչ ի ժամանակեան մահուանէս փախուցեալք, այլ յանհնարին մոլեկան անօրէն ցանկութեանցն ճողոպրեալք։ Իբրև ոչ զի զմարմինս իւրեանց ի տանջանաց երկրակոխաց ի զրպարտութենէս ապրե-

*[B. The nuns flee to Armenia*
*but are discovered;*
*Rhipsimē's prayer]*

149. Then Gaianē and her protégée Rhipsimē and their group of chaste companions decided to flee to a distant land[1] in order to preserve themselves in purity from those swinish, sin-stained, pernicious, impious and devilish men; so that they might become worthy to attain the abundance of the hope of life and the light of resurrection, saved through the apostolic precepts from the everlasting future judgment and gaining a place on the right-hand side [cf. Matt. 25.33]; to attain the promised blessings, adorned with unfading crowns with the five obedient virgins [cf. Matt. 25.2], shining with deeds of virtue in the peace of the renewed splendor of paradise, with the divine bridegroom among the multitudes of the just, to become heirs of unfailing joys at Abraham's banquet.[2] As the Lord in the gospel said: "Who will leave his dwelling for my name's sake, at my coming again I shall make him heir to eternal life" [cf. Matt. 19.29; Mk. 10.29; Lk. 18.29]. Not as fleeing from this temporal death, but escaping from the terrible passion of impious desires; not to save their bodies from earthly torments and calumny,

ցուցեն, այլ զի զոգիսն իւրեանց սրբութեամբ առանց աղտեղութեան պահել մարթասցեն յանօրէն գիճութեան պղծութեան աղտեղութեան խառնից մարդկան անօրէն կրօնից. այլ զի զանձինս իւրեանց բանդից և կապանաց և պատժոց, մահու և անհնարին նեղութեանց վասն անուան Տեառն պատրաստեալ, զի արդարութեան պսակին արժանի լինիցին հասանել։ Վասն այսորիկ թողեալ զերկիր ծննդեան իւրեանց, զինչս և զստացուածս և զմերձաւոր զազգակիցս և զտոհմականս վասն աստուածական հրամանին, զանձինս իւրեանց հրեշտակական զուարթական կարգօք լուսաւորեալ վարուցն քաջութեամբք, զի զԱստուած տեսանել կարասցեն։

150 Յայնմ ժամանակի գային հասանէին յերկիրն Հայոց, յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, զոր և Նորաքաղաքն կոչեն, ի նիստս թագաւորացն Հայոց։ Այնուհետև եկեալ մտանէին ի հնձանայարկս այգեստանւոյն, որ կան շինեալ ի հիւսիսոյ յարևելից կուսէ. և կերակրէին ընչիւք իւրեանց ի վաճառաց քաղաքին. և ոչ ինչ այլ ինչ զոյր թոշակ ընդ նոսա զոր ունէին, բայց մի ոմն ի նոցանէ ունէր արուեստ ապակագործութեան՝ առնել ուլունս ապակեղէնս, և տայ զինս ընդ կերակրոյ աւուրն պարենի ռոճկի։

151 Յայնմ ժամանակի ոչ սակաւ ինչ խռովութիւն լինէր ի մէջ Յունաց աշխարհին. ի

but to be able to preserve their souls in purity without stain from the impious ways of impure and filthy men. Because they had prepared their bodies for prison and and bonds and punishment and death and incredible afflictions for the sake of the Lord's name [cf. Acts 9.16], that they might become worthy to attain the crown of righteousness, therefore they left the land of their birth, their possessions and property and close relations and families for the sake of the divine commandment [cf. Matt. 19.29]; they illumined their souls in angelic form by the virtue of their conduct so that they might be able to see God.

150. Then they arrived in the land of Armenia, in the province of Ayrarat, in the city of Vaḷarshapat, which is also called Nor K'aḷak',[1] the residence of the Armenian kings. Then they entered the vat-stores[2] of the vineyard which were constructed to the North-East. And they lived from what they bought from shops in the city. And they had no other source of income save that one of them possessed the skill of glassmaking and could make glass pearls,[3] which paid for their daily sustenance.

151. Meanwhile there was no little turmoil in the land of the Greeks.

կողմանս կողմանս յուղախնդիրք ելանէին, դեսպանս արձակէին, թերևս ուրեք գտանել կարասցեն։ Յայնմ ժամանակի գայր հասանէր դեսպան առ Տրդատ արքայ Հայոց մեծաց, և յանդիման լինէր թագաւորին ի Վաղարշապատ քաղաքի։ Եւ իբրև մատոյց զհրովարտակն՝ առ ի ձեռանէ նորա խնդալով։ Եւ էր պատճէն հրովարտակին օրինակ զայս.

152 «Ինքնակալ կայսր Դիոկղետիանոս, առ սիրելի եղբայր աթոռակից մեր Տրդատ ողջոյն։

153 «Գիտութիւն լիցի եղբայրութեանդ քում նիզակակցի մերում վասն չարեացս, որ անցանենն ընդ մեզ հանապազ ի մոլար աղանդէս քրիստոնէից. զի յամենայնի դսրովեալ լինի տէրութիւնս մեր յուխտէ նոցա, և արհամարհեալ լինի արքայութիւնս մեր ի նոցանէ. և ինչ համեստութիւն ոչ գոյ ի նոսա։ Զի ինքեանք զմեռեալ ոմն զխաչեալ պաշտեն, և փայտի երկիր պագանեն, և զոսկերս սպանելոցն պաշտեն, որ զիւրեանց մահն, որ վասն Աստուծոյն իւրեանց է՝ փառս և պատիւս համարին։ Եւ ի մերոց արդար օրինացս դատապարտեալ լինին. վասն զի և զմեր զնախնիսն, զառաջին հարսն զթագաւորսն, դառնացուցեալս ձանձրացուցին. զի մեր սուրքս բթեցան, և նոքա ոչ զարհուրեցան ի մեռանելոյ։ Զի ինքեանք զհետ Հրէի ուրումն խաչելոյ մոլորեալ են, և զթագաւորս անպատուել ուսու-

Searchers went out and messengers were sent to every region, to see if they could find them anywhere. Then an emissary came to Trdat, ruler of Greater Armenia, and met the king in the city of Valarshapat. When he presented the edict,[1] he received it from his hand with joy. And the text of the edict ran as follows:

152. "The emperor Caesar Diocletian to our beloved brother and colleague Trdat, greeting.[1]

153. "Let your fraternity, our comrade in arms, know of the evils that continually befall us from this erring sect of the Christians:[1] in everything our majesty is derided by their religion and our rule is despised by them, and there is no respect in them. For they worship some dead and crucified man, and adore a cross, and worship the bones of those put to death, and they consider their own death on behalf of their God to be glory and honor. They have been condemned by our just laws because they embittered and angered our forefathers, our fathers and predecessors. Our swords have been blunted and they have not feared death. They have gone astray after some crucified Jew, and they teach dishonor for kings

ցանեն, և զլխովին իսկ զպատկերս դիցն զաստուածոց անարգել ուսուցանենն։

154 «Նա և զլուսաւորացդ զօրութիւն, զարեգական և զլուսնի աստեղօքդ հանդերձ՝ առ ոչինչ համարին, նա և արարած առնեն այնր խաչելոյ։ Եւ զլխովին զպատկերս դիցն աստուածոցն անարգել ուսուցանեն. և զաշխարհս ամենայն փոխեցին ի պաշտամանէ դիցն. մինչև զի և զկանայս անգամ յարանց և զարս ի կանանց կենդանւոյն մեկնեալս հեռացուցանեն։ Թէպէտ և ազգի ազգի պատուհաս տանջանաց ի վերայ եդաք՝ առաւել ևս առչորեալ յորդագոյնս տարածեցաւ աղանդ նոցա։ Թէպէտ և բիւրապատիկ ինչ արհաւիրս սաստից արկաք ի վերայ նոցա՝ ի հեղումն արեան նոցա առաւել ևս բղխեաց յորդեաց աղանդ նոցա։

155 «Դէպ եղև տեսանել ինձ յաղանդոյ ուսման նոցա օրիորդ մի կոյս և գեղեցիկ, և կամեցայ առնուլ զնա ինձ կնութեան. սակայն և զայն իշխեցին խորամանգել յինէն։ Եւ ոչ իբրև ի թագաւոր ցանկութեամբ փափաքեցին յիս. և ոչ ի սաստից սպառնալեաց իմոց երկեան ինչ նոքա. այլ առաւել ևս վասն աղանդոյն իւրեանց՝ աղտեղի և պիղծ և գարշ համարեցան զիս, և սնուցիչ նորին դայեկաւն ի կողմանս ձերոյ տէրութեանդ փախուցեալս յուղարկեցին։

156 «Արդ՝ փոյթ լիցի քեզ, եղբայր մեր,

and complete disrespect for the images of the divine gods.

154. "Similarly they regard as naught the power of the luminaries, the sun, moon and stars, and hold them to be creatures of that crucified one. And they teach complete disrespect for the images of the divine gods,[1] and dissuade the whole world from the worship of the gods. They even separate during their lifetime[2] women from their husbands and men from their wives. Although we have inflicted on them all kinds of cruel punishments, their sect has become inflamed all the more and has spread only wider. Although we have made countless terrible threats against them, at the shedding of their blood their sect has even more flourished and spread.

155. "I chanced to see a young and beautiful girl among the following of their sect, and I wished to take her to wife. But of this too they were able to cheat me. Not only were they not happy with me as king, they did not even fear my severe threats. But because of their sect they regarded me even more as stained, impure and abominable, and with their governess they have fled to the regions of your kingdom.

156. "So, my brother, be quick

զի ուր և իցեն զկողմամբքդ զայդոքիւք՝ զհետս նոցա գտանել մարթասցես. և որ ընդ նմայն իցեն դայեկաւն հանդերձ՝ վրիժուց մահու արժանի արասցես. և զհրապուրեալն զչքնաղագեղն ինձ ի սոյն այսրէն յուղարկեսցես. ապա թէ հաճոյ թուեսցի քեզ տեսիլ գեղոյ նորա՝ այդրէն առ քեզ պահեսցես, զի ոչ երբէք գտաւ նման նմա ի մէջ Յունաց աշխարհիս։ Ողջ լեր դիցն պաշտամամբ ամենայն պատուով»։

157 Եւ եղև իբրև ընթերցան զթուղթն հրամանաց հրովարտակին այնորիկ՝ հրաման տայր թագաւորն մեծաւ սաստկութեամբ պատուիրանաւ, զի զամենայն տեղիս իշխանութեան իւրոյ քննայոյզ խուզիւ փութով խնդրեսցեն։ Վաղվաղակի դեսպանս արձակէր ընդ կողմանս կողմանս, զի ուր և գտցեն՝ ի մէջ ածցեն վաղվաղակի. և որ գտցէ զնոսա՝ մեծամեծ պարգևս հատուցանել խոստանայր։

158 Մինչդեռ յայն յոյզ քննութեան էին յաշխարհին սահմանացն Հայոց՝ սուրբ վկայքն այնոքիկ եկեալ ղօղեալ էին յարքայական կայանին, ի նմին թագաւորականին ի Վաղարշապատ քաղաքի։ Եւ յետ սակաւ ինչ աւուրցն այնոցիկ վաղվաղակի ի մէջ եկեալ խուզիւք իրքն յայտնէին։

159 Այլ ոչ իսկ էր պարտ թագչել ճշմարտութեանն և վկայիցն առաքինութեան, և ոչ լուսոյ ճրագի ընդ գրուանաւ ծածկել, և ոչ ի ներքոյ

to find their traces, wherever they may be in your parts. And take vengeance of death on whoever may be with her and their governess. And send back to me that beautiful charmer. But if her beauty pleases you, then keep her for yourself, for no one like her has ever been found in Greek lands. Be well by the worship[1] of the gods with all honor."[2]

157. When the letter with this edict was read, the king gave a most strict command that they should quickly search every place in his realm with care and diligence. Immediately he sent messengers through every region, that wherever they might find them they should bring them immediately. And he promised to reward their finder with magnificent gifts.

158. While this careful search was being conducted within the borders of Armenia, these holy martyrs had hidden themselves in the capital, in the same royal city of Vaļarshapat. And after a few days of searching their whereabouts were discovered.

159. It was not right for the truth and virtue of the martyrs to remain hidden, nor for the light of a torch to be hidden under a bushel or under

ստուերաց կաթեղրացն աներևոյթ լինել. այլ ի վե-
րայ աշտանակացն ոսկւոյ զարդարելոց, և ոսկւովք
ճրագարանօք զիւղն պայծառութեան անուշու-
թեան, զարդարութեան հաւատոցն՝ վառեալ զլոյսն
համապայծառ. որպէս և ինքեանք իսկ յառաջին
աղօթս իւրեանց աղաչէին. որպէս և Տէրն իսկ ասէր
առ իւր սիրելիսն, թէ «Տեսցեն զգործս ձեր բա-
րիս, և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է»։

160 Տեսանե՞ս զի վասն գործոցն բարու-
թեան ճշմարիտ Որդին Աստուծոյ ոչ գարշի տալ
զիւր ժառանգութիւն իւրոց սիրելեացն ծառա-
յիցն։ Որ ինքն բնութեամբ Որդի է՝ անվեհեր
մատուցանէ զիւր պատուիրանապահսն յիւր բնու-
թիւնն. բայց միայն թէ ոք իցէ, որ պահիցէ զբանս
նորա՝ իբրև զմարգարիտ պատուական զտեալ
խնդութեամբ, գնեալ և զգուշացեալ լինի նմա՝
առեալ զնշան պատուին, զպսակն թագաւորու-
թեան և յարքայականն մատուցանի։ Որպէս պա-
տուականութիւն լուսոյս այսորիկ երևեալ առաջի
հեթանոսաց Հայաստան աշխարհիս ակամայ,
իսկ փառաւորութիւնն առ աստուածութիւնն
հնչիւք լցին զաւիեզերս։

161 Արդ՝ զտեալ լինէին նոքա ի հնձանս
շինուածոցն։ Քանզի իբրև եկին հասին հրամանք
հրովարտակացն ի մեծ թագաւորէն Յունաց առ
Տրդատ արքայն Հայոց Մեծաց՝ ոչ սակաւ խնչ
խռովութիւն եղև ի մէջ աշխարհին Հայոց. զի

the shadow of a chair; but on candlesticks ornamented in gold and with golden torches one should (set) the oil[1] of sweet plenty, of the righteous faith, and kindle the glorious light [cf. Matt. 5.15; Mk. 4.21; Lk. 8.16, 11.33]. As they too had asked in their earlier prayer, and as the Lord said to his beloved: "They will see your good works and will glorify your Father in heaven" [Matt. 5.16].

160. Do you see that for the sake of good deeds the true Son of God does not disdain to give his inheritance to his own beloved servants [cf. Eph. 1.18; Heb. 9.15]. He who is by nature Son,[1] freely brings those who keep his commandments to share his own nature.[2] And if there be anyone who keeps his words, when he finds him he joyfully buys and treasures him like a precious pearl [cf. Matt. 13.46]; then he receives the sign of honor, the royal crown [cf. II Tim. 4.8], and is exalted to royal (rank). Just as the honor of that light shone out before the heathen of this land of Armenia, despite their will, so their glory filled the universe with their divine fame.

161. So they were found in the vat-stores. For when the order of the edict from the great emperor of the Greeks came to Trdat, king of Greater Armenia, there was no little turmoil in the land of Armenia.

պահէին զամենայն անցս ճանապարհաց պողոտայիցն և զամենայն գաւառացն. ի կողմանս կողմանս յուզախնդիրք ելեալ քննէին։ Իսկ ուրումն տեսեալ՝ պատմեաց զնոցանէ։

162 Իսկ իբրև իրքն հռչակեցան զնոցանէն՝ ապա աւուրս երկուս ապարափակ արարեալ՝ տուեալ պահել զնոսա անդէն ուր գտինն լեգէոն հետևակ զօրուն. ապա յետ երկուց աւուրցն համբաւն հռչակեալ պարկեշտութեան զանազան գեղեցկութեանն Հռիփսիմեայ ի մէջ բազմամբոխ հրապարակացն լինէր. ամենայն այր առ այր և մարդ առ մարդ զարմացումն յաճախէր։

163 Իսկ ի տես գեղոյ նորա կուտեալ յեղեալ զեղեալ խուռն կաճառացն կուտակէր. նա և նախարարք և մեծամեծք աւագանւոյն ընթացեալք ի տեսանել՝ զմիմիամբք ելանէին։ Նա և ազատակոյտն, խառնաճաղանճ ամբոխին հանդերձ, զմիմեամբք դիզանէին ի միմեանց վերայ, առ պակշոտ յիմարութեան ցոփութեան բարոյիցն, այլանդակ մտացն զեղխութեան գիճութեանն հեթանոսաբար սովորութեանցն։

164 Իսկ երանելիքն իբրև գիտացին զանմիտ և զշղուաբարոյ մարդկանն գյոռութիւն, կականաբարձ արտասուալից, զձեռս լի աղօթիւք յերկինս համբառնայրին, խնդրել զփրկութիւն յամենազօր յամենակալ Տեառնէն, որ յառաջին նուագին ապրեցոյց զնոսա յանօրէն պղծութենէն չա-

They guarded all the roads and paths in all the provinces. Scouts went out to search all parts. And when someone saw them, he informed about them.

162. When their whereabouts became known, then for two days he had a legion of infantry keep armed guard over the spot where they had been found. After those two[1] days the report of the chastity and wonderful[2] beauty of Rhipsimē became known to the public. And astonishment multiplied as word passed from man to man.

163. To see her beauty a great and confused crowd gathered—princes and nobles rushed to view her, competing with each other; freemen and common people together jostled one another in the passion of their dissolute concupiscence and the debauched, polluted and heathen habits of their deranged minds.[1]

164. But the blessed ones, when they realized the evil intentions of these senseless and depraved men, with loud lamentations and tears they raised their hands to heaven in prayer, seeking salvation from the almighty omnipotent Lord, who had rescued them the previous time from the impious, impure,

րութեան զազրութեան հեթանոսացն. զի նոյն տացէ նոցա զմարտին յաղթութիւն, զհաւատոցն լուսաւորութիւն. և զերեսս իւրեանց պատեալ՝ անկեալ զնէին յերկիր, յամօթոյ լկտեացն տեսողաց, որ ժողովեալն էին ի տեսանել։

165 Եւ ապա յետ այսորիկ զարմացուցեալ զթագաւորն բազում տեսողացն, որ մտերիմքն էին որ եկեալն էին ի տեսիլ գեղոյ նորա, և պատմեալ առաջի թագաւորին։ Իսկ ի միւսում աւուրն ընդ այգն ընդ առաւօտն, և ես վաղագոյն, հրաման ելեալ ի թագաւորէ անտի, զի զերանելին Հռիփսիմէ տանել յարքունիս, և զսուրբն Գայիանէ անդէն պահել պարկեշտաժողով ընկերօքն հանդերձ։

166 Եւ անդէն յարքունուստ փաղփաղակի ոսկիապատ գահաւորակս սպասաւորօք հանդերձ հասուցանէին առ դուրս հնձանին, ուր էին վանք նոցա արտաքոյ քաղաքին։ Նա և հանդերձս ագնիւս գեղեցիկս փափուկս պայծառս, և զարդարանս երևելիս մատուցանէին նմա յարքունուստ, զի զարդարեսցի, և շքով և պատուով մտցէ ի քաղաքն և յանդիման լիցի թագաւորին. քանզի չև էր տեսեալ զնա՝ խորհեցաւ կին առնել զնա, վասն այնորիկ որ պատմեցինն զնմանէ վասն վայելչութեան գեղոյ նորա։

167 Արդ՝ իբրև ետես սուրբն Գայիանէ՝ խօսել սկսաւ առ սանն իւր և ասէ այսպէս. «Յիշեա՛, որդեակ իմ, զի թողեր լքեր զմեծապատիւ

wicked and licentious heathens; (they begged) that he would give them victory and glorify their faith. And covering their faces, they fell to the ground in shame at the impudent sightseers who had gathered to stare.

165. After this, many of those who were friends of the king and had come out to see her beauty, informed the king and made him marvel. So on the next day, very early in the morning, a command was issued by the king that blessed Rhipsimē should be brought to court, while saint Gaianē and the group of her chaste companions should be kept where they were.

166. Then straightway they sent a golden litter with attendants from the palace to the door of the vat-store, where they had been dwelling outside the city. They also brought for her from the palace honorable raiment, beautiful, soft and shining, and fine ornaments for her to adorn herself, so that she might enter the city and meet the king in splendor and honor. For he had not yet seen her, but planned to take her to wife because of what they had told him about her wonderful beauty.

167. When saint Gaianē saw this she began to speak to her protégée as follows: "Remember, my child, that you have left and abandoned the honor

*շքեղաշուք ոսկիակուռ զաթոռն քո հայրենի, զծիրանեաց թագաւորութեանն, և ցանկացար անանց ճառագայթարձակ լուսոյ թագաւորութեանն Քրիստոսի, որ է արարիչ և կեցուցիչ և նորոգիչ, և խոստացեալ պահէ զանպատում բարիսն իւրոցն յուսացելոց։ Եւ դու, որդեակ, անարգեցեր զանցաւորս քոյոյ բնութեանն զծիրանիսն. արդ՝ զիա՞րդ արդեօք տացես դու զզգաստութիւն սրբութեանդ քոյ կերակուր շանց յայսմիկ ի բարբարոս յաշխարհի։ Բա՛ւ քեզ, որդեակ, եթէ լինիցի այդ այդպէս. այլ ընկալցի զմեզ քև հանդերձ այն՝ որ առաջնորդեաց մեզ ի մանկութենէ մերմէ մինչև յօրս յայս և ի ժամս յայս, յորում այժմիկ հասեալ կամք»։*

168 *Արդ՝ իբրև ետես սուրբն Հռիփսիմէ զայն ամենայն ամբոխս չարաց, և զոր լուաւն ի դայեկէն իւրմէ՝ վառեցաւ իբրև զինու Հոգւոյն զօրութեամբ Տեառն իւրոյ. զի զգեցեալ էր զհաւատս մանկութեան տիոցն իբրև սպառազէն զրահիւք. ճչեաց մեծաձայն ուժով և տարածեաց զբազուկս իւր ի նմանութիւն խաչին, և սկսաւ ասել մեծաձայն այսպէս.*

169 *«Տէր Աստուած ամենակալ, որ հաստատեցեր զարարածս քո ի ձեռն Որդւոյ քոյ միածնի և սիրելւոյ, և կազմեցեր յօրինուածս երևելի և աներևոյթ արարածոց ի ձեռն Հոգւոյդ սրբոյ. դու ես որ յոչնչէ զամենայն յէութիւն*

and splendor of the golden throne of your fathers and the royal purple,[1] and have yearned for the unfading rays of the light of the kingdom of Christ, who is creator, vivifier and renewer, and keeps the promised, ineffable blessings for those who hope in him. And you, my child, have despised the transitory purple of your own nature. So why then will you give your holy chastity as food to dogs in this barbarian land [cf. Matt. 7.6] ? Heaven forbid, my child, that this be so. But let us, with you, be received by him who has led us from our youth until today and to this very hour in which we now find ourselves."

168. Now when saint Rhipsimē saw all this crowd of evil men and heard her governess, she was fortified as with the arms of the Spirit [cf. Rom. 13.12] through the power of her Lord. For she had put on faith from the years of her youth like an armored cuirass [cf. I Thess. 5.8]. She cried out with a loud voice and stretched out her arms in the form of a cross.[1] And in a loud voice she began to speak as follows:

169. "Lord God almighty, who fashioned your creatures through your only-begotten and beloved Son, and formed the order of the visible and invisible creatures through your holy Spirit; who brought everything from nothing into being [cf. II Macc. 7.28; Rom. 4.17];

յօրինեցեր, և քոյով հրամանաւ վարին ամենայն զօրութիւնք երևելիք և աներևոյթք, որ են յեր-կինս և յերկրի, ի ծովու և ի ցամաքի։ Քանզի դու ես, տէր, որ ետուր յողող ջուրց զանօրէն պղծալից մարդիկ ութերորդ դարուն, և փրկե-ցեր զսիրելին քո զՆոյ, որ պահեաց զհրաման բանի քոյ, և ապրեցուցեր խաչանման փայտիւն ի ջուրցն հեղեղէ։ Որ յայնժամ օրինակաւ խա-չին արարեր զփրկութիւն՝ և այժմ արա ճշմար-տութեամբ խաչիդ քոյ, յոր ելեր և հեղեր զա-րիւն քո ի բժշկութիւն ցաւոց մերոց։

170 «Որ պահեցեր զԱբրահամ ի մէջ ամբա-րիշտ ազգացն Քանանացւոց. որ յամօթոյ Նա-խատանաց պղծութենէ մահու ապրեցուցեր զա-ղախին քո զՍառա. որ զԹացար յԻսահակ ծա-ռայ քո, և պահեցեր զաղախին քո զՌեբեկկա յանօրէն Փղշտացւոց անտի, մի թողուր զմեզ ի ձեռաց վասն սրբոյ անուանդ քոյ. որ ուսուցեր, վարդապետեցեր և ետուր զբանս քո ի բերան մեր, զի այնու ապրել մարթասցուք յորոգայ-թից թշնամւոյն, և ասես. «Անուն իմ ի վերայ ձեր կոչեցեալ է», և «Դուք տաճար էք աստուա-ծութեան իմոյ». և ասես, եթէ «Զանուն իմ սուրբ առնիջիք ի սիրտս ձեր». և եդեր բանս ի մտի՝ խնդրել ի քէն և ասել, «Սուրբ եղիցի ա-նուն քո» ի վերայ մեր՝ զոր խնդրեմք ի քէն. և ահա ժողովեալք չարք բազումք պղծել զանուն

and at your command move all visible and invisible powers which are in heaven and earth, in the sea and on dry land.[1] For you it is, Lord, who drowned in the flooding waters the impious and impure men of the eighth generation,[2] and saved your beloved Noah who had kept the command of your word [cf. Gen. 6.22ff.], and rescued him from the flood through the cross-like wood.[3] You who then worked salvation through the symbol of the cross, now work (the same) through the true cross, on which you hung and shed your blood for the healing of our woes.

170. "You who saved Abraham in the midst of the impious races of Canaanites and who saved your handmaid Sarah from the stain of shameful outrage and death [cf. Gen. 20]; who had mercy on your servant Isaac and rescued your handmaid Rebecca from the impious Philistines [cf. Gen. 26.7]; do not deprive us of your support for the sake of your holy name. You taught, instructed and gave your words to our mouths, that we might thereby be saved from the snares of the enemy. And you said: 'My name has been called over you' [Gen. 48.16; cf. Acts 15.17] and: 'You are the temple of my divinity' [cf. I Cor. 3.16; 6.19]. And you said: 'Make my name holy in your hearts' [cf. Matt. 6.9; Lk. 1.49, 11.2; I Pet. 3.15]. And you taught us to ask you and say: 'Holy be your name' [Matt. 6.9; Lk. 11.2] over us. This[1] we ask from you. Behold many evil men have gathered to sully

սուրբ քո որ ի վերայ մեր է, և զտաճար անուանդ քոյ. զի թէպէտ և մեք տկար և անարժան եմք՝ սակայն դու, տէր, պահեա́ զանձինս մեր յանարժան խայտառականացս։

171 «Մարդասէր և քաղցր, որ արկեր զմեզ յայս փորձութիւն, տո́ւր մեզ յաղթել քոյով զօրութեամբդ, զի քո է յաղթութիւն, և յաղթեսցէ քո անունդ՝ պահել զմեզ յուսով զգաստութեամբ. զի այսու մտցուք ի թիւ վիճակաց արդարոց քոց. զի և առցուք զվարձս վաստակոց, զոր տացես այնոցիկ, և հատուցես իւրաքանչիւր այնոցիկ, որ կացեալ իցեն յահի քում և պահեալ իցեն զհրամանս քո։

172 «Որ ապրեցուցեր զՆոյ ի ջուրցն հեղեղէ՝ ապրեցո́ և զմեզ յանօրէնութեանցս հեղեղէ որ շուրջ պատեալ է զմեօք։ Զի եթէ զգազանս և զանասունս ապրեցուցեր ի տապանին, ո՜րչափ ևս խնայեսցես ի քո պատկերս, որ զքեզ փառաւորեմք։ Իսկ եթէ ի սողունս և ի թռչունս խնայեցեր, ո՜րչափ ևս խնայեսցես ի մեզ, զոր անուանեցեր տաճար կամաց քոց»։

173 Արդ՝ իբրև այս այսպէս եղև՝ ժողով ամբոխին ի վերայ կուտէր բազմութիւն մարդկան, և էին բազում սպասաւորք արքունի, որ եկեալ էին զնմանէն՝ տանել յարքունիս, և նախարարքն և մեծամեծք աւագանւոյն, որ եկեալ էին շքադիրք՝ պատիւ առնել նմա և երթալ ընդ

your holy name which is upon us, and the temple of your name. For although we are weak and unworthy, yet do you, Lord, save our souls from dishonorable scandal.

171. "Benevolent and sweet one, who cast us into this trial, grant us victory through your power; for yours is victory [cf. I Chr. 29.11] and your name will conquer; keep us in hope and chastity, that thereby we may enter the allotted number[1] of your just ones [cf. Col. 1.12], that we may receive the rewards of our labors which you will give in compensation to each one of those who stand in your fear and keep your commandments [cf. I Cor. 3.8].

172. "You who saved Noah from the watery flood, save us from the flood of impieties that surrounds us. For if you saved the beasts and animals in the ark, how much the more will you care for your images[1] that glorify you? While if you cared for the reptiles and birds, how much more will you care for us, whom you have called the temple of your will?"[2]

173. After this the press of the crowd increased, there being many royal servants who had come to bring her to court, and princes and great magnates who had come to pay homage and honor her and escort

նմա յարքունիս. զի տարցին զնա կնութեան թագաւորին Տրդատայ և Հայոց տիկնութեան։

174 Իսկ նոքա արտասուագոչ ողորմ ողորմ զձեռս համբարձեալ յերկինս՝ խնդրէին ի կամարար Տեառնէն՝ ապրեցուցանել զնոսա յանօրէն յանարժան հարսանեացն պղծութենէն։ Զգոչիւն բարձեալ լալով մեծաձայն ճչէին և ասէին. «Քաւ լիցի մեզ, թէ պատրեսցեն զմեզ մեծութիւնք, կամ խաղտեսցեն զմեզ փափկութիւնք, կամ հրապուրեսցեն զմեզ թագաւորութիւնք, կամ նեղեսցեն զմեզ հալածանք, կամ վտանգեսցեն զմեզ տանջանք հարուածոց, թէպէտ և բիւր ազգի ազգի տանջիցէք զմեզ. կամ երկիցո՞ւք մեք արդեօք յահագին մահուանէն, զոր ածելոց էք դուք ի վերայ մեր։ Քաւ լիցի մեզ, թէ փոխանակեսցուք զանցաւոր կեանս ընդ յաւիտենական կենացն որ ոչն անցանէ. քաւ լիցի մեզ, թէ ուրասցուք զէն Աստուած զամենահաստիչն, որոյ տէրութիւնն յէութենէ հաստատեալ՝ անփոփոխ են բարիքն ամենայն և ոչ անցանեն։ Այլ ո՛չ խորութիւնք և ոչ բարձրութիւնք, ո՛չ վիշտք և ոչ չարչարանք, ո՛չ կապանք և ոչ տանջանք, ո՛չ հուր, ո՛չ ջուր և ոչ սուր, ո՛չ զբօսանք և ոչ պատրանք, ո՛չ մեծութիւնք և ոչ աղքատութիւնք, ո՛չ այն աշխարհ և ոչ այս աշխարհս, ո՛չ կեանք և ոչ մահ՝ ոչ ոք կարէ մեկնել զմեզ ի սիրոյն Քրիստոսի։ Զի նմա նուիրեցաք զկուսութիւնս մեր, զի նմա

her to court, in order to marry her[1] to king Trdat and make her queen of Armenia.

174. But (the maidens) raised their hands to heaven with tearful and piteous cries, begging the benevolent Lord to save them from the impurity of this lawless and unworthy marriage. Raising a cry they loudly wept and said: "Heaven forbid that riches should deceive us, or luxury charm us, or kingdoms allure us, or torments oppress us, or torture and persecution imperil us, no matter in how many ways they torment us. Will we really fear the terrible death which you are about to bring upon us? Heaven forbid that we exchange for this transitory life the eternal life that passes not away. Heaven forbid that we deny the God 'who is' [Ex. 3.14], the creator of all, whose authority is established by his essence, whose blessings are all immutable and pass not away. Neither depths nor heights, neither tribulations nor torments, neither bonds nor tortures, not fire nor water nor sword, neither pleasure nor deceit, neither riches nor poverty, neither that world nor this world, neither life nor death—no one can separate us from the love of Christ [cf. Rom. 8.38-39]. For to him we have dedicated our virginity, to him

աւանդեցաք զորրութիւնս մեր, զի նմա միամիք և սիրոյ նորա ցանկացեալ սպասեմք, մինչև կացցուք առաջի փառաց զովութեան նորա առանց ամօթոյ և պատկառանաց»։

175 Եւ արդ՝ եղեալ որոտումն յերկնից սաստիկ անհնարին, զի ահաբեկեալ զամենայն ամբոխն, և ձայն՝ զի ասէր առ նոսա, թէ «Զօրացարուք, պինդ կացէք, քաջալերեցարուք, զի ես ընդ ձեզ եմ, և պահեցի զձեզ յամենայն ճանապարհս ձեր, և ածի զձեզ պահելս անարատութեամբ, և հասուցի զձեզ մինչև ի տեղիս յայս, զի և սաս փառաւորեսցի անուն իմ առաջի հեթանոսաց կողմանց հիւսիսականաց։ Մանաւանդ դու, Հռիփսիմէ, ըստ անուանդ քում արդարև ընկեցեալ եղեր Գայիանեաւդ և քոյովք սիրելեօքդ ի մահուանէ ի կեանս. և մի երկնչիք, այլ եկեսջիք ի տեղի յայն՝ զոր ես և հայր իմ պատրաստեցաք ձեզ, զանքնին ուրախութեան տեղին, ձեզ և որ միանգամ իբրև զձեզդ իցեն»։

176 Եւ այնպէս յերկար որոտացեալ, մինչև թմբրեալ լինէին մարդիկն յահէ անտի. և բազմաց ընդոստուցեալ, անզուշեալ բազում երիվարք հեծելոց յահէ անտի՝ զբազումս ընկեցեալ և զբազումս առաթուր հարեալ սատակէին։ Եւ մարդկանն իսկ ընդ միմեանս ամբոխեալ՝ ընդ կուտակելն բազումք զբազումս կոխեալ սատակէին. և բազմաց լինէր կոտորած, և ձայն աղա-

we have commended our purity, for him we wait and his love we await with longing until we stand before his praiseworthy glory without shame or timidity."

175. Then there occurred a fearfully loud thundering from heaven which terrified the whole throng, and a voice which said to them: "Be strong [cf. I Cor. 16.13], stand firm [Gal. 5.1], be of good cheer [Matt. 14.27; Mk. 6.50], because I am with you [Matt. 28.20], and I have preserved you in all your journeys and led you safely in purity and have brought you to this place, that here my name might be glorified before the heathens of the Northern regions.[1] Especially you, Rhipsimē, who according to your name were truly 'thrown'[2] with Gaianē and your friends from death to life. Do not fear; but you will come to that place which my Father and I have prepared for you [cf. Jn. 14.2-3], the place of inscrutable joy, for you and for those who will be like you."

176. And thus it thundered a long time until the people were overcome by fear, and many horses took fright and started, throwing many of their riders and trampling and killing many under foot. And the people rushed about, crushing each other and trampling many to death. Many were killed and there was a great sound

դակի և վայոյ, և անհնարին չարիք և արհաւիրք ի վերայ մարդկանն հասանէին. և բազումք մեռան, և բազմաց արիւնն հեղեալ զերկիրն ոռոգանէր: Արդ՝ իբրև այս չփոթ ամբոխի եղև ի նոցանէն ի մէջ կուտակելոցն մարդկան բազմութեանն՝ ոմանք ի մեծամեծ սպասաւորացն արքունի անդէն ընթացան պատմել թագաւորին զամենայն բանս նոցա. քանզի դիպեցան անդ նշանագիրք, որ գրեցին զամենայն բանս, և ընթերցան առաջի թագաւորին:

177 Եւ ասէ թագաւորն. «Փոխանակ զի ոչ կամեցաւ գալ պատուով շքեղութեամբ կամօք՝ բռնաբար ածցեն մինչև յապարանս և մուծցեն զնա ի սենեակն արքունի»:

178 Արդ՝ առեալ զսուրբն Հռիփսիմէ սպասաւորացն բռնաբար, մերթ վերամբարձ, մերթ ի քարշ. և նա աղաղակէր և ասէր. «Տէր Յիսուս Քրիստոս, օգնեա՛ ինձ». և ամենայն ամբոխն զկնի նորա փողեալ՝ թնդէր երկիրն ի բազմութենէ անտի: Արդ՝ ածին մուծին զնա մինչև յապարանս թագաւորին, ի սենեակն արքունի: Իսկ իբրև արգելին զնա ի սենեակն՝ սկսաւ խնդրել ի Տեառնէ և ասէ.

179 «Տէր զօրութեանց, դու ես Աստուած ճշմարիտ: Դու ես, որ հերձեր զծովն Կարմիր, և անցուցեր զքո ժողովուրդն: Դու ես, որ զամուլ վէմն դարձուցեր ի ծննդականութիւն ջուրցն

of shouting and crying. And terrible trouble and fear came over the people, and many died, and the blood of many watered the earth.[1] When this confusion occurred in the great press of the crowd, some of the noble servants of the court ran to tell the king all their words, because there were there secretaries[2] who wrote down all that was said, and they read it before the king.[3]

177. And the king said: "Because she did not wish to come willingly in honor and pomp, let them bring her forcibly to my palace and lead her to the royal chamber."

[*C. Rhipsimē is taken to the palace; she eludes Trdat's clutches*]

178. So the servants took Rhipsimē by force, now lifting her, now dragging her. And she cried out and said: "Lord Jesus Christ, help me." And the whole crowd followed her, making the earth loudly shake from their great numbers. They brought her to the king's palace and led her to the royal chamber. But when they had shut her in the chamber, she began to beseech the Lord, saying:

179. "Lord of hosts, you are the true God. You it was who parted the Red Sea, and brought your people across [cf. Ex. 14]. You it was who turned the sterile rock into streams of fertile waters

վտակաց, և արբուցեր զժողովուրդն ծարաւեալ։ Դու ես, որ իջուցեր զծառայն քո զՅովնան յանդունդս խորոց ծովուն, և ետուր առնուլ զչափ քոյոյ զօրութեանդ, և արտաքսեցեր զնա ի դուրս քան զմարդկային բնութիւնս. և միւսանգամ այսրէն առանց ապականութեան ածեր ողջանդամ և կացուցեր ի կենդանութեան, զի և մազ մի անգամ ոչ շարժեալ լինէր ի վարսից նորա։ Դու ես Աստուած ճշմարիտ, որ և զԴանիէլ, կուր արկեալ գազանաց՝ ապրեցուցեր յահագին ժանեացն, և կացուցեր զզրպարտեալն առաջի նեղչացն փառաւորութեամբ։ Դու և զերիս մանկունսն, որ արկեալ յայրել վասն զքեզ պաշտելոյն՝ ողջ և անարատ ի հրոյն պահեցեր. զի փառաւորեսցեն զքեզ՝ որք տեսին զսքանչելիս քո։ Դու ետուր խոտաճարակ լինել խիստ և անօրէն թագաւորին Բաբելացւոց, զի ոչ իմացաւ փառաւորել զքեզ ի վերայ սքանչելեացն քոց զոր ցուցեր նմա. փոխեալ զնա ի կերպարանս անասնոց և ընդ գազանս անապատի եդեր զբնակութիւն նորա, և ընդ ցիռս վայրի զարօտ նորա։ Դու և զաղախին քո Շուշան կրկին ապրեցուցեր, յերկուց մահուց փրկեալ, և խայտառակամահ սատակեցեր զանօրէն թշնամիսն, և պսակ պարծանաց արդարութեան յուսացելոյն քոյ շնորհեցեր և կանգնեցեր։ «Դու նոյն ինքն ես, և ամք քո ոչ անցանեն»։ «Դու, տէր, զփառս քո այլում

and gave drink to your thirsty people [cf. Ex. 17.6]. You it was who brought down your servant Jonah to the unfathomable depths of the sea and made him experience your power; you cast him out from our human state and brought him back again to life whole and unharmed, for not one hair of his head was touched [cf. Acts 27.34]. You are the true God who saved Daniel, thrown as food to wild beasts, from their fearful teeth, and rendered him who had been defamed glorious in the sight of his tormentors [cf. Dan. 6]. You also saved alive and unharmed by fire the three children who had been thrown into the furnace because they worshiped you [cf. Dan. 3], for they glorified you, who had seen your wonders. You made the fierce and lawless Babylonian king pasture on grass, because he did not consent to glorify you for your wonders which you had shown him; you changed him into the form of animals and made his habitat with the beasts of the desert and his pasturage with wild asses [cf. Dan. 5.21]. You twice saved your handmaid Susanna, delivering her from a double death, and destroyed her lawless enemies with an opprobrious death, and graciously set a glorious crown of righteousness on her who hoped in you. 'You are the same, and your years do not pass' [Ps. 101.28; Heb. 1.12]. 'You, Lord, do not give your glory to another' [Is. 42.8; 48.11].

ոչ տաս»։ Դու ես որ փառաւորեալդ ես ի վերայ ամենայն տիեզերաց. մի՛ պղծեսցեն զանուն սուրբ քո հեթանոսք։ Դու կարող ես փըրկել զիս ի պղծութենէս յայսմանէ. զի վախճանեցայց սրբութեամբ մեռանել վասն անուանդ քոյ մեծի»։

180 Արդ՝ մինչդեռ սուրբն Հռիփսիմէ զայս ամենայն աղօթս առ Աստուած մատուցանէր՝ եկն եմուտ թագաւորն Տրդատ ի ներքս ի սենեակն՝ ուր էրն զնա արգելեալ։ Արդ՝ իբրև եկն եմուտ նա ի ներքս՝ առ հասարակ մարդիկն, ոմանք արտաքոյ ապարանիցն, կէսքն ի փողոցս ի ներքսագոյնսն, առ հասարակ երգս առեալ բարբառեցան կայթիւք վազելով, ցուց բարձեալ մարդկանն. կէսքն ի բերդամիջին, և կէսք զքաղաքամէջն լցին խնճոյիւք. առ հասարակ համարէին հարսանեացն զպարսն պարել և զկաքաւսն յորդորել։ Իսկ տէր Աստուած նայեցաւ յիւր սիրելին Հռիփսիմէ՝ ապրեցուցանել զնա, զի մի՛ կորիցէ աւանդն որ պահեալ զգուշացեալ էր, և լուաւ աղօթից նորա՝ զօրացուցանել զնա իբրև զՅայէլն և իբրև զԴեբովրայն. ետ զօրութիւն նմա, զի ապրեսցի ի ստամբակ բռնութենէ անօրէնութեանն։

181 Արդ՝ մտեալ թագաւորն՝ բուռն հարկանէր զնմանէն, կատարել զկամս ցանկութեանն։ Իսկ նա զօրացեալ լինէր ի Հոգւոյն սրբոյ. զա-

You are the one glorified over the whole world [cf. Dan. 3.45]; let not the heathen profane your holy name [cf. Ez. 36.20]. You are able to save me from this profanation, that I may in purity die for your great name."

180. While saint Rhipsimē was offering all these prayers to God, king Trdat entered the chamber where she had been shut up. Now when he came in, all the populace, some outside the palace, others in the streets, and others inside (the city), all together struck up songs [cf. III Macc. 6.23] and dancing.[1] Some filled the citadel, others the center of the town, with merry-making. They all intended to celebrate the wedding with dancing. But the Lord God looked down on his beloved Rhipsimē in order to save her, lest the treasure she had preserved so carefully be lost [cf. II Tim. 1.12], and he heard her prayers and fortified her like Jael and like Deborah [cf. Judges 4]. He strengthened her to be saved from the impious tyrant's grasp.

181. When the king entered, he seized her in order to work his lustful desires. But she, strengthened by the holy Spirit,

զանաբար ոգորեալ, առնաբար մարտնչէր. իբրև յերեք ժամուց սկսեալ մարտնչել մինչև ի տասն ժամն՝ պարտեալ լինէր զթագաւորն իսկ զայն, որ անհնարին համարեալ ուժով. որ մինչ ի Յունաց աշխարհին էր՝ բազում ոյժ պնդութեան ոսկերաց ցուցեալ էր, զարմացուցեալ զամենեսեան. և ի թագաւորութեանն իսկ, իբրև ի հայրենի բնութիւնն դարձեալ էր՝ բազում գործս արութեան քաջութեան և անդ ցուցեալ. և որ այնպէս հռչակեալ էր ամենայնիւ՝ արդ յաղջըկանէ միոջէ պարտեալ վատթարանայր կամօք և զօրութեամբն Քրիստոսի։

182 Արդ՝ իբրև պարտեցաւ, վաստակեցաւ և լքաւ՝ ել նա արտաքս, և ետ ածել զերանելին Գայիանէ, և արկանել խառան ի պարանոց նորա, և ածել ունել զնա առ դուրս սենեկին. և ինքն անդրէն ի ներքս մտանէր. և եդ բանս ի բերան սպասաւորացն, զի ստիպեսցեն զանհրապոյրն Գայիանէ՝ ասել ի դրաց անտի ի ներքս ի սենեակն առ Հռիփսիմէ, թէ արա զկամս դորա, և կեա՛ց դու և մեք։

183 Իսկ նա յանձին կալեալ խօսել ընդ սանուն իւրում, և մատուցեալ ասէ ի դրաց անտի ի ներքս ի սենեակն առ Հռիփսիմէ. «Որդեակ, պահեսցէ զքեզ Քրիստոս ի պղծութենէդ և լիցի քեզ զօրաւիգն. բա՛ւ քեզ, որդեակ, եթէ լիցի քեզ ելանել ի ժառանգութենէ անտի կե-

struggled like a beast and fought like a man. They fought from the third hour until the tenth and she vanquished the king who was renowned for his incredible strength. While he was in the Greek empire he had shown such bodily strength that everyone had been amazed; and in his own realm, when he had returned[1] to his native land, he had shown there too many deeds of mighty valor.[2] And he, who was so famous in every respect, now was vanquished and worsted by a single girl through the will and power of Christ.

182. When he had been defeated, and was exhausted and discouraged, he went out and had blessed Gaianē brought in and a collar put on her neck, and he had her led to the door of the chamber. He himself then entered, and prompted his servants to force the intractable Gaianē to say through the door into the room to Rhipsimē, "do his will and you and we shall live."

183. She agreed to speak with her protégée, and coming close spoke through the door into the room to Rhipsimē: "My child, may Christ save you from this profanation, and may he be your support. Heaven forbid, my child, that you lose the inheritance

նացն Աստուծոյ, և ժառանգել քեզ զանցաւորս, որ ոչ ինչ իսկ է, այսօր է, և վաղիւն կորնչի»։

184 Իբրև իմացան, թէ զոր խրատ յաճախեաց մատուցանել՝ բերեալ քարինս՝ հարկանէին զբերանն, մինչև թափել ատամանցն. և ստիպէին ասել նմա, զի արասցէ զկամս թագաւորին։

185 Նա ևս քան զևս պնդէր և ասէր. «Քաջալերեա՛ց, պինդ կաց, և այժմ տեսանես զՔրիստոս, առ որ անձկացեալն ես։ Յուշ լիցի քեզ, որդեակ, հոգեխառն սնունդն, որով զքեզ սնուցի։ Յուշ լիցի քեզ աստուածեղէն խրատն, որով զքեզ պարարեցի։ Յուշ լիցին հալածանքն իմ և քո ի միասին։ Յուշ լիցի քեզ և բաժակ մահուն, զոր ի միասին եմք ըմպելոց։ Յուշ լիցի քեզ և յարութիւն ամենայն տիեզերաց։ Յուշ լիցի քեզ և մեծատանն յանդիմանութիւն։ Յուշ լիցի քեզ այրումն յաւիտենական գեհենին տանջանաց։ Յուշ լիցի քեզ անապական պարգևքն արդարոց, զոր և մեզն է պատրաստեալ։ Յուշ լիցի քեզ աստուածեղէն բարբառն երկնաւոր, զոր լուար իսկ դու քեզէն քոյովք ականջօք յայսմ աւուր. որ քաջալերեաց և զօրացոյց զքեզ մեօք հանդերձ՝ նոյն և արժանիս արասցէ պսակին և հանգստեանն զոր խոստացաւ. և զօրացուսցէ զքեզ մեօք հանդերձ, զի լիցուք բնակիչք Աստուծոյ լուսեղէն յարկացն յաւիտենականաց բնակութեան։

of the life of God and inherit transitory life, which is nothing today and is lost tomorrow" [cf. Matt. 6.30].[1]

184. When they realized what advice she was offering, they brought stones and struck her mouth until her teeth were knocked out, and they tried to force her to tell (Rhipsimē) to do the will of the king.

185. But she persisted all the more and said: "Be of good cheer [cf. Matt. 9.22], stand firm [cf. Gal. 5.1], and now you will see Christ for whom you long. Remember, my child, the spiritual upbringing in which I raised you. Remember the divine instruction with which I nourished you. Remember your and my persecutions together. Remember the cup of death which we have to drink together [cf. Matt. 26.39]. Remember the resurrection of the whole world. Remember the reproach of the rich man[1] [cf. Lk. 6.24]. Remember the fire of the torments of eternal hell [cf. Mk. 10.42]. Remember the incorruptible rewards of the just which he has also prepared for us[2] [cf. Lk. 14.14]. Remember the divine voice from heaven which you yourself heard divine voice from heaven which you yourself heard with your own ears today,[3] which encouraged and strengthened you and us also; the same will also make (us)[4] worthy of the crown and the rest which it promised, and will strengthen you and us, so that we may dwell[5] in God's eternal habitations of light [cf. Lk. 16.9].

185 «Այլ տէր մեր և թագաւոր մեր և Աստուած մեր, որ վասն մեր խոնարհեցաւ յանարգութիւն, մի՛ թողցէ զմեզ անարգս, զի զօրութեանց նորա ցանկացաք. փրկիչն աշխարհաց օգնեսցէ մեզ, որ ոչ եթող ընդ վայր զմեզ զյուսացեալս իւր, և արժանիս համարեցաւ իւրոց բանիցն՝ քաջալերութիւն տալոյ։ Զի նա անարգամեծար տէր է, և նա ինքնին պահեսցէ զմեզ զաղախնեայս իւր յամենայն մեղաց. որպէս և այսօր իսկ լուաք, զի էր պահեալ զմեզ ամենազօր աջոյն, և պահեսցէ զմեզ մինչև յաւիտեան. բայց միայն ի սիրոյ նորա մի՛ մեկնեսցուք։ Այլ զարթուսցէ զզօրութիւնս իւր, և եկեսցէ կեցուսցէ զմեզ, և մեք զանուն Տեառն կարդասցուք. երևեցուսցէ զերեսս իւր ի մեզ, և կեցցուք. զի նա է Աստուած փրկիչ մեր. վասն նորա համբերեսցուք զօրհանապազ։

187 «Յո՛ւշ լիցի քեզ Տէրն, որ վասն զմեզ բարձրացուցանելոյ խոնարհեցաւ, և հեղ զարիւն իւր ի վերայ խաչին. վասն կենաց մերոց և փրկութեան մերոյ ի մահ վիրաւորեցաւ։ Դիր զնա ի մտի քում, և կարդա՛ սրտիւ քով զնա. ահա հասեալ է քեզ յօգնականութիւն, և զօրացուսցէ զբազուկս քո, որպէս զմանկանն Դաւթի ի վերայ արջոցն և առիւծուցն, որ իբրև զուլս այծեաց ճեղքեալ բեկանէր։ Նա և որ զանարի հսկայն ջարդեաց ի ձեռն ծառայի իւ-

186. "But our Lord and King and God, who for our sake was humbled to disgrace [cf. Phil. 2.8], may he not leave us despised [cf. I Cor. 4.10] because we desired his power.[1] May the savior of the world help us, who did not helplessly abandon us who hoped in him but considered us worthy of comfort by his words. For he is the Lord who glorifies the humbled,[2] and may he keep us his handmaidens from all sin, as we heard today. For his almighty right hand has preserved us, and will preserve us for eternity. But only let us not be deprived of his love [cf. Rom. 8.35, 39]. But may he arouse his hosts and come and rescue us [cf. Ps. 79.3-4]; and we shall invoke the name of the Lord [cf. Ps. 79.19]. Let him reveal his face to us and we shall live [cf. Ps. 79.20]. For he is God our savior, and for his sake we shall endure[3] for ever [cf. Ps. 24.5; 43.23].

187. "Remember the Lord who was humbled in order to raise us up, and who shed his own blood on the cross; for our lives and salvation he was wounded[1] to death. Recall him and invoke his name in your heart. Behold, he has come to help you, and will strengthen your arms like those of the young David against bears and lions, who struck and broke (them) like kids [cf. I Kings 17.34]. Similarly, he who destroyed the ignoble giant through his servant

րոյ Դաւթի՝ նոյն խորտակեսցէ զչարութիւն անօրէնութեան զորա առաջի քո։

188 «Դուստր մարգարէութեան հաւատոյն Դաւթի և մնեալ յարդարութեան ի վերայ բազկաց իմոց. առաջի սուրբ և փառաւորեալ սեղանոյն Աստուծոյ մնար դու աղախին Քրիստոսի. այն որ այսօր իսկ յայտնութեամբ՝ գթութեամբ և մարդասիրութեամբ իւրով յայտնեցաւ մեզ, որ իմաստութեամբն խնդրեցաք զնա՝ նոյն տացէ քեզ մեօք հանդերձ առանց ամօթոյ տեսանել զնա դէմ յանդիման»։

189 Արդ՝ զայս ամենայն խօսեցաւ սուրբն Գայիանէ ի բարբառ Հոռոմայեցւոց ընդ իւրում սանուն ի դրաց սենեկին, մինչդեռ թագաւորն ոգորէր ընդ սրբոյն Հռիփսիմեայ։ Բայց գոյին անդ ոմանք ի սպասաւորացն արքունի, որ լսէին զայն ամենայն ի բարբառ Հոռոմայեցւոց։

190 Եւ արդ՝ իբրև լուան զայն ամենայն, զոր խօսեցաւն Գայիանէ ընդ սանուն իւրում՝ ի բաց առին զնա ի դրաց անտի։ Զի թէպէտ և բազում անգամ հարին զնա, և ծեծեցին քարամբք զերեսս նորա, և թափեցին զատամունս նորա, և ջարդեցին զմսուր բերանոյ լնդաց նորա՝ սակայն ոչ շրջեաց զբանս իւր՝ խօսել ընդ աղջկանն այլ ինչ. այլ զոր սկիզբն արարեալ էր բանիցն իւրոց առաջնոց՝ զնոյն յաճախեալ բազմացուցանէր։

191 Իսկ նա մարտեաւ ևս ընդ նմա ի տասն

David [cf. I Kings 17.50], the same will break this evil impiety before you.

188. "Daughter of the prophetic faith of David, brought up in justice in my arms, you were raised before the holy and glorious altar of God as a handmaid[1] of Christ. He who today in his mercy and benevolence appeared in a revelation to us who piously beseeched him, the same will grant you and us to see him face to face[2] [cf. I Cor. 13.12] without shame."

189. Now saint Gaianē said all this in Latin[1] to her protégée through the door of the chamber, while the king was struggling with saint Rhipsimē. But there were there some of the palace servants who heard all this in Latin.

190. And when they heard everything that Gaianē had said to her protégée, they took her away from the door. And although they frequently beat her and struck her face with stones, and knocked out her teeth, and broke her jaws, yet she did not change her speech or say anything different to the maiden. But as she had begun speaking at the beginning, she repeated in the same tenor.

191. But (Rhipsimē) was still fighting with the king from the tenth

ժամէ աւուրն մինչև ի պահ մի գիշերոյն, պարտեաց զԹագաւորն։ Եւ զօրացեալ լինէր աղջիկն ի Հոգւոյն սրբոյ. հարեալ վանեալ պարտեալ, վատակարեկ առնելով զԹագաւորն՝ մեղկեալ ընկենոյր։ Մերկ կողոպուտ ևս ի հանդերձից զԹագաւորն կացուցանէր, և զպատմուճանն պատառեալ և զնշան Թագին ցրուեալ կողոպտեալ՝ ամօԹալից Թողոյր։ Զի Թէպէտ և զիւր զգեստիկն քրքրեալ պատառատուն ի նմանէն ի դուրս բերէր՝ սակայն յաղԹող պահէր զանձն իւր սրբուԹեամբ։

192 Եւ բացեալ զդուրս տանն բռնաբար՝ ի դուրս ելանէր, հերձեալ զամբոխ մարդկանն. և ոչ ուրուք կարացեալ յաղԹահարել զնա։ Եւ ընԹացեալ ընդ քաղաքամէջսն՝ ելանէր ընդ արեւելս կոյս, ընդ Արեգ դուռն քաղաքին։ ԵրԹեալ առ հնձանօքն, ուր էինն իսկ յառաջ վանք իրեանց՝ ձայն աւետեաց մատուցանէր ընկերացն. և ինքն անցանէր հարուստ մի ի քաղաքէն ի կողմն մի հիւսիսոյ, ի տեղի մի յարևելս կոյս, ի սարաւանդակ ի բարձրաւանդակ յաւագին տեղի մի, մօտ ի բուն պողոտայն, որ երԹայր յԱրտաշատ քաղաք։

193 Իբրև եհաս յայն տեղի՝ ծունր եդեալ կայր յաղօԹս և ասէր. «Տէր ամենայնի, ո՞ կարիցէ հատուցանել քեզ փոխանակ բարեացն, որ ի քէն շնորհեցաւ մեզ. զի պահեցեր զյոյս մեր հաստատուն որ ի քեզ էր. և ապրեցուցեր զմեզ

hour of the day until the first evening watch, and she overcame him. The maiden was strengthened by the holy Spirit; she struck him, chased him and overcame him; she wore the king out, weakened him and felled him. She stripped the king naked of his clothes; she tore his robes and threw away his royal diadem, leaving him covered with shame. And although her own clothes had been torn to shreds by him, yet when she went out she still victoriously retained her purity.

192. Opening the doors by force she went out, cutting through the crowd; and no one was able to hold her. She ran through the city and went out on the eastern side, through the Sun-gate[1] of the city. Coming to the vat-stores where their earlier dwelling had been, she told the story to her companions. She herself went a long way from the city to the North-east, to a high and sandy point near the main road which led to the city of Artashat.

193. When she arrived there she knelt down in prayer and said: "Lord of all, who could repay you for the blessings which have been granted us by you? For you have kept firm the hope we had in you, and you have saved us

ի պղծալից ժանեաց գազանին որ ապականէրն զմեզ։ Այլ զի՞նչ եւ կայցէ ի մեզ կար՝ փոխարէնս հատուցանել քեզ. բայց անձինք մեր լիցին փոխանակ փրկութեան քում. զի դու ինքն արժանիս արարեր զմեզ արքանեկութեան, կրել զանունդ քո, որով ապրեցուցեր զմեզ. զի բայց ի քէն, Տէր, զայլ ոչ ոք գիտեմք, եւ զանուն քո անուանեմք զօր հանապազ։

194 «Այլ մեզ լաւ է մեռանել ի սրբութեան քում, քան թէ ձգիցեմք զձեռս մեր յաստուածս օտարս, որ չիցեն իսկ. այլ ոչ ինչ իսկ են ամենայն պաշտամունք հեթանոսաց. զի դու ես արարիչ, եւ ամենայն ի քէն է եւ Որդւովդ քո միածնաւ, առանց որոյ եղև և ոչինչ, և «Հոգիդ քո բարի առաջնորդեսցէ մեզ յերկիր ուղիղ», որ տանի զմեզ ի բարութիւնսն յաւիտենականսն յերկրաւորսն։

195 «Որոյ յանդիման լինելոց եմք առաջի Միածնիդ քոյ. զի առանց ամօթոյ կայցեմք ի կողմն աջակողմանն, յորժամ առաքեսցես զդա «ի պատրաստ լուսոյ բնակութենէդ հայել յամենայն բնակիչս երկրի»։ Որ ստեղծ իսկ զսիրտս որդւոց մարդկան, որ ի միտ առնու զամենայն գործս նոցա։ Զի եւ մեք ի ժողովրդենէ քումմէ եմք եւ ի խաշնէ արօտի քոյ. մացուք ի յարկսդ, զոր պատրաստեցեր սիրելեաց քոց։ Փութամք, Տէր, զի ելցուք ի մարմնոյս, զի խառնեսցուք ի

from the filthy teeth of the wild beast who would have ravaged us. But what more could we offer you in return save our souls in thanks for your salvation. For you have made us worthy of your service, to bear your name wherewith you saved us. For save you, Lord, none other do we know, and we invoke your name all the day [Is. 26.13].

194. "But it is better for us to die in our[1] purity than to stretch out our hands to foreign gods who really do not exist. All the cults of the heathen are but nothing. For you are the creator, and everything is from you and through your only-begotten Son, without whom nothing at all was made [cf. Jn. 1.3]. And 'your good Spirit will lead us in a straight land' [Ps. 142.10], who will bring us to the eternal and heavenly blessings.

195. "We must come before your only-begotten Son, to stand without shame on the right hand side [cf. Matt. 25.33], when you will send him 'from your prepared habitation of light to look on all the inhabitants of the earth' [Ps. 32.14]. He created the hearts of the sons of men,[1] and he considers all their deeds [cf. Ps. 32.15]. For we are from your people and from the flock of your pasture [cf. Ps. 78.13]; let us enter the mansions which you have prepared for your beloved [cf. Jn. 14.2]. Let us hasten, Lord, to leave this body in order to be joined to

զունդ միածնի Որդւոյդ քոյ սիրելւոյ, և ի թիւ
այնոցիկ, որ սիրեցին զօր երևելոյ գալստեան
տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Ի պղծութե-
նէս և եթ ապրեսցուք. այլ եթէ եկեսցեն տան-
ջանք ի վերայ մեր վասն անուան քոյ՝ պատ-
րաստ եմք։ Զի ոչ զրկես դու զմեզ. զի դու,
Տէր, ինքնին վկայես ինձ, զի վարուց երկրա-
կեաց կենացս ես ինչ ոչ ցանկացայ ի մանկու-
թենէ իմմէ. վասն զի նայեցայ և հաւատացի
բանի քում զոր ասացեր, թէ «Վա՛յ իցէ ձեզ,
յորժամ բարի ասիցեն զձէնջ մարդիկ». այլ
«Երանի է ձեզ, յորժամ նախատիցեն զձեզ և
հալածիցեն, և ասիցեն զամենայն բան չար սուտ
զձէնջ վասն իմ. ցնծացէք և ուրախ լերուք»։
196 «Արդարև իսկ, Տէր, ցնծացաք և ու-
րախ եղաք ընդ այս պատերազմ որ եհաս մեզ,
մարտնչել սիրով քով. զի յաղթեաց յաղթող զօ-
րութիւնդ քո, և ետ մեզ յաղթել։ Ուրախ եղաք
ընդ այս փոխանակ աւուրցս, որ խոնարհ արա-
րին զմեզ, և ամացս, յորս տեսաք զչարչարանս։
Հայեա՛ց, Տէր, ի ժառանգութիւն քո և ի գործս
ձեռաց քոց, և առաջնորդեա՛ մեզ ի վերին քա-
ղաքդ քո Երուսաղէմ որ ի բարձունս է, ուր
ժողովելոցդ ես զամենայն արդարս, զսուրբս և
զսիրելիս անուան քոյ. եղիցի լոյս տեառն Աս-
տուծոյ ի վերայ մեր»։
197 Եւ մինչդեռ երանելին սուրբն

the company[1] of your beloved only-begotten Son and to the number of those who have loved the day of the revelation and coming of our Lord Jesus Christ. Only let us be saved from this profanation. But if there come upon us torments for your name's sake [cf. Matt. 5.11; Jn. 15.20], we are ready. For you will not abandon us; since you, Lord, yourself bear me witness that from my youth I have had no desire at all for earthly life. Because I had regard for and faith in your saying: 'Woe to you when men will say good about you' [Lk. 6.26], but 'Blessed are you when they will insult and persecute you and will make every wicked and false accusation against you for my sake; rejoice and be glad!' [Matt. 5.11; Lk. 6.22-23].

196. "Truly, Lord, we rejoiced and were glad at this struggle, which has overtaken us, to fight by your love. Because your victorious power has won, and given us the victory [cf. I Cor. 15.57]. We were glad for these days that cast us low,[1] and for these months in which we have seen torments [cf. Ps. 89.15]. Look down, Lord, on your inheritance[2] and on the works of your hands, and lead us to your celestial city, Jerusalem, which is in the heights [cf. Gal. 4.26], where you will gather all the just, the saints and those who loved your name. Let the light of the Lord God be over us."

[*D. The martyrdom of the nuns*]

197. While blessed saint

*Հռիփսիմէ խօսէր զայս ամենայն՝ անդէն ի նմին գիշերի եկին հասին վաղվաղակի ի տեղի անդր իշխանք Թագաւորին, և դահճապետն դահճօքն հանդերձ ընդ նոսա, և ջահք լուցեալք առաջի նոցա։ Եւ մատեան վաղվաղակի, կապեցին զնա ձեռս յետս, և խնդրէին զի հատցեն զլեզուն։ Իսկ նա իւրովի կամօք բացեալ զբերանն՝ հանեալ մատուցանէր զլեզուն։*

198 *Եւ անդէն զհանդերձիկն պատառատուն որ զնովաւն էր՝ ի բաց գերծուին ի նմանէ. և հարեալ չորս ցիցս ի գետինն, երկուս ոտիցն և երկուս ձեռացն՝ և պրկեցին զնա. և մատուցին զկանթեղունսն ցմեծ ժամս. այրէին և խորովէին զմարմինս նորա հրով կանթեղացն։ Եւ քարինս վարեցին ընդ գոգս նորա և ի վայր վայթեցին զաղիս նորա. և մինչդեռ կայր կենդանի՝ փորեցին զաչս երանելւոյն։ Ապա անդամ անդամ յօշէին զնա և ասէին, եթէ «Ամենեքեան որ իշխեսցեն անգոսնել և անարգել զհրամանս Թագաւորաց՝ ըստ դմին օրինակի կորիցեն»։*

199 *Իսկ էին և այլ սուրբք, արք և կանայք, որ ընդ նոսա եկեալ էին, աւելի քան զեօթանասուն մարդ. այլ որ ի ժամուն անդ հասին ի տեղին յայն ի նոցանէն, որ խնդրէին ամփոփել և թաղել զմարմինս նոցա, յորոց վերայ սուր եդեալ կոտորեցին իբրև երեսուն և երկու ոգիս։*

Rhipsimē was saying all this, that same evening the king's nobles, the chief-executioner with the torturers[1] quickly arrived there, with torches lit before them. They quickly approached and bound her hands behind her back, and tried to pull out her tongue. But she willingly opened her mouth and offered her tongue [cf. II Macc. 7.10].[2]

198. Then they stripped from her the torn clothing which was around her. And they fixed four stakes in the ground, two for her feet and two for her hands, and tied her to them. And they applied the torches to her for a long time, burning and roasting her flesh with their fire. And they thrust stones into her entrails, eviscerating her. And while she was still alive they plucked out the blessed one's eyes. Then limb by limb they dismembered her, saying: "All who dare to despise and insult the king's commands will perish in the same way."

199. And there were other saints, men and women, who had come with them, more than seventy people. But of those who came there at that time and who sought to wrap and bury their bodies, they put to the sword and killed thirty-two.[1]

200 Որոց ասացեալ և նոցա զայս. «Սիրեցաք զքեզ, Տէր, զի լուիցես զձայն աղօթից մերոց. խոնարհեցուցեր զունկն քո բարերար, և մեք կարդացուք առ քեզ։ Քեզ փառք, որ ոչ զրկեցեր զմեր անարժանութիւնս ի քոց բարեացդ, մարդասէր. որ պահեցեր զմեզ իբրև զբիբ ական, և ի հովանի թևոց քոց ապրեցաք յանօրէնութեանցս բազմութենէ. և ահա մեռանիմք վասն փառաւորեալ անուանդ քոյ»։ Եւ զայս միաբան ասացեալ՝ առ հասարակ սպառեցան։

201 Եւ մի ոմն որ անդէն ի ներքս սպանին ի հնձանի անդ, ուր էին վանք նոցա. որ այսպէս ասէր ի ժամ հրաժարելոյն իւրոյ. «Գոհանամ զքէն, Տէր բարերար, զի և զիս ոչ զրկեցեր. զի ես հիւանդ էի, և ոչ կարացի ընթանալ՝ և զհետ ընկերացն ժամանել. սակայն դու, Տէր մարդասէր և քաղցր, ընկա՛լ և խառնեա՛ և զիմ ոգիս՝ ի գունդ քոյ սուրբ վկայիցն, ընկերացն իմոց և քերցն, առ քս աղախինն և մայրն մեր և զլուխ Գայիանէ, և զքեզ սիրիչ և որդեակ մեր Հռիփսիմէ»։ Եւ սա այսու օրինակաւ խօսեալ՝ փոխեցաւ։ Եւ քարշեալ ի բաց ընկեցին զմարմինս նոցա՝ առ ի կեր լինել շանց քաղաքին և գազանաց երկրի և թռչնոց երկնից։

202 Իսկ թագաւորին թողեալ զիւր ամօթն կորանաց, որ պարտ էր նմա ամաչել,

200. These said as follows: "We have loved you, Lord, that you might hear the voice of our prayers. You inclined your benign ear and we invoked you [cf. Ps. 114.1]. To you be glory, for you did not deprive our unworthiness of your blessings. You preserved us like the apple of an eye and saved us under the shadow of your wings from the multitude of these iniquities [cf. Deut. 32.10-11; 16.8-9; Ps. 60.5].[1] And behold we die for your glorious name." Saying this with one voice, together they breathed their last.

201. And there was one[1] killed in the vat-store, which had been their lodging-place, who spoke thus at the moment of her death: "I thank you, benign Lord, for not excluding me. For I was ill and could not run to follow my companions. But do you, benevolent and sweet Lord, receive and join my soul to the company of your holy martyrs, my companions and sisters, with your handmaid and our mother and leader, Gaianē, and Rhipsimē our child who loved you."[2] And speaking thus she died. They dragged out their bodies and threw them as food for the dogs of the city and beasts of the land and birds of the sky.

202. But the king paid no regard to his shameful humiliation, of which he should have been ashamed,[1]

որ այնչափ անուանի եղեալ՝ քաջութեամբ առաւելոյր ի մարտս պատերազմացն. նաև և յՈղիմպիադսն Յունաց հսկայազօր երևեալ, բազում գործս արութեան և անդ ցուցեալ, և ոչ սակաւ մղեալ պատերազմունս յայնկոյս Եփրատ գետոյ ի կողմանս Տաճկաց. ուր և կարեվէր խոցեալ՝ ելանէր երիվարաւն ի պատերազմէն. իսկ նորա առեալ զերիվարն, և զասպազէն նորին և վիւր զառնազէնն առեալ կապեալ ի թիկունսն՝ ի վերայ մկանանցն ի լիւղ անցանէր ընդ գետն Եփրատ. արդ՝ որ այնչափ հզօր զօրաւորն էր և բուռն ոսկերօք՝ յաղջկանէ միոջէ յաղթահարեալ լինէր կամօքն Աստուծոյ։ Եւ զայն ոչ էր եղեալ ի մտի զամօթն նախատանացն, այլ ի տեսիլ սիրոյ նորա ջեռեալ՝ տրտմեալ ընդ մահ աղջկանն, տխրացեալ սգայր։

203 «Տեսէք, ասէ, զկախարդասար աղանդազգիդ քրիստոնէից. զիա՛րդ կորուսանեն զանձինս բազումս մարդկան, հանեալ յաստուածոցն պաշտամանէ. յերկրաւոր վայելից կենացս խափանեն, և ի մահուանէ ոչ դողան. մանաւա՛նդ վասն սքանչելոյն Հռիփսիմեայ, որոյ ոչ գոյր համեմատ յերկրի ի ծնունդս կանանց։ Վասն զի սիրտ հատեալ զհետ անհնարին և անմոռաց՝ ի մտացս չանկանի, մինչ կենդանի եմ ես, Տրդատ արքայ։ Զի զՅունաց աշխարհն և զՀոռոմոց քաջ գիտեմ, և զմեր Պարթևաց կողմանսն, վասն

he who was so renowned for bravery in battle. Not least in the Greek Olympics[2] he had seemed as strong as a giant, showing there many deeds of prowess. He had waged no few battles beyond the river Euphrates in the regions of the Tachiks;[3] where once he was leaving the combat on horseback gravely wounded,[4] he picked up the horse and its armor and his own armor, and fastening them to his back[5] he swam across the Euphrates river. So he, who was such a powerful soldier and strong of body, by the will of God was defeated by a single girl. But he paid no thought to this shameful disgrace, but was rather inflamed at the sight of his love; and saddened at the death of the maiden, he bitterly mourned.

203. "Do you see, he said, that bewitching sect of the race of Christians, how they destroy many men's souls, drawing them away from the worship of the gods? They deprive them of[1] the pleasures of this earthly life and do not tremble at death, (I am speaking) especially about the wonderful Rhipsimē who had no equal among women on earth. For my heart is broken for that amazing and unforgettable girl, who will never pass from my mind so long as I, king Trdat, remain alive. I know well the land of the Greeks and Romans, and our Parthian territory, for that

զի բնութիւն իսկ է մեր, և զԱսորեստան և զՏաճկաստան և զԱտրպատականն։ Եւ զի՞ մի բան միոջէ թուեմ. զի բազում տեղիք այն են, որ իմ խաղաղութեամբ է հասեալ, և բազումք այն են, որ մարտիւ պատերազմաւ աւարի ասպատակեալ։ Որ ուրեք տեսեալ է նման նմանութիւն այսր գեղոյ, զոր էր կորուսեալ այս կախարդացն. զի այսպէս զօրացան կախարդինքն, մինչև ինձ յաղթեցին»։

204 Իսկ ի վաղիւ անդր մատուցեալ՝ առնոյր հրաման դահճապետն վասն սրբոյն Գայիանեայ սպանման։ Իսկ նա իբրև լուաւ՝ առ սէրն յեղեալ զեղեալ յիմարեալ ապշեալ և ոչ յիշեալ վասն մահուան սրբոյն Հռիփսիմեայ՝ համարեցաւ եթէ կենդանի իցէ։ Մեծ աւագութեան, բարձի և պատուոյ պարգևս խոստանայր՝ եթէ յանկարծ ոք հնարեսցէ պատրել հաճել զմիտս աղջկանն՝ գալ առ նա։ Իսկ նա ասէ, թէ «Այնպէս կորիցեն ամենայն թշնամիք քո, արքայ, և որ զատուածս անարգենն և զհրամանս ձեր թագաւորաց. այլ կայ կախարդն այն, որ ապականեալ կորոյս գչքնաղագեղն, և երկու ևս ընկերք նորուն»։

205 Իբրև լուաւ, թէ մեռաւ սուրբն Հռիփսիմէ՝ դարձեալ ի նոյն տրտմութիւն ընկլաւ, և իջեալ նստէր ի վերայ գետնոյ, և լայր և ի սուգ մտանէր։ Դարձեալ հրաման տայր վասն առա-

is our homeland, and Asorestan and Tachikistan and Azerbaijan.[2] Why should I enumerate them one by one? For there are many regions to which I have come in peace, and many which I have plundered in war. Yet in none have I seen the like of this beauty, whom these magicians have destroyed; for their sorcery has become so strong as even to overcome me."

204. The next day the chief executioner came forward to receive orders for the execution of saint Gaianē. But (the king) when he heard, was overwhelmed, frenzied and stupified for love, nor did he remember the death of saint Rhipsimē but thought that she was still alive. He promised to bestow great dignities, promotion and honor on anyone who could entice or persuade the maiden to come to him. But (the executioner) said: "So will perish all your enemies, O king, and those who dishonor the gods and the commands of your majesty. But there still lives that witch who corrupted and destroyed the beautiful girl, and two more companions of hers."

205. When he heard that saint Rhipsimē was dead, he was cast down into the same despondency, and fell down and sat on the ground, weeping and mourning. Then he commanded that

քինուոյն Գայիանեայ, թէ նախ զլեզուն ընդ ծոր-
ծորակն հանել, և ապա սպանանել. վասն զի
իշխեաց փաստակար խրատուն իւրով կորուսանել
զայնպիսին, որ զդիցն գեղեցկութիւն ունէր ի
մէջ մարդկան։ Իսկ զորին խրատ անշնորհ առ-
րել զդիսն իշխեաց, որոց նմայն զայն շնորհեալ
էր գեղեցկութիւն. վասն այնորիկ զնա կտտա-
մահ սպանցեն։

206 Արդ՝ ելեալ դահճապետն պարծելով՝
չարամահ առնել զնա, և եա հանել զնոսա շըր-
թայիւք ի քաղաքէն ընդ դուռն հարաւոյ, ընդ
կողմն պողոտային որ հանէր ի Մեծամօրի կա-
մուրջն, ի տեղին յայն, ուր սովոր էին սպանա-
նել զամենայն մահապարտս, ի ճախճախուտ տե-
ղի մի, մօտ ի պարկէն փոսին որ շուրջ գայր
զքաղաքաւն։ Եւ վարեցին չորս չորս ցիցս մի-
ում միում ի նոցանէն։

207 Եւ մինչդեռ կազմէին զայն՝ սկսաւ
ասել սուրբն Գայիանէ ընկերօքն հանդերձ այս-
պէս. «Գոհանամք զքէն, Տէր, որ արժանի արա-
րեր զմեզ մեռանել վասն մեծի անուանդ քոյ,
և յարգեցեր զհողեղէն բնութիւնս մեր, զի լի-
ցուք արժանի աստուածութեանդ քում. և հա-
ղորդեցեր զիս մահուան սրբոց քոց վկայիցն,
Հռիփսիմեայ և ընկերացն։ Եւ արդ՝ փութամ և
անձկացեալ եմ հասանել նոցա որ զքեզն սիրե-
ցին, և ուրախ եմ, զի ժամանեցից զկնի զըս-

the virtuous Gaianē first have her tongue pulled out and then be put to death, since she had dared[1] to corrupt with her harmful advice her who had the beauty of the gods among mankind. And her advice had displeased the gods, who had given that girl such beauty,[2] therefore they should torture her to death.

206. So the chief-executioner came out boasting that he would put her to a cruel death. He had them taken in chains out of the city by the South gate,[1] along the road that leads to the *Metsamawr* bridge,[2] to the place where they were accustomed to execute those condemned to death, a marshy place near the moat which ran round the city. And they brought four stakes for each one of them.

207. And while they were setting these out, saint Gaianē with her companions began to speak as follows: "We thank you, Lord, for making us worthy to die on behalf of your great name, and for honoring our earthly nature so that we might become worthy of your divinity, and for making me share in the death of your holy martyrs, Rhipsimē and her companions. So now I[1] am anxious and impatient to join those who have loved you; and I am happy to follow

տերն իմոյ և որդեկլին իմոյ Հռիփսիմեայ և քերցն իմոց և ընկերացն։ Արդ՝ յիշեա՛ զմեզ, Տէր, որ «վասն անուան քոյ մեռանիմք զօրհանապազ. համարեցաք իբրև զոչխար ի սպանումն». «արի՛ և մի՛ մերժեր զմեզ վասն անուան քոյ». և դու տո՛ւր մեզ զյաղթութիւնդ քո, և չարն գործակցօքն հանդերձ նկուն լիցի յահէ փառաց քոց»։

208 Եւ յետ այսորիկ մատեան և պատառեցին զհանդերձս նոցա յանդամոց նոցա, և պրկեցին զնոսա մի մի ի չորս չորս ցիցս։ Եւ ծակեցին զմորթսն ի պճղունս նոցա և եղին փողս և փչելով այնպէս կենդանւոյն մորթեցին զսուրբսն երեսին, ի ներքուստ ի վեր մինչև ի ստինսն, և ծակեալ զծործորակսն՝ և զլեզուսն ընդ այն հանէին։ Եւ վարեցին ևս քարինս ընդ գոգս նոցա, և ցրուեալ զաղիս նոցա յորովայնիցն ընդ գոգս նոցա. և քանզի դեռ ևս կային կենդանի՝ և ապա բարձին զգլուխս նոցա սրով։

209 Արդ՝ որք միանգամ եկեալ էին ընդ նոսա անտուստ ի Հռոմոց աշխարհէն, որ միանգամ միաբանք եկին հասին յերկիր Հայաստան աշխարհիս՝ աւելի էին քան զեօթանասուն մարդ։ Իսկ որ սպանան ընդ սուրբ տիկնայսն, ընդ Գայիանեայ և ընդ Հռիփսիմեայ, նոքիմբք հանդերձ որ թուեցան ի թիւ վկայելոցն՝ ընդ ամենայն սպանեալսն երեսուն և եօթն մարդ։

my daughter and my child Rhipsimē and my sisters and companions. Now remember us, Lord, who 'for your name's sake die daily; we have been considered as a lamb for the slaughter. Arise and do not abandon us for your name's sake' [Ps. 43.23-24]. Give us your victory, and the evil one and his co-workers will be abased from fear of your glory."

208. Then they came forward and tore the clothes from their limbs and bound each one to four stakes. They pierced the skin of their soles and put in tubes, and by blowing they flayed the three saints alive, from their feet to their breasts.[1] They pierced their gullets and pulled out their tongues. They forced stones into their entrails, eviscerating them. And because they were still alive they then cut off their heads with a sword.[2]

209. Now those who had once come with them from the land of the Romans and had arrived together in this land of Armenia[1] were more than seventy people. But those who were put to death with the saintly ladies Gaianē and Rhipsimē, with those who were counted in the number of the martyred, altogether those killed were thirty-seven.

210 Արդ՝ ի քսան և ի վեց ամսոյն հոռի կատարեցաւ սուրբն Հռիփսիմէ դասուն սրբով, երեսուն և երեք նահատակակից ընկերօքն հանդերձ. և ի քսան և եօթն ամսոյն հոռի՝ սուրբն Գայիանէ երկու իւրովք ընկերօքն, որք ընդ նմա պատերազմեալք պսակեցան և առին զպսակն յաղթութեան։

211 Արդ՝ աւուրս վեց ի խոր տխրութեան և յանհնարին տրտմութեան կացեալ թագաւորն առ անձուկ սիրոյ գեղոյն Հռիփսիմեայ. ապա յետ այսորիկ ժամ տուեալ որսոյ՝ ամենայն զօրաց ածել կուտել զպառականն, խուճապական սփռեալ, երագագ տուեալ, թակարդ ձգեալ, կամեցեալ որս առնել, երթեալ ի դաշտն Փառական Շեմակաց։

212 Այն ինչ ի կառս ելեալ կամէր թագաւորն ըստ քաղաքն ելանել՝ անդէն վաղվաղակի պատուհաս ի Տեառնէ ի վերայ հասանէր. և հարեալ զթագաւորն այսոյն պղծութեան՝ ի կառացն ի վայր կործանէր։ Եւ անդէն մոլեգնել սկսաւ, և իւրովի ուտել զիւր մարմինն. նա և ըստ նմանութեանն Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց, ելեալ ըստ մարդկային բնութիւնս արտաքս՝ ի նմանութիւն վայրենի խոզաց, իբրև զնոսա ընդ նոսա ի մէջ նոցա երթեալ բնակէր։ Եւ այնուհետև մտեալ յեղէգն, խոտաճարակ լեալ անհնարին անզգայութեամբ, մերկ զանձն ընդ դաշտան

210. So on the twenty-sixth of the month Hori[1] saint Rhipsimē died with the holy company of thirty-three[2] fellow-martyrs; and on the twenty-seventh of the month of Hori saint Gaianē with her two companions, who with her fought the fight and were crowned and received the palm of victory [cf. II Tim. 4.7-8].

[Chapter 6. Punishment falls on Trdat and the Armenians; Gregory is rescued]

211. The king spent six days in profound grief and deep mourning because of his passionate love for the beautiful Rhipsimē. Then afterwards he arranged to go hunting; he had his soldiers gather the pack of hounds, the beaters scattered, the nets fixed, and the traps set;[1] then he went out to hunt in the plain of *P'aṙakan Shemak.*[2]

212. But when the king, having mounted his chariot, was about to leave the city, then suddenly there fell on him punishment from the Lord. An impure demon struck the king and knocked him down from his chariot. Then he began to rave and to eat his own flesh. And in the likeness of Nebuchadnezzar, king of Babylon, he lost his human nature for the likeness of wild pigs and went about like them and dwelt among them [cf. Dan. 4.12-13].[1] Then entering a reedy place, in senseless abandon he pastured on grass,[2] and wallowed[3] naked in the plain.

կոծելով։ Զի թէպէտ կամեցան արգելուլ անդէն ի քաղաքին՝ ոչ կարացին. մի՝ վասն ընական ուժոյն, և մի՝ վասն զի էր և ոյժն զիւաց որ ի նմայն հարեալ էին։

213 Նա և ամենայն մարդիկն որ ի քաղաքին էին՝ նոյն օրինակ դիւարախք մոլեգնէին. և անհնարին կործանումն ի վերայ աշխարհին հասանէր։ Եւ ամենայն ընտանիք թագաւորին, ծառայք և սպասաւորք առ հասարակ, հարուածովք հարեալք լինէին. և անհնարին սուգ վասն հարուածոցն լինէր։

214 Յայնմ ժամանակի տեսիլ երևեալ յԱստուծոյ ի վերայ քեռ թագաւորին, որոյ անուն էր Խոսրովիդուխտ։ Արդ՝ եկեալ խօսէր ընդ մարդկանն, պատմէր զտեսիլն և ասէր. «Տեսիլ երևեցաւ ինձ յայսմ գիշերի. այր մի ի նմանութիւն լուսոյ եկեալ՝ պատմեաց ինձ, եթէ «Ոչ այլ ինչ գոյ բժշկութիւն հարուածոցդ, որ եկին հասին ի վերայ ձեր՝ եթէ ոչ յղեսջիք դուք ի քաղաքն յԱրտաշատ, ածել անտի զկապեալն Գրիգորիոս. նա եկեալ ուսուսցէ ձեզ դեղ ցաւոցդ բժշկութեան»։

215 Արդ՝ իբրև լուան մարդիկն՝ սկսան ծիծաղել զբանիւքն զոր ասաց. սկսան խօսել ընդ նմա և ասեն. «Եւ դու ուրեմն մոլեգնեցար. դև ուրեմն հարաւ ի քեզ։ Զիարդ է, զի այս հնգետասան ամ է, զի ընկեցին զնա յանհնարին խոր

For although they wished to restrain him in the city, they were unable to do so, partly because of his natural strength and partly because of the force of the demons who had possessed him.

213. Likewise all the populace in the city went mad through similar demon-possession. And terrible ruin fell upon the country. All the king's household, including slaves and servants, were afflicted with torments. And there was terrible mourning on account of these afflictions.

214. Then there appeared a vision from God to the king's sister, whose name was Khosrovidukht.[1] So she came to speak with the people and related the vision, saying: "A vision appeared to me this night. A man in the likeness of light came and told me 'there is no other cure for these torments that have come upon you, unless you send to the city of Artashat and bring thence the prisoner Gregory. When he comes he will teach you the remedy for your ills.' "

215. When the populace heard this they began to mock at her words. They began to say: "You too then are mad. Some demon has possessed you. How is it, because it is fifteen years[1] since they threw him into the terribly deep

վիրապն, և դու տես եթէ կենդանի է. արդ և ոսկերոտին իսկ ուր իցեն. զի նոյն օրին, իբրև իջուցին զնա անդր՝ յօձիցն իսկ տեսլենէն նոյնժամայն սատակեալ իցէ»։

216 Իսկ կրկնեաց դարձեալ ես կնոջն զնոյն տեսիլ, և հնգկնեաց սպառնալեօք, զի եթէ ոչ պատմեսցէ ստէպ ստէպ՝ մեծամեծ տանջանս ընկալցի, և հարուածք մարդկան և թագաւորին ես քան զես սաստկասցին մահու և պէսպէս տանջանօք։ Եւ մտեալ անդրէն Խոսրովիդուխտն՝ մեծաւ երկիւղիւ և զգուշութեամբ ասաց զբանսն հրեշտակին։

217 Իսկ նորա վաղվաղակի յղէին անդր նախարար զոմն աւագ, որոյ անուն Օտայ կոչէր։ Եւ գնաց նա ի քաղաքն Արտաշատ՝ հանել զնա ի խոր բանդէ վիրապին։ Արդ՝ իբրև եկն եհաս Օտայն ի քաղաքն յԱրտաշատ՝ ընդ առաջ ելանէին նմա քաղաքացիքն՝ հարցանել զպատճառս գալոյն։ Եւ նա ասէ ցնոսա, թէ «Վասն կապելոյն Գրիգորի եկեալ եմ, տանել զնա»։ Իսկ նոքա զարմացեալ առ հասարակ ասէին. «Ո՞ գիտէ թէ կայցէ. զի բազում ամք են, զի ընկեցին զնա անդր»։ Իսկ նա պատմեաց զիրս տեսլեանն և զգործն զինչ եղեն իսկ։

218 Եւ եկին բերին կարս պարանաց երկայնս և ստուարս, և կցեցին իջուցին ի ներքս։ Աղաղակեաց Օտայ նախարարն ի ձայն մեծ և

pit, that you say he is alive? Where would even his bones be? For on the same day when they put him down there, he would have immediately dropped dead at the very sight of the snakes."

216. But the princess had the same vision again, five times,[1] with threats that unless she reported it immediately she would suffer great torments and the afflictions of the people and of the king would become even worse, with death and various tortures. So Khosrovidukht came forward again in great fear and hesitation, and told the angel's[2] words.

217. Then they straightway sent there a noble prince, whose name was Awtay.[1] He went to the city of Artashat in order to bring him out of the dungeon and deep pit. Now when Awtay arrived at the city of Artashat, the citizens came out to meet him to ask the reason for his coming. He told them: "I have come to take away the prisoner Gregory." But they were amazed and all said: "Who knows if he is there? For it is many years since they threw him there." But he related to them the details of the vision and everything that had happened.

218. So they went and brought long, thick, strong ropes, which they attached and let down inside; Awtay the prince shouted with a loud voice and

ասէ. «Գրիգորիոս, եթէ կայցես ուրեք՝ ե՛կ ի դուրս. զի տէր Աստուածն քո, զոր պաշտէիրն դու՝ Նա հրամայեաց հանել զքեզ այտի»։ Եւ անդէն յոտն կացեալ՝ վաղվաղակի շարժեաց զպարանն, և բուռն հարեալ ունէր։

219 Իսկ սոցա գիտացեալ՝ ձգեալ հանին զնա ի վեր, և տեսին զի թխացեալ էր մարմին նորա իբրև զածուխ սևացեալ. և անդէն հանդերձս մատուցեալ զգեցուցին Նմա, և խնդութեամբ առին դնացին յԱրտաշատ քաղաքէ, տանել ի վաղարշապատ քաղաք։ Ցայնմ ժամանակի առ վտանգի տարակուսի ցաւոցն՝ ելեալ թագաւորն յերամէ խոզիցն՝ դիւին առեալ ածէր ընդ առաջ նորա մերկ խայտառակ։ Եւ Նախարարքն արտաքոյ քաղաքին սպասէին նոցա։

220 Արդ՝ իբրև տեսանէին զնոսա ի բացէ, զի գային Գրիգորիոս Օտայիւն հանդերձ, և այլ բազում մարդիկ, որ գային ընդ նոսա յԱրտաշատ քաղաքէ՝ ընդ առաջ խաղացեալ, մոլեգնելով և ուտելով զմարմինս իւրեանց՝ դիւահարէին և փրփրէին առաջի նորա։

221 Իսկ Նա վաղվաղակի ծունր եդեալ յաղօթս կայր, և նոքա անդրէն ի զգաստութիւն դառնային։ Եւ նա անդէն հրամայեաց, զի արկցեն զանձամբք իւրեանց հանդերձս և ծածկեսցեն զամօթ իւրեանց։ Եւ մատուցեալ թագաւորն և Նախարարքն՝ բուռն հարեալ ունէին զո-

said: "Gregory, if you are somewhere down there,[1] come out [cf. Jn. 11.43]. For the Lord your God whom you worshiped has commanded that you be brought forth." Then he stood up, and straightway moved the rope and shook it strongly.

219. When they felt this they pulled him up; and they saw that his body was blackened like coal [cf. Job 30.30]. Then they brought clothing and dressed him, and joyfully took him from the city of Artashat and led him to Valarshapat. Then, sorely afflicted, the king left the herd of swine; led by the demon he came to meet them, naked and ignominious. And the princes waited for them outside the city.

220. Now when they saw afar off Gregory coming with Awtay and many other men coming with them from Artashat, they ran to meet them, raving and eating their own flesh, possessed and foaming [cf. Mk. 9.19].

221. Then he immediately knelt in prayer, and they returned to sobriety. He then commanded that they cover their bodies with clothes and hide their shame. The king and the princes approached, took hold of

տից սրբոյն Գրիգորի և ասէին. «Խնդրեմք ի քէն, թող մեզ զյանցումն մեր, զոր մեք ընդ քեզ արարաք»։

222 Իսկ նա մատուցեալ կանգնեաց զնոսա ի գետնոյ անտի և ասէ. «Ես մարդ եմ իբրև զձեզ, և մարմին ունիմ իբրև զձերդ. բայց դուք ծաներուք զձեր արարիչն, որոյ զերկինս և զերկիր արարեալ է, զարեգակն և զլուսին և զաստեղս, զծով և զցամաք. և նա կարող է զձեզ բժշկել»։

223 Իսկ անդէն սկսաւ հարցանել Գրիգորիոս, թէ ուր եդեալ են մարմինք վկայիցն Աստուծոյ։ Իսկ նոքա ասեն, թէ «Զորոց վկայից ասես»։ Եւ նա ասէ. «Որ վասն Աստուծոյն մեռան ի ձէնջ»։ Իսկ նոցա ցուցեալ նմա զտեղիսն։ Իսկ նա ընթացեալ ժողովել և ամփոփել զմարմինս նոցա ի սպանման տեղեացն, զի կային անդէն։ Եւ տեսին զի զօրութեանն Աստուծոյ պահեալ էր զմարմինս նոցա. զի այն ինն աւուր և ինն գիշեր, զի արտաքոյ ընկեցեալ կային մարմինք նոցա, զի ոչ գազանի էր մատուցեալ և ոչ շան, քանզի անդէն շուրջ զքաղաքաւն էին, մօտ ի քաղաքն. և ոչ հաւուց փտասեալ ևս էր նոցա. և ոչ հոտեալ էին մարմինք նոցա։

224 Իսկ նոքա բերին հանդերձս սուրբս պատանաց. բայց երանելին Գրիգորիոս ոչ արժանի համարէր զպատանսն բերեալս թագաւորին, կամ զայլոց մարդկանն. այլ իւրաքանչիւր պատառ-

saint Gregory's feet and said: "We beg you, forgive us the crime that we committed against you."

222. Then he came forward and raised them from the ground and said: "I am a man like you [cf. Acts 10.26], and I have a body like yours. But do you recognize your creator, who made heaven and earth, the sun and moon and stars, the sea and the dry land. He is able to heal you."

223. Then Gregory began to ask them where the bodies of the martyrs of God had been placed. They said: "Of what martyrs are you speaking?" He replied: "Those who died at your hands for their God." Then they showed him the places. And he hastened to bring together their bodies from the places where they had been killed, for they were still lying there, and to enshroud them. And they saw that the power of God had preserved their bodies; for it was the ninth day and ninth night that their bodies had been lying outside and no animal or dog had approached, although they were around the city near to it; nor had any bird harmed them, nor did their bodies stink [cf. Jn. 11.39].[1]

224. Then they brought clean clothes for shrouds. But blessed Gregory did not consider the shrouds brought by the king worthy, nor those of other people. But

տուն հանդերձիւն պատէր զսուրբսն. «Առ անգամ մի, ասէ, մինչև լիջիք դուք արժանի պատել զմարմինս նոցա»: Եւ ամփոփեաց, առ գնաց ի հնձանն, ուր վանքն իսկ լեալ էին նոցա. և իւր իսկ վանս անդէն կալեալ՝ օթեվանս առնէր: Եւ երանելին Գրիգորիոս զցայգն ամենայն առ Աստուած աղօթս մատուցանէր վասն նոցա փրկութեան, և խնդրուածս առնէր, զի դարձցին և ապաշխարութեան հնարս գտանել մարթասցեն:

225 Եւ ի վաղիւ անդր թագաւորն և նախարարքն և մեծամեծ աւագանին խառնաղանճ ամբոխիւն բազմութեամբ եկեալ ի ծունր իջեալ առաջի սրբոյն Գրիգորի և առաջի սուրբ ոսկերաց վկայիցն Աստուծոյ՝ խնդրէին և ասէին. «Թո՛ղ մեզ զամենայն յանցումն չարեացն, զոր մեք ընդ քեզ արարաք. և խնդրեա՛ դու վասն մեր յԱստուծոյ քումմէ, զի մի՛ կորիցուք»:

226 Իսկ կապեալն Գրիգորիոս անդէն խօսել սկսաւ և ասէ. «Որ ասէքդ, թէ «Աստուած քո»՝ Աստուած է և Արարիչ, ամենազօր կամական բարերարութեամբն յանուստեք յաննիւթոյ զնիւթական արարածս գոյացոյց. նոյն ինքն էական զօրութեամբն յանտեղեաց, յանվայր յոչընչէ իմեքէ հրամայեաց հաստատել երկրի. որ զամենայն ինչ արար՝ Աստուածն ամենակալ, ամենարարն, ամենատէրն: Զնա ծաներուք, զի բժշկեսցին ձեր ցաւքդ յանցանաց ի պատուհասէ

he wrapped each saint in her torn clothing. "For a while," he said, "until you are worthy to wrap their bodies." And he enshrouded them and took them to the vat-store, where they had had their lodging, and he made it his own dwelling-place. Then blessed Gregory prayed all night to God for their (the Armenians') salvation, and begged that they might be converted and find a way to repentance.

225. In the morning the king and the princes and the great magnates and the common people came in a great crowd and knelt before saint Gregory and before the holy bones of God's martyrs, and begged: "Forgive us all the evil crimes that we have committed against you. And beg your God on our behalf that we perish not."

[Chapter 7. Gregory's sermons
*A. Gregory's preliminary exhortations*]

226. Then the prisoner Gregory began to speak: "The one you call 'your God' is God and creator, who in his almighty benevolence has brought material creatures into being from immaterial nothing [cf. II Macc. 7.28; Rom. 4.17]. The same ordered the earth to be established by his essential power from uncircumscribed, boundless nothing.[1] He who created everything is the almighty, all-creative and all-loving God. Recognize him, in order that your pains from the punishment of your crimes may be healed.

*այտի։ Որ վասն խորոյ մարդասէր ողորմութեանն խրատեաց զձեզ, ըստ բանի աստուածական Իմաստութեանն, որպէս ասաց իսկ, թէ «Զոր սիրէ Տէր՝ խրատէ. գանալից առնէ զորդի՝ զոր յակն առնու»։ Իսկ նա բարերարութեամբ իւրով կոչէ զձեզ յորդեգրութիւն։*

227 *«Իսկ ճշմարիտ Որդին Աստուծոյ ոչ ամօթ համարի զայնոսիկ իւր եղբարս անուանել, որք դաձցին յերկրպագութիւն Հօր։ Եւ Հոգին սուրբ շնորհեաց ձեզ զառհաւատչեայ սիրոյն իւրոյ, զուարճացուցանել զսիրտս ձեր յուրախութիւն որ ոչն անցանէ. բայց միայն եթէ դարձջիք և ըստ կամաց նորա գնասջիք, տացէ ձեզ զանմահութիւն կենաց։*

228 *«Այլ զի կոչեցէք «Աստուած քո»՝ բարիոք ասացէք. քանզի որք ճանաչեն զնա՝ նա նոցա Աստուած է։ Իսկ որք ոչն ճանաչեն, թէպէտ և են նորա արարածք՝ օտար են ի խնամոց և ի սիրոյ մարդասիրութենէ անտի նորա. իսկ երկիւղածք նորա մերձ են առ նա, և այցելութիւն նորա շուրջ է զնոքօք, և պահէ զնոսա։*

229 *«Իսկ թերևս ասիցես դու, թէ ո՞ւր պահէ զերկիւղածս իւր. զի որ ի ձեռս մեր անկան՝ չարչարեցան և մեռան, և մեք ըստ կամաց մերոց դատեցաք զնոսա։ Տե՛ս զի կամեցաւ Աստուած զհանգիստ մահու մարդկան, և ի միւանգամ գալստեան փառացն երևեցուցանէ՝ տալ*

He warned you in his benevolent mercy according to the saying of the divine Wisdom: 'Whom God loves he warns; he castigates the son for whom he cares' [Prov. 3.12; 13.24; Heb. 12.6]. Now in his benevolence he summons you to adoption [cf. Eph. 1.5].

227. "The true Son of God considers it no shame to call his brothers [cf. Heb. 2.11] those who will turn to the worship of the Father. And the holy Spirit will grant you the pledge of his love [cf. II Cor. 1.22], and awaken your hearts to the joy which passes not away. But only if you turn and walk according to his desires will he give you eternal life.

228. "But in saying 'your God' you spoke well, because for those who recognize him he is their God [cf. Heb. 11.16]. But for those who do not recognize him, even though they are his creatures, they are estranged from his care and from his benevolent love. But those who fear him are near to him [cf. Ps. 84.10], and his providence surrounds them and guards them [cf. Ps. 33.8].

229. "But perhaps you[1] will say: 'Where does he guard his worshippers? For those who fell into our hands were tortured and killed, and we judged them according to our own desires.' See that God desired the repose of death for men, and at his second and glorious coming he will reveal [cf. Acts 3.20] and give

զքարիսն սիրելեաց իւրոց և այնոցիկ որ ճանաչենն և առնեն զկամս նորա։

230 «Այլ տես դու զայս, թէ զիա՞րդ զօրութեամբ աստուածութեան իւրոյ պահեաց հաստատուն զսուրբ վկայսն սիրելիսն, և ոչ նեղութիւնք բազումք երկմտեցուցին զմի ոք ի նոցանէն։ Եւ ապրեցոյց զսուրբ զերանելին Հռիփսիմէ ընկերօքն հանդերձ ի ձերոյ պղծութենէ և յանօրէնութենէ։

231 «Արդ՝ պատրանք մեքենայից թշնամւոյն, որ ի սկզբանէ իսկ խաբեցին պատրեցին զմարդիկ և կորստական ճանապարհացն ուղևորս հաստատեցին։ Եւ կամ զիմ իսկ զանարժանութիւնս, զի ո՞րպէս բարերարութեամբն իւրով արժանի արար պատրաստել զիս՝ չարչարել վասն անուան իւրոյ մեծի. և ետ ինձ համբերել, զի հասուցէ զիս ի վիճակսն երկնաւորս, որպէս ասաց իսկ մեծ առաքեալն Պաւղոս, զոր հասցէ ձեզ ճանաչել, և ի նմին իսկ և ի նորուն բանս վայելել մարդասիրութեամբն Քրիստոսի, թէ «Օրհնեալ է այն, որ արժանիս արար զմեզ՝ հասանել ի մասն ժառանգութեան սրբոցն ի լոյս»։ Եւ արդարև հասաք պարծանօք ի խաչն Քրիստոսի, զի չարչարանօքն Քրիստոսի վայելիցեմք ի նորա կամս և ի նորին վարդապետութեանն։

232 «Արդ՝ զնա ծանիջիք, որ զձեզ ի խաւարէն կոչեաց յիւր սքանչելի լոյս փառաց. մա-

blessings to his beloved and to those who recognize him and do his will.

230. "But see this, how by the power of his divinity he kept firm his beloved holy martyrs; nor did many tribulations make a single one of them lose heart. And he saved the holy and blessed Rhipsimē and her companions from your impurity and impiety.

231. "Now (see how) the deceit of the enemy's machinations, which from the beginning beguiled and deceived men [cf. Eph. 4.14], made them travelers on the path to destruction. Or (see) my unworthiness, and how by his benevolence he made me worthy and prepared me to suffer for his great name's sake. And he gave me endurance, to bring me to the heavenly inheritance, as the great apostle Paul said [cf. Acts 26.18; Col. 1.12] —whom you could recognize and at whose words you could rejoice through the benevolence of Christ: 'Blessed is he who made us worthy to attain the portion of the inheritance[1] of the saints in light [cf. Acts 20.32; Eph. 1.18; Col. 1.12; Heb. 11.8]. And truly we have attained gloriously the cross of Christ, that by the passion of Christ we may enjoy his will and his teaching.

232. "Now recognize him who called you from darkness to the wonderful light of his glory [cf. I Pet. 2.9].

*տիջի՛ք առաջի աթոռոյ շնորհաց նորա, և գտջիք զողորմութիւն ի նմանէ. և ի բաց թօթափեսջիք զամենայն աղտ չարեաց անօրէնութեան. լուա-ջի՛ք զանձինս ձեր կենդանի ջրովն, և զփառաց լուսոյ զպատմուճանն արժանի լինիջիք զգենուլ յանձինս ձեր։*

233 *«Այլ վասն սրբոյն Հռիփսիմեայ դուք իսկ ինքնին գիտէք, թէ ո՛րպէս պահեաց զնա Տէր և ապրեցոյց ի ձեռաց ձերոց, ի պղծու-թենէ անօրէնութեան։ Եւ դու ինքնին գի-տես զչափ քաջութեան ուժոյ պնդութեան ոս-կերաց քոց. զիա՞րդ եղեր տկարացեալ առաջի աղջկան միոջ. զի պահեաց զնա զօրութիւն ամե-նատեսուն Քրիստոսի։ Իսկ վասն իմ դու իսկ գի-տես, զի հնգետասան ամ է իմ՝ զի կայի ես ի խաւարչուտ ի խոր յանհնարին վիրապին. ի մէջ օձիցն էր բնակութիւն իմ, և վասն անհին Տեառն ոչ՛ երբէք մեղան ինձ. և ոչ զարհուրեցայ ի նո-ցանէ, և ոչ երկեաւ սիրտ իմ. զի յուսացեալ էի ի տէր Աստուած արարիչ ամենայնի։*

234 *«Այլ վասն այսորիկ գիտեմ, զի տգի-տութեամբ արարէք զոր ինչ արարէքն։ Բայց արդ՝ դարձարո՛ւք և ծաներո՛ւք զՏէր, զի ողոր-մեսցի և կեցուսցէ զձեզ. և զսպանեալ կենդա-նիսն բարեխօս արարէք. զի կենդանիք են և չեն մեռեալք. և ծաներո՛ւք զԱստուած, զի նա ինքն է Տէր ամենայնի. և ի բաց թողէք այսուհետև*

Approach the throne of his grace and you will obtain mercy from him [cf. Heb. 4.16]. Throw off every stain of evil lawlessness. Wash your souls with living water [cf. Heb. 10.22], and you will become worthy to clothe your souls in robes of glorious light [cf. Rom. 13.12].

233. "But as for saint Rhipsimē, you yourselves know how the Lord preserved her and saved her from your hands, from impious pollution. And you yourself know the measure of the strength and firmness of your own bones, how you became weakened in front of a single girl. For the power of the Lord of all, Christ, preserved her. And as for me, you know that for fifteen years I have been in the dark and incredibly deep pit, dwelling amidst snakes[1]—yet for fear of the Lord they never harmed me, nor was I terrified of them nor was my heart dismayed. For I hoped in the Lord God the creator of all [cf. Ps. 26.3].

234. "But this I know, that it was in ignorance that you did what you did [cf. Eph. 4.18]. Nevertheless, turn now and recognize the Lord [cf. Heb. 8.11], that he may have mercy on you and give you life. Call upon those whom you killed, but who are alive,[1] as intercessors;[2] for they are alive and are not dead. Recognize God, for he is Lord of all. Abandon henceforth

զպղծութեան պաշտամունսդ, զքարեղէն և զփայտեղէն, զարծաթեղէն և զոսկեղէն պղնձաձոյլ պատկերացդ, զի սուտ են և սնոտի։

235 «Եւ ո՛չ զայդ իսկ ասացի ձեզ վաղագոյն վասն մոլորութեանդ ձերոյ, թէ մառախուղ ստուերացն խաւարին թանձրութեան նստեալ է ի վերայ ձերոյ աչաց սրտին, ոչ կարացեալ հայել իմանալ, ածել զմտաւ, և զԱրարիչն ճանաչել։ Արդ՝ թէ ի ձէնջ ես ուղղութիւն ինչ տեսանէի՝ առ աստուածութիւնն պաշտամամբ մերձենալ՝ ոչ դադարէի զցայգ և զցերեկ աղաչել վասն ձեր, զի մի՛ կորիցէք։ Այլ վասն բազում մարդասիրութեան Արարչին, որ անքնին և անպատում է առ արարածս իւր. որ երկայնմտութեամբ ներէ թողու անսայ խնայէ. վասն բազում գթութեան իւրոյ։

236 «Որ յաւուրցն առաջնոց թոյլ ետ գնալ մարդկան ըստ կամաց իւրեանց, որպէս և ասեն իսկ. «Բարձի թողի զնոսա՝ երթալ զհետ կամաց սրտից իւրեանց։ Եւ գնացին նոքա ըստ կամս անձանց իւրեանց»։ Այլ այժմիկ սկսեալ է կոչել զձեզ յիւր փառսն և յանեղծութիւն, լինել ձեզ ժառանգաւոր յաւէժ կենդանութեանն որ ոչն անցանէ։

237 «Վասն որոյ իսկ զիւր վկայսն սիրելիս առաքեաց առ ձեզ. որք ի վկայելն իւրեանց վկայեցին զմիասնական տէրութիւնն Երրորդական՝

the foul worship of images of stone and wood, silver and gold and bronze, which are false and vain.

235. "Did I not tell you earlier[1] about your error that a fog of thick and murky darkness has settled over the eyes of your heart [cf. Is. 60.2; Ez. 34.12], so that you are unable to see, comprehend, consider or recognize the creator. Now if I were to see in you some inclination to approach the divinity piously, I would not cease to pray night and day on your behalf that you perish not. For the great benevolence of the creator towards his creatures is inscrutable and ineffable; he is long suffering in forgiving, pardoning, nourishing and caring because of his great mercy.

236. "From the first days he allowed men to walk according to their own wishes, as (scripture) says: 'I have permitted them to follow the wishes of their own hearts; and they went according to their own desires' [Ps. 80.13]. But now he has begun to call you to his own glory and incorruptibility [cf. II Tim. 1.10], for you to become heirs of the eternal life that passes not away [cf. Tit. 3.7].

237. "For that reason he sent his beloved martyrs to you; who in their martyrdom bore witness to the consubstantial majesty of the Trinity,

ընդ ամենայն ի վերայ ամենայնի զԱստուած, որ նա ինքն է յաւիտեանս յաւիտենից. արքայութիւն նորա արքայութիւն յաւիտենից, և տէրութեան նորա վախճան ոչ գոյ։ Եւ զմահն իրեանց եդին կնիք հաւատարիմ հաստատական՝ իւրեանց ճշմարտութեան հաւատոց. որոց ահաւասիկ և ճառք ի միջի ձերում պատմին. որք կենդանի են առ Աստուած և բարեխօս տօնողացն, որ մաղթեմք բարեխօս ունել զնոսա առ Աստուած։ Քանզի վասն Աստուծոյ մեռան՝ կարող են զմեռելութիւն բազմաց կենդանացուցանել։

238 «Վասն այսորիկ նոքօք հաշտեցարուք առ Աստուած, ի ձեռն մահուան Որդւոյն Աստուծոյ. վասն զի Որդին Աստուծոյ մեռաւ, զի զմեռելութիւն արարածոց կենդանացուսցէ. իսկ սոքա մեռան, զի վկայք լիցին Աստուածութեան նորա։ Եւ զի ոչ եթէ առանց իւրոյ մահուանն կենդանութիւն տալ մեզ ոչ կարէր, այլ զի մեծացուսցէ զարարածս իւրով յանարգութիւն իջանելովն. զի զանարգս բարձրացուսցէ իւրովն իբրև զմեզ լինելովն։

239 «Իսկ ոչ եթէ առանց սոցա վկայութեան չլինէր արդեօք հաւատարիմ, այլ զի մեծասցին սոքա որ սիրեցին զնա։ Եւ զմեր շունչս պահեալ ի մարմնի մերում. զի թէպէտ և հասին մեզ նեղութիւնք մարմնոյ վշտաց և անհնարին ցաւոց, աւելի տանջեալ քան զամենայն մար-

God with all and above all, who exists for all eternity. His kingdom is an eternal kingdom, and of his rule there is no end [cf. Ps. 47.15; 144.13]. They made their death a faithful and firm seal of the truth of their faith [cf. Rom. 4.11], the account of which is now being related in your midst.[1] They are alive with God and intercede for those who commemorate them;[2] we pray[3] to have their intercession with God.[4] Because they died for God they can turn the death of many into life.

238. "Therefore through them be reconciled to God by means of the death of the Son of God [cf. Rom. 5.10]. For the Son of God died to vivify the mortality of creatures [cf. Rom. 8.11]; whereas they died to become witnesses to his Godhead. Not indeed[1] that he was unable to give life without dying himself, but in order to magnify the creatures by his own descent to humility, and to elevate the humble by his becoming like us [cf. Heb. 2.17].

239. "Not indeed[1] that he could not be believed without their testimony, but that those who loved him might magnify him. And he preserved our breath in our body, although there came upon us afflictions of bodily sufferings and terrible pains. We were tormented more than any other men.

դիկ. զիա՞րդ հնար էր միօրեայ տոկալ մարդկային բնութեանս մարմնոյ այնմ անհագին վտանգի չարչարանացն։ Կամ թէ կեցցէ՞ արդեօք մարդ լոկ միօրեայ ժամանակի յանհնարին ի խոր վիրապի անդ յայնմիկ, յորում թաղեալն կայի ես ի մէջ օձիցն իբրև ի շեղջի, և եռային զմարմնովք իմովք, պատեալ կային շուրջ զինև և կայտռային զանդամովք իմովք. սակայն մեծասքանչ ողորմութիւն Տեառն պահեաց զիս կենդանի։ Եւ որում ոչ ևս էի արժանի՝ զբանս մշակութեան բժշկութեան օգտի ոգւոց և մարմնոց մշակեմք աւասիկ ի միջի ձերում. բժիշկ ոգւոց և մարմնոց ձերոց պատրաստեցաք՝ զձեր օգուտն ձեզ մատուցանել։

240 «ՅԱստուծոյ ի բարերարութենէ անտի սկսցուք զպատգամս երկնաւորս ձեզ ջամբել. զի եթէ լուիջիք բանին իրաւանց, քարոզութեան Աւետարանին, հրամանաց Արարչին ամենայնի՝ փրկեալք սրբեալք լինիջիք ի փոքր պատուհասէդ, և ի յաւիտենական կեանսն վայելեսջիք. բանին աստուածութեան լուիջիք, և զբարութիւն երկնից արքայութեանն յանձինս ձեր ընկալջիք։

241 «Միայն թէ յակամայ տգիտութենէ մեղացդ, ի քարապաշտ ի փայտապաշտութենէդ սրբեալ լիջիք, և զանճառ բարիսն Աստուծոյ յանձինս ձեր ընդունել մարթասջիք. ապա և սուրբ վկայքն Աստուծոյ, զոր դուքն չարչարե-

How was it possible for human bodily nature to endure for one day the fearful severity of those tortures? Or how could a man live for a single day in that terribly deep pit in which I was buried amidst piles of snakes that swarmed around my body and wrapped themselves around me and crawled over my limbs? But the wonderful mercy of the Lord preserved me alive. And of what I was previously unworthy, behold we now serve among you words of healing labor and profit for souls and bodies. We have been made the doctor[2] of your souls and bodies to offer you help.

240. "By the benevolence of God let us begin to nourish you with heavenly words [cf. Ez. 3.2]. For if you will listen to the word of truth, the message of the gospel and the commands of the creator of all, you will be delivered and cleansed from your minor punishment and you will enjoy eternal life. Hear the divine word, and you will receive in your souls the blessing of the kingdom of heaven [cf. Heb. 12.28].

241. "Only if you are cleansed of the unwilling ignorance of your sins, from the worship of stones and wood, will you be able to receive in your souls the ineffable blessings of God. Then the holy martyrs of God, whom you tortured,

ցէք՝ վասն ձեր և նոքա բարեխօսութիւն կարեն մատուցանել. և մեր բանքս և ճառքս և ջանս և վաստակս ձեզ յօգուտ սերմանեսցի. բարեկեաց շատակեաց կենօք զձեզ յերկրի վայելեցուսցէ, և յերկինս հանդերձեալ կենացն զձեզ ժառանգորդս արասցէ։

242 «Ապա եթէ ոչ կամիցիք լսել քարոզութեան բանին կենաց՝ աստէն հարեալ վրիժուքն չարաչար հարուածովք զձեզ սատակեսցէ, և ի ձեռն օտար թշնամեաց զձեզ դատեսցի, և միանգամայն իսկ զքէն վրիժուցն հանեալ՝ ի մահ զձեզ մատնիցէ»։

243 Եւ իբրև խօսեցաւ երանելին Գրիգորիոս զայս ամենայն՝ առ հասարակ զձեռս զօձիւք արկեալ՝ զպատմուճանսն պատառէին. թագաւորն և նախարարքն, և այլ բազմութիւն մարդկանն իջեալ ի գետին ընդ մոխիր թաւալեալ՝ ասէին առ հասարակ իբրև ընդ մի բերան. «Արդ կայցէ՞ ինչ մեզ յոյս թողութեան յԱստուծոյ. զի մեք կորուսեալ էաք ի սգիտութեան մերում և ի խաւարային ճանապարհս. արդ՝ իցէ՞ թէ թողցին մեղքս այս մեր բազումք»։

244 Եւ պատասխանի Գրիգորիոս և ասէ «Մարդասէր է Տէր, երկայնամիտ և բազումողորմ է. գթած առ ամենեսեան որ կարդան առ նա, և որ խնդրեն ի նմանէ՝ թողուլ նոցա»։

245 Իսկ նոքա ասէին, թէ «Ծանո՛ մեզ, և

will be able to offer intercession on your behalf; and our words and discourses and effort and labor will be sown as profit for you, they will let you enjoy on earth long and happy lives, and make you heirs in heaven to eternal life [cf. Tit. 3.7].

242. "But if you refuse to hear the preaching of the word of life, then he will strike and kill you with vengeful and cruel blows, and he will judge you by means of foreign enemies, and also taking revenge on you will bring you to death."

243. When blessed Gregory had said all this, they all together put their hands to their collars[1] and tore their garments [cf. I Macc. 4.39]. The king and the princes and the rest of the multitude of the populace fell to the ground and rolled in ashes and said together as with one mouth: "Now have we any hope of forgiveness from God? For we were lost in our ignorance on the path of darkness [cf. Eph. 4.18]. Can now these many sins of ours be forgiven?"

244. Gregory replied, saying: "God is benevolent, long-suffering and very merciful [cf. Ps. 85.15; 102.8; 144.8]. He is kind to all those who invoke him [cf. Ps. 144.18] and he forgives[1] those who beseech him."

245. Then they said: "Inform us and

հաստատեա՛ զմիտս մեր, զի մարթասցուք աղաչել զերեսս Արարչին մերոյ զոր ոչն գիտէաք. եթէ դարձեալ արդարև դարձցի՞ և ընկալցի՞ զմեզ յապաշխարութիւն. և կայցէ՞ ևս տեղի դարձի, և չիցէ՞ արդեօք հատեալ յոյս կենաց մերոց ի Նմանէն, կամ դու արդեօք ո՞չ յիշեսցես զչարիսն, զոր մեք ընդ քեզ արարաք. և տայցե՞ս մեզ զուղիղ վարդապետութիւն, և ո՞չ կալեալ ընդ մեզ ոխս, և ո՞չ չարակնիցես զմեզ, և ո՞չ արկանիցես զմեզ յարդարև յուղիղ ճանապարհէն»։

246 Եւ առ հասարակ գոչիւն բարձեալ մարդկանն ի գոչիւն լալոյ թագաւորաւն հանդերձ՝ ամենայն մարդիկն անկեալ թաւալէին առաջի նորա. զի սակաւիկ մի ոչ կարէին մեկնել ի նմանէ, վասն անհնարին հարուածոցն բարկութեան դիւացամոլ տանջանացն։ Զի թէ լինէին երբեք ուրեք մեկնեալ ի նմանէ՝ անդէն դիւացն ի վերայ հասեալ զայրագնեցուցանէին, անդէն իւրեանց ատամամբքն ուտել մարդկան զմարմինս իւրեանց։

247 Արդ՝ իբրև լուաւ սուրբն Գրիգորիոս զայս ամենայն բանս զոր խօսեցան նոքա առաջի նորա, իսկ նա յարտասուս հարեալ ասէ ցնոսա. «Դուք ինքնին գիտէք զայն ամենայն չարիս, զոր դուքն ընդ իս արարէք. զիա՞րդ կարիցէ մարդ տոկալ յայնչափ չարչարանաց վերայ, կամ

confirm our minds that we may be able to appeal to the face of our creator whom we did not know,[1] if he will turn and accept our repentance and if there is still opportunity for conversion; or has he not already cut off our hope of life [cf. Eph. 4.19]? Do you not remember the crimes which we did to you, and will you give us true teaching, and not hold rancor against us nor regard us with antipathy nor hinder us from the true road?"

246. And all the populace raised a cry and the king wept too, and they all fell and rolled before him [cf. III Macc. 5.28]. For they could not bear to be separated from him even for a moment because of the terrible torments inflicted by the demons. For if they ever went away from him a little, then the demons pounced on them and made them mad, so that the people ate their own flesh with their own teeth.

247. When saint Gregory heard all these words that they had spoken before him, he wept and said to them: "You yourselves know all the crimes which you did to me. How could a man endure so many tortures, or

գո՞յր հնար տոկալ ժամ մի՝ լոկ ի տեսլենէ օձի միոջ բացուստ ի բաց, թո՛ղ թէ ի մէջ բազմութեան օձիցն լինել ամս հնգետասան, և ողջ ապրել, և տոկալ և բնակել ևս հանապազ ի մէջ նոցա։

248 «Նախ յայդմ իսկ տեսէք զզօրութիւն Արարչին. զի որ զամենայն արար՝ զիարդ և կամի, յորժամ և կամի կարող է զիւրաքանչիւր բարս փոփոխել. զի և զայն զմեղանչական զթունաւոր գազանս որ յանհնարին գբի անդ՝ ընդ իս անարժանի ընդ իւրում ծառայիս քաղցրացուցանէր։ Զի թէպէտ և մեք անարժանք էաք՝ սակայն վասն ձերոյ օգտի զմեզ պահեաց՝ երևեցոյց զիւրոց սքանչելեացն զօրութիւն. զի զմեզ պահեալ ածեալ, և ի ձեր մշակութեան գործն եկեալ, և զօգուտն զձեր բերեալ, Աստուծոյ մարդասիրութիւնն մեօք առ ձեզ կատարեսցի։

249 «Եւ կամ է՞ր արդեօք հնար աղջկան միոջ մանկամարդոյ՝ ունել զդէմ առն սկայի, որպէս տեսէք իսկ աչօք ձերովք. զիա՞րդ էր հնար այդմ լինել, եթէ ոչ Աստուծոյ էր տուեալ զիւրաււնս յաղթութեանն՝ պահել զիւր վկայսն անարատութեամբ ի ձերոց յանցուածոց յանօրէնութենէ։ Արդ՝ վասն մահուան այնոցիկ սրբոց երանելեացն, որոց արիւն նոցա հեղեալ յերկրի ձերում, որք արժանի եղեն աստուածութեան շնորհացն և պատարագեցան, վասն

be able to bear for even one hour the mere sight of a snake from afar, let alone dwell in the midst of a mass of snakes for fifteen years and survive unscathed and continue to live among them?

248. "So in this first of all you see the power of the creator. For he who made everything just as he wished, whenever he wishes he can change each thing's character. For those harmful and poisonous animals which were in the terrible pit with me, his unworthy servant, he mollified. Although we were unworthy, nonetheless he preserved us for your benefit and revealed the power of his miracles, in order that by preserving us and bringing us to the task of your education and your benefit, the benevolence of God might be fulfilled through us towards you.

249. "Was it really possible for a single young girl to resist a giant, as you saw with your own eyes? How could this have happened, unless God had given the right of victory in order to save his martyrs without spot from your iniquitous impiety? So now, on account of the death of these blessed saints, whose blood was poured on your land and who became worthy of divine grace and were sacrificed,

որոյ և ձեզ այց և խնդիր եղեալ Հայաստան աշխարհիս. վասն նոցա արդար արեանն հեղլոյ և ձեզ քաւութիւն շնորհի աւադիկ ձերով ապաշխարութեամբդ յամենապարգևէն Աստուծոյ։

250 Իսկ վասն իմ՝ արդեօք ես ո՞չ էի ի հրամանէ Աստուծոյ ձեզ քարոզ, այլ ի կամս մտա՞ց իմոց. և զի՞րդ հնար էր այնմ լինել։ Իսկ արդ գո՞յր ինձ արդեօք հնար իշխանութեան՝ իշխել բան մի ի ձէնջ թաքուցանել, թող թէ հրաման առեալ յԱստուծոյ։ Զի և ես ի խոր վիրապի անդ զամենայն օր տեսիլ տեսեալ աչօք բացօք զհրեշտակ Աստուծոյ, զի հանապազ քաջալերէր զիս և ասէր, որպէս և այժմ իսկ զնոյն տեսիլ տեսանեմ, որ ասէ ցիս, թէ «Քաջալերեա՛ց, պինդ կաց, զի տէր Աստուած պահեաց զքեզ և արժանի համարեցաւ արքանեկութեան իւրոյ. և ետ քեզ զգործս մշակութեան իւրոյ, զի և դու ընդ այլ մշակսն մտեալ՝ վարձս առցես զանապական պարգևացն Քրիստոսի»։

251 «Զի և ձեր իսկ արկեալ զիս ի խոր վիրապն, յանհնարին տեղին մահուան, և ելեալ անտի ողջանդամ կամօքն Աստուծոյ։ Իբրև ոչ եթէ զայս ասելով՝ անձինս պարծանս տամ, այլ զի ոչ իսկ հնար է թաքուցանել զսքանչելիսն Աստուծոյ. քանզի ոչ իսկ թաքչի, այլ պատմի։ Վասն զի զիս ապրեցոյց ի մահուանէ, որ յաչս ձեր մեռեալ համարեալ էի, որպէս և դուք իսկ

therefore[1] you have been visited and this land of Armenia has been heeded. Behold, by the all-bountiful God you are granted propitiation for the shedding of their just blood through this repentance of yours.

250. "But as for me, was I a preacher to you not by God's command, but at my own decision? How could this be? Did I really have the power to hide anything from you, especially if I had been commanded by God? For in the deep pit every day I saw a vision with eyes wide open: an angel of God continually encouraged me and said—just as I see the same vision now, saying: 'Be of good cheer, be firm,[1] for the Lord God has preserved you and considered you worthy of his service; he has entrusted you with the task of his labor, that you and the other laborers may enter and receive as reward the incorruptible gifts of Christ [cf. Matt. 20].'[2]

251. "For you indeed threw me into the deep pit, that fearful place of death, from which by the will of God I emerged safe and sound. I say this not in order to boast of myself, but because it is impossible to hide God's miracles; they are not to be hidden but related [cf. Tobit 12.7]. For he saved me from death—and in your eyes I was considered dead, as you

ձեզէն վկայէք ինձ. և դուք զի մեռեալ էիք ի մեղս ձեր՝ անհաւաղիկ մեռեալքդ ի ձեռն մեռելոյս կենդանանայք։ Վասն զի տուաւ ի ձեռս իմ պատմել ձեզ զհրամանս Աստուծոյ, դարձուցանել զձեզ ի ստուգութիւն, ի ճշմարտութեան ճանապարհն, և ի բաց լինել ձեզ յունայնութեան պաշտամանց անտի, ի քարեղէն, ի փայտեղէն, յարծաթագործ, ի պղնձագործ պատկերաց այտի, որ ոչ ինչ իսկ են և ոչ ումեք պիտանացու. դառնալ առ Աստուած կենդանի, որ արար զերկինս և զերկիր և զծով և զամենայն որ է ի նոսա, և ի Բան Նորա՝ յՈրդին միածին, և ի Հոգին կենդանի և կենդանարար, սրբիչ և քաւիչ երկրպագուաց և փառաւորչաց իւրոց։

252 «Իսկ եթէ զձեզ յորդոր յօժարութեամբ տեսանիցեմք դարձեալ առ աստուածութիւն անդր՝ ախորժ յօժարութեամբ սկիզբն արասցուք ձեզ պատմելոյ վասն արարչութեանցն, թէ զիարդ բարի աշխարհս ստեղծաւ ի բարերարէ անտի, թէ զիարդ վարեցան կարգք աշխարհիս. զի ոմանք ի մարդկանէ զհաճութիւն բարեացն յիւրանց կամաց կատարեցին առ Աստուած. թէ որ զչարն գործեցին՝ ստէն պատժեցան յերկրի. թէ զիարդ եկն Որդին Աստուծոյ մարմնով յաշխարհ անարգութեամբ. թէ զիարդ գալոց է ի վախճանի նովին մարմնով և փառօք Հօր, և վասն լինելոց բարեացն և հանդերձեալ դատաստանին.

yourselves bear me witness. And you who were dead in your sins [cf. Eph. 2.1; Col. 2.13], behold now through this dead one are brought back to life from earth. For I was entrusted with telling you of the commands of God, bringing you back to right belief, to the path of truth, and away from the vanity of idolatry, from images of stone, wood, silver or bronze, which are nothing and of no use to anyone; to turn you towards the living God who created heaven and earth and the sea and everything that is in them, and to his word, the only-begotten Son, and to the living and vivifying Spirit, the purifer and expiator of those who worship and adore him.

252. "If we see you turning towards the divinity with prompt readiness, we shall with good-will begin to expound to you the creation; how this good world was created by the benevolent one, how the orders of this world were arranged. For some men willingly fulfilled for God his good pleasure [cf. II Thess. 1.11], whereas those who did evil were punished on the earth. How the Son of God came in the flesh to the world in humility; how he will come at the end in the same body and in the glory of the Father; and about the blessings to be and the future judgment.

և թէ առ այժմ զիա՞րդ օրէն է մեզ գնալ պատուիրանօք ըստ կամացն Աստուծոյ. և թէ զիա՞րդ ապաշխարութիւն գտանել, ընդ նմին և զթողութիւն մեղաց. և թէ զիարդ զմեղուցեալսն ազխտութեամբ՝ քաւել, և ըստ կամացն Աստուծոյ փախչել ի չարէ և զբարիս գործել և խոստացելոց բարեացն հասանել. և թէ զիա՞րդ արժան է գնալ ի ճանապարհս Աստուծոյ։ Զայս ամենայն կարգաւ մի ըստ միոջէ ոճով պատմեցից, անաշխատ լեզուաւ և անհանգիստ բերանով. զի և Տէր ըստ իւրում մարդասիրութեանն ընկալցի զձեր ապաշխարութիւնդ, և դուք արժանի լիջիք մտանել ի շնորհս մարդասիրութեան ի ձեռն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

253 «Սակայն մեք ձեզ ի նկզբանցն սկիզբն արարեալ՝ սկսցուք ցուցանել զաշխարհի զարարչութիւնն, բարերարութեան բարեացն ի բարերարէն, եթէ դուք կամիցիք սրտի մտօք ունկնդիր լինել և հաւատալ։ Սակայն մեք անտուստ ի բնէ սկիզբն արասցուք պատմելոյ ձեզ նախ՝ վասն մեծի միոյ միայնոյ բարերարին, և ապա՝ եղելոցս ամենեցուն ի նմանէ։ Այլ զամենայն ի ձեր աշակերտելոցդ յօգուտ փութամք կատարել ըստ հրամանի աստուածութեանն. կարեորագոյն համարեցաք ընդ նորա և վասն նորին դիպանագոյն և նմանագոյն բանիւք զփո-

And how for the present we must walk following the commandments according to God's will; how to find repentance and therewith the forgiveness of sins; how to expiate sins committed in ignorance, and according to the will of God to flee from evil, do good works, and attain the promised blessings; how one must walk in the paths of God. All this in its proper order I shall narrate, with unwearying tongue and tireless mouth, that the Lord in his benevolence may receive your repentance and that you may be made worthy to enter into the grace of his loving kindness through our Lord Jesus Christ.[1]

253. "We shall begin from the beginning and start by showing you the creation of the world, the gracious blessings from the benevolent one, if you desire to attend sincerely and believe. But at the very beginning we shall tell you of the one and only benevolent one, and then of all the things created by him. We shall strive to complete everything for the profit of your instruction, following the divine command. We considered it of great importance to conduct our discourse about him in suitable and appropriate terms,

*խանակն թելադրել. զի վասն աստուածութեան են բանքս. քանզի գիտեմք, թէ նա է ճշմարիտ Աստուած։*

254 *«Այլ ոչ եթէ զանհաս բնութենէն կարիցէ ոք ճառել, և որպէս էն՝ զայն կարիցէ ոք պատմել. զի անհաս և անքաւ և անքաւանդակ և անքնին է, անմատոյց և անիմաց է յամենայն արարածոց, աներևոյթ ի տեսլենէ և մօտ առ ամենեսին խնամով տեսչութեամբ գթութեամբ, շնորհօք մարդասիրութեան իւրոյ. ոչ տեսաւ երբէք ի մահկանացու մարմնաւորաց, նա և ոչ ի հոգեղինաց և ի հրեղինաց զուարթնոց։ Միայն փառաւորեալ յամենայն արարածոց. քանզի ամենայն ինչ ի նմանէ է, բայց նա միայն ինքնութեամբ։*

255 *«Սակայն արք արդարք ի մարդկանէ, որ արժանի եղեն ճանաչել զարարչութիւն նորա, և երկրպագութեամբ կամացն հնազանդեալ հրամանակատարք մշտնջենականին և աստուածամերձ կենացն պատմող մարգարէք անուանեցան ի դարս առաջինս յաստուածապաշտ յազգէն Եբրայեցւոց, յԱբրահամեան զաւակէն, որ աստուածպաշտութեամբն ընտրեալ՝ ամենայն ազգաց հայր անուանեալ. զի ի գլուխ հաւատոց արդարութեան ամենեցուն ելեալ նախիցի յառաջահաւատն պարծանօք, արդարև իսկ հայր անուանեալ. յորոյ օրինակ և ծնունդքն սերեալք ի*

since we are speaking about the diety. For we know that he is the true God [cf. I Jn. 5.20].

254. "Not that anyone could speak about his incomprehensible nature or expound how he is. Because he is incomprehensible, infinite, uncircumscribed, and inscrutable; he cannot be approached or understood by any created beings; he is invisible to sight, yet near to all through his care and providential mercy and benevolent grace. He has never been seen by mortal or bodily creatures, nor by the spiritual and fiery angels. He alone is glorified by all creatures, because everything is from him, save he alone in his essence.

255. "But just men who were made worthy to know his creation, and who with reverent will obeyed and fulfilled his commandments were called prophets, tellers of the eternal and divine life, in the first ages by the pious race of Hebrews, the seed of Abraham, who was chosen for his piety and called the father of all races [Gen. 17.4], so that he might sit at the head of the just faith of all, and by the boast of being the first believer was rightly named 'father.' Likewise the generations born from

*նմանէ՝ ժողովուրդ առաջին և սեպհական անուանեալ։*

256 *«Յորոց միջի և մարգարէքն իբրև լուսաւորք աստուածապայծառ պատգամօքն ծագեցին, որք Հոգւոյն շնորհաց աստուածութեանն արժանի եղեն՝ ուսուցանել ամենեցուն զօրէնս Աստուծոյ, և զկամս և զկարգս նորուն ուղղութեան երկնաւոր հրամանացն ամենայն ուրուք առաջի դնելով, որպէս նոցուն իսկ մատեանք մարգարէութեան հաւաստեաւ պատմեն. որ յամենեցունց յօգուտ մինչ ի վախճան ընթացեալ, լի արարեալ զտիեզերս յօրինեալ ընթերցուածովքն յանդիման կացուցանել զարուեստն մարգարէական աստուածեղէն բանիցն. որպէս զի հնար լիցի ամենայն հնազանդելոցն բանից նոցա՝ զԱստուած ինքնին գլխովին յանդիման տեսանել ըստ տեսչութեանն։*

257 *Արդ՝ ի մէջ սրբոցն աստուածապաշտ գնդաց մարգարէիցն ոմն յարուցեալ մեծ մարգարէ, որոյ անուն Մովսէս կարդացեալ, արժանի եղեալ աստուածութեան շնորհացն. որոյ սկիզբն արարեալ ուսուցանելոյ յամենաստեղծ յսկզբնագործ ժամանակէն՝ աշխարհահամար աշխարհապատում մարգարէութեամբ՝ ամենեցուն աւանդեաց զճշմարիտ գիտութիւն։ Ըստ նմին օրինակի և մեր անտի սկիզբն արարեալ՝ ամենուսոյց շնորհօք Հոգւոյն բան ի գործ արաս-*

him were called the first and special people [cf. Ex. 19.5; Titus 2.14].[1]

256. "Among them the prophets arose like luminaries [cf. Phil. 2.15] with God's shining words; they were made worthy of the Spirit's divine grace to teach everyone the laws of God; everywhere they set out his will and his right order of heavenly commandments, just as their prophetic books truly narrate. Until their death they served the profit of everyone. They filled the world with ordained readings, showing forth the tenor of their prophetic and divine words, that all believers in their words might be able to see God, in his providence, face to face [cf. I Cor. 13.12].

257. "Now among the saintly and pious bands of prophets there arose one great prophet called Moses. He was made worthy of divine grace, and began teaching about the time of the first creation; by his prophecy and description of the world[1] he handed down to everyone true knowledge. Similarly, we shall begin by the omniscient grace of the Spirit to undertake

ցուք վարդապետել ձեզ, փոյթ յանձին կալեալ վասն երկուց աշխարհաց հաստատելոց ի բարեբարէն Աստուծոյ, վասն սկզբան և կատարածի, վասն անցաւորիս և վասն յաւիտենական մշտընջենաւորին։ Մեզ տացին բանք ի բերան, մեզ՝ ցուցանել զօգուտն, և ձեզ՝ լսել, ընդունել և հաւատալ, և քակել ի սատանայական գործոց չարութենէ, և աստուածամուխ կենացն լինել ժառանգորդ։

258 «Արդ՝ սկսցուք շնորհօքն Քրիստոսի ձեզ պատմել մի ըստ միոջէ մանրապատում նշանակօք, և դուք ունկնդիր եղեալ սրտի մտօք լուիջիք»։

your instruction, taking note of the two worlds created by benevolent God, of the beginning and the end, of this transitory one and the eternal everlasting one. May words be placed in our mouth for us to indicate what is profitable. It is for you to listen, to receive and to believe, to break away from your satanic and evil deeds and to become heirs of divine life.

258. "So let us begin by the grace of Christ to relate to you in order with detailed indications. And do you attend and sincerely pay heed."[1]

### [*B. The Teaching of Saint Gregory (§259-715)*]

# ԴԱՐՁ ՓՐԿՈՒԹԵԱՆ ԱՇԽԱՐՀԻՍ ՀԱՅԱՍՏԱՆ

## ԸՆԴ ՁԵՌՆ ԱՌՆ ՍՐԲՈՅ ՆԱՀԱՏԱԿԻ

716 *Արդ՝ եկա՛յք, եղբա՛րք, զօգուտն վասն հասարակաց շինութեան փութացուցուք. զի և ի ձէնջ պատուհասքդ վերասցին, և լիցի ի խռովութենէդ հանելոյ վաղվաղակի խաղաղութիւն, և ի գերեալ մոլորութեանցդ՝ դարձ փրկութեան։ Այլ ես զամենայն պատգամս Աստուածութեանն կարգեցի և եդի ի լսելիս ձեր առ հասարակ, ոչ թաքուցեալ զօգուտն. ի սկզբանցն մինչև ի վախճան՝ զամենայն պատմեցաք ձեզ։*

717 *«Արդ՝ եկա՛յք ամփոփեսցուք զգանձն Աստուածութեան, զի յայնմանէ պարգևեսցի ձեզ բժշկութիւն ամենեցուն։ Մատուցո՛ւք զդոսա ի հանգիստ, և շինեսցուք վկայարանս ի վերայ դոցա, տաճարս աղօթից միաբանութեան, հանապազորդ խնդրել յԱստուծոյ նախ՝ զհաշտութիւն և զխաղաղութիւն աշխարհի և զողորմութիւն հաւատովք, յուսով և սիրով, և ընդ նմին զկեանս և զարքայութիւն Աստուծոյ։*

## *THE CONVERSION TO SALVATION OF THIS LAND OF ARMENIA THROUGH THE HOLY MARTYR*

[*C. Gregory's final exhortation; the Armenians beg for healing*]

716. "So come, brethren, let us concern ourselves with our common profit and advantage, that your punishments may be removed from you, that peace may straightway replace the trouble that has fallen upon you, and that (you may gain) conversion to salvation from the errors to which you were prisoners. I have set out in order for your ears all the sayings of the Godhead, hiding nothing profitable. From the beginning to the very end I have told you everything.

717. "So come, let us grasp the treasure of the Godhead, that therefrom you may all be given healing. Let us put these (martyrs) to rest and build chapels[1] over them, temples of united prayer, to seek continually from God, first, reconciliation and peace for the world and mercy with faith, hope and love, and also life and the kingdom of God;

718 «Զի և դուք ազատեսջիք ի ծառայութեանց անձնականութեան գործոցն խաւարի, և զփառս լուսեղէնս Աստուածութեանն ըմբռնեսջիք, աղօթիւք և բարեխօսութեամբ սոցա առ Աստուած. զի և սոքա հանդուցեն զանձինս ձեր ի տանջանաց պատուհասից եկելոց, և սոքօք հաշտեսջիք ընդ Աստուծոյ։ Զի Աստուածութիւնն, որ բնակեալն է ի սոսա՝ զթասցի ի ձեզ ձերովք ապաշխարութեամբ, խոստովանութեամբ, խոնարհութեամբ, հնազանդութեանն հաւատոց, և կրօնաւորեալ ձեզ պահովք, տնկել ի սիրտս և առնուլ ի միտ՝ սփռել զկամացն խորհուրդս, և արժանի լինել լուացման մկրտութեանն սրբութեան, և սրբոցդ մասին ժառանգութեան՝ լուսոյ վիճակին հասանել և պարծանաց խաչին, «որ կորուսելոցն յիմարութիւն է, և ձեզ որ գտայքդ՝ իմաստութիւն և զօրութիւն և փրկութիւն Աստուծոյ»։

719 «Զորս Որդեգրութեան արժանիս արասցէ Աստուածութեանն, ջնջել զմեղս ձեր և թողուլ զպարտիս ձեր, և ընդունել զմասն պսակի սրբոցս որ առ ձեզս են։ Զի և դուք լինջիք փառաւորիչք Աստուածութեան, դասուց փառաւորչացն հաղորդեալք ի կցորդութիւն օրհնութեամբ Հոգւոյն սրբոյ, և արժանի լինջիք դուք զխորհուրդն Աստուածութեանն առնուլ։ Զի լուացեալ իցէք յաղտոյն սատանայի, և նա ձերոց

718. "that by their prayer and intercession to God you may be freed from willing servitude to deeds of darkness and gain the glorious light of the Godhead; that they may give your souls rest from the torments that have come upon you as punishment, and through them you may be reconciled with God. For the Godhead who dwells in them will have pity on you through their repentance, confession, humility and obedient faith. Thus through abstemious fasting you may implant in your hearts and grasp in your minds (the fear of God),[1] cast off the thoughts of your own minds, become worthy of the bath of holy baptism and attain the portion of the inheritance[2] of those saints, the grace of light and the glory of the cross, 'which to the lost is foolishness, but to you who have been found is God's wisdom and power and salvation' [cf. I Cor. 1.18, 23-24].

719. "He will make you worthy of divine adoption, wash away your sins and forgive your debts, and grant you a share of the crown of these saints who are among you; that you may become praisers of the Godhead, sharing in the ranks of praisers by the blessing of the holy Spirit, and that you may become worthy of receiving the mystery of the Godhead; that you may be cleansed from the stain of Satan

ոտից գարշապարաց կոխան լիցի։ Եւ դուք մտեալք և հաղորդեալք իցէք ի հարսանիս Աստուածութեան սիրոյն, ուտել զմիս ճշմարիտ գառին Որդւոյն Աստուծոյ, և ըմպել զարիւն Նորա։ Եւ կցորդ իցէք չարչարանացն Աստուծոյ, և հաղորդ փառացն, և լինիջիք ի մի ոգի և ի նա կցորդիցիք մարմնով և արեամբ Նորա։

720 «Եւ վկայքս այս լինիցին ձեզ ողորմութեամբ Նորա բերդ ամուր և աշտարակ հզօր ամրութեան և վերակացուք բարեխօսութեամբ, հեզմամբ արեանն քաջացեալք, նահատակութեամբն իւրեանց զձեզ առեալ առ Աստուած մատուցանիցեն. որ շահեալք զձեզ՝ զիւրեանց նահատակութեանն մարտին ցուցին ձեզ զյաղթող զօրութիւնն։

721 «Եւ զի այսօր ընդ երեկս է՝ երթայք ի հանգիստ քնոյ, խաղաղութեամբ ննջեցէք. և ի վաղուէ հետէ փոյթ լիցի ձեզ շինել զյարկս հանգստոցաց։ Զի և սոքա փոխարէն ընդ հողեղէն յարկացն զոր սոցայն շինիցէք աստ՝ պատրաստեսցեն ձեզ յարկս լուսեղէնս յարքայութեանն երկնից. որում ակն ունիմք հասանել բարեխօսութեամբ սրբոցս, ի նոյն ժողով միաբանութեան յարքայութեանն Քրիստոսի։ Զի Նորա են փառք և զօրութիւն և պատիւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն»։

722 Եւ զայս ասացեալ՝ արձակեաց

and he be trodden under your feet; that you may enter and share in the wedding feast of the divine love, eat the flesh of the true lamb, the Son of God, and drink his blood [cf. Jn. 6.53]; and that you may become partakers in the torments of God, and share his glory [cf. Rom. 8.17], and become one spirit and sharers with him through his body and blood [cf. I Cor. 12.13].

720. "And these martyrs through his mercy will be for you a strong fortress and mighty tower [cf. Ps. 60.4], your advocates[1] by intercession, your strengtheners by the shedding of their blood, and by their martyrdom they will bring you near to God. They will bring you profit and show you the victorious power of their heroic struggle.

721. "And because it is now evening, go and rest and sleep in peace. In the morning you must make haste to build sanctuaries, that they, in place of the earthly habitations which you built for them here, may prepare for you habitations of light in the kingdom of heaven. And by the intercession of these saints we hope to attain the same united gathering in the kingdom of Christ. For his are glory and power and honor for ever and ever. Amen" [cf. I Tim. 6.16; I Pet. 5.11].

722. Having said all this, he dismissed

զամբոխն. բայց թագաւորն և մեծամեծքն ոչ երբեք մեկնէին ի նմանէ, զի հարուածեալք էին և անհաբեկեալք. և զցայգ և զցերեկ կային առ նմա, և օթեվանք նոցա առ նմա լինէին ի մէջ այգւոյն, առ դուրս հնձանին. զգեցեալ քուրձ և նստեալ ի վերայ մոխրոյ, և պահեալ լինէին պահս աւուրս վաթսուն և վեց։ Եւ այսպէս երանելին Գրիգորիոս անհանգիստ և անդադար զցայգ և զցերեկ ոչ դադարէր երբեք աւուրս վաթսուն և հինգ, խօսել, խրատել և ուսուցանել և հաստատել։ Իբրև իմաստուն բժիշկ գտանել ջանայր զդեղն օգտութեան. զի նոքա մատուսցեն առ նա զանձինս իբրև զհիւանդացեալս, և նա իբրև զճարտարապետ բժշկեսցէ զանձինս նոցա Աւետարանաւն Քրիստոսի։

723 Համօրէն տեղեկացուցեալ խելամտեցուցանէր. ոչ եթէ ծայրաքաղ ինչ արարեալ օգաբանս կամ սրավարս խօսեցաւ, այլ յստակապատում արարեալ ուսուցանէր ամենեցուն. ի սկզբանց անտի սկիզբն արարեալ, յաշխարհահամար յաշխարհապատում արարչութենէ անտի, մինչև ի բուն սրբոցն պատգամախօսացն Աստուծոյ, ամենեցուն իւրաքանչիւր գործոց առաքինութեան և հոգեպատում պատգամացն ընդելս և ծանօթս կացուցանէր։

724 Եւ զարանցն աստուածասիրաց ըստ քրիստոսաւանդ հրահանգելոցն ի ճշմարտութեան,

the crowd. But the king and the nobles never parted from him because they were in torments and fear. Day and night they stayed with him, dwelling by the door of the vat-store in the middle of the vineyard. They were dressed in hair-shirts, and sat on ashes, and fasted for sixty-six days. And in this way for sixty-five days blessed Gregory tirelessly and unceasingly, day and night, never ceased from reasoning, advising, teaching, and confirming them. Like a wise doctor[1] he tried to find the appropriate remedy that they might entrust themselves to him as patients, and he like a skilled physician might heal their souls with the gospel of Christ.

723. He informed and enlightened them about everything, abbreviating nothing and speaking neither superficially[1] nor hastily. But he taught them all most clearly, beginning from the beginning, from the creation of the world, up to the holy speakers of God's words; he made them all acquainted with and aware of the virtuous deeds of each one and their inspired sayings.

724. He informed them by individual name of each one of the men who loved God, of those instructed in the truth handed down by Christ,

զայր իւրաքանչիւր աստուածամուխ կենօք և վաստակաւէր հոգևոր վարուք իւրովք, հանդերձ վկայութեամբ զմի ոք ի նոցանէ առանձինն յականէ յանուանէ ծանուցանէր. և նոցին յԱստուծոյ ասացելովքն՝ կարգեալս և յարմարեալս ընծայեցուցանէր զամենայն ասացեալ զպատգամսն Հոգւոյն սրբոյ, և ըստ նմին զմեկնութիւն նորուն հանդերձեալ գրեաց նորին զօրութեամբն։

725 Իսկ նոքա ժողովեալք կուտեալք հասեալք անթիւ մարդկանն, զմիմեամբք դասեալ՝ խնճոյս կացուցանէին՝ ունկնդրութեան վարդապետութեանն մատուցանել զլսելիս. բազմութիւնք անհունք անչափութեամբք, անհնարին շատութեամբ ժողովեալք ի հոչակէն, տեսանել և լսել զանպայման սքանչելիս Աստուածութեանն։ Ժողովեալք յիւրաքանչիւր գաւառաց արք և կանայք և մանկտի, ահաբեկեալք յահէն զօրութեանց արարչութեանն, լինէին հնազանդեալք և ունէին զհաւատս։ Ճեպէին առ ի տեսանել ցուցական սքանչելեացն, մտերմութեամբ հասեալք լինէին օգտակար խրատուն կենսաբեր քարոզութեանն քանզի կենաց աւետեաց Աւետարանին։ Զամենայն յանձ առեալ՝ թագաւորն և իշխանքն փութային առնել զինչ և հրամայիցէ։

726 Արդ՝ ի լնուլ վաթսներորդի վեցերորդի աւուրն, ընդ այգուն առաւօտանալն,

of each one's godly life and spiritual labor and witness and their sayings (inspired) by God. And he expounded all the words of the holy Spirit in proper order and explained their interpretation by the power of the same (Spirit).

725. They were gathered together in a numberless assemblage of men, jostling each other and sitting as at a banquet, to give their attention to the teaching. The crowds were infinite, gathered in vast numbers from afar in order to see and hear the amazing miracles of the Godhead. Men, women and children had gathered from each one's province, awed at the power of the creator, and they submitted and believed. They hastened to see the incontestible miracles,[1] they willingly attended to the profitable advice of the life-giving preaching of the word of life [cf. Phil. 2.16], the gospel. The king and the nobles accepted everything and hastened to do whatever he might command.

726. When the sixty-sixth day came round,[1] at the dawn of morning,

մատուցեալ իշխանքն թագաւորաւն և նախարարօքն և խառնիճաղանճ ամբոխիւն հանդերձ, նա և կանանւոյն ժողովեալ մատաղ մանկտովն անմեղօք, երամ երամ և դասադասեալք անկանէին առաջի սրբոյն Գրիգորի, աղաչէին և խնդրէին զբժշկութիւն գտանել հարուածոցն պատուհասին հասելոյ. քանզի հարեալք էին բարկութեան գաւազանաւն յարդար դատաստանէն:

727 Մանաւանդ թագաւորն, զի էր նա փոխեալ ի կերպարանս աղբևայոյզ խոզաց. քանզի թաւացեալ էին առ հասարակ ամենայն մարմինքն, և ընդ անդամս ոսկերացն բուսեալ էր խոզանաստև իբրև զմեծամեծ վարազաց վայրենեաց. և եղնգունք ծայրից մատանց ոտիցն և ձեռացն կճղակացեալք էին իբրև զգետնաքիր և զարմատակեր կնճացն: Նա և պատկեր երեսացն դիմացն շրջեալ էր ի պատկեր և ի կնճիթ գոճանացն յեղեգան բնակելոց. իբրև յիւրոց ի գազանամիտ բարուցն բնութենէ և ի վարուց՝ ի թագաւորութեանն շքոյ սաստկութենէ անկեալ, շրջեալ ի տեսիլ նմանութեան անասուն խոտակեր գազանաց. և շրջէր ի մէջ գազանացն ի ներքս յեղեգանն, կորուսեալ ի միջոյ մարդկանէ:

728 Իսկ իբրև եկն եհաս ելեալ ի բանդէ վիրապին խոստովանողն Քրիստոսի Գրիգորիոս, հասանէր ի տեղի վկայելոցն՝ իբրև ի տեսչու-

the nobles and king and princes and the common people, with the crowd of women and young children, approached and fell down in flocks before saint Gregory, beseeching and begging for healing from the torments which had fallen on them as punishment, because they had been struck in a just judgment by the rod of (God's) anger [cf. Is. 10.5].

727. Especially the king, because he had been changed into the form of a wallowing pig. For his whole body had become hairy, and on his limbs bristles had grown like those of great wild boars. And the nails of his hands and feet had hardened like the claws of beasts that dig the earth or eat roots. Similarly the appearance of his face had turned into the likeness of the hard snout of an animal living among reeds. Because of the beast-like nature of his way of life he had fallen from the honor of his throne, and he roamed about in the likeness of pasturing beasts [cf. Ps. 48.13] among the animals in the reeds, lost to the society of men.

728. When Gregory, the confessor of Christ, had come forth from the dungeon-pit and reached the place of the martyrs, as if by the providence

թենէն Աստուծոյ ի մի վայր ամենեքեան ժողովեալ՝ այսամտեալք ամենեքին, ի տեղին հասեալք յայտնեցան։ Եւ թագաւորն խոզացեալ՝ մեծաձայն ճչէր, կանչէր, խանչէր բոհբոհելով, փրփրացեալ, դիզացեալ, կնճթակերպ երեսօքն, լեալ ի նմանութիւն չորքոտանւոյ, ընթացեալ յեղեգնաբնակ երամէ գազանացն ի միջոյ՝ հասանէր յայն տեղի։

729 Իսկ երանելին Գրիգորիոս յաղօթս կացեալ՝ խնդրէր յամենապարգևէն Աստուծոյ առ մի նուագ՝ ոչ զկերպարանացն հարուածելոց առողջութիւն, այլ զմտացն ունկնդրութիւն վարդապետութեանն, զգաստանալ, առնուլ ի միտ զասացեալսն Աստուծոյ պատգամացն։ Եւ լեալ բժշկութիւն այսչափ միայն—քաջ լսել և ի միտ առնուլ և համարձակ խօսել։ Եւ մինչև ի վաթսուն և ի վեց օրն զաւուրս վարդապետութեանն՝ ի նոյն կայր կերպարանս, ձորձապատեալ, պատատեալ, ի մէջ բազմամբոխ աշխարհաժողով հրապարակացն կուտակելոց մարդկանն։

730 Իբրև սկսան թաւալել անկանել առաջի նորա և խնդրել բժշկութիւն,—քանզի թագաւորն զատեալ էր կերպարանօքն ի մարդկայնոյն բնութենէ ձաղածանակ տեսլեամբն, բայց միայն ի բանիմաստ խօսարանացն և ի լսելոյն.—իսկ նա յետ աղաչանացն տուեալ պատասխանի ասէ ցնոսա, եթէ «Եւ ես ընդ ձեզ իբրև զմի ի ձէնջ

of God all those possessed by demons gathered together in that same place. And the king, in swinish form, cried out in a loud voice, he called out, grunted and slobbered and foamed at the mouth in his snout-like face, and in the likeness of a four-footed beast ran from the boars' reedy pasture to the same spot.

729. But blessed Gregory prayed for a brief while, begging from the all-bountiful God not healing for the various torments but attention to his teaching, that they might come to their senses and comprehend the message of God's words. And they had just enough healing to be able to hear, comprehend and speak freely. And all through the sixty-six days of instruction (the king) remained in the same form, though wrapped in garments, in the midst of the great crowd of the assembled populace.

730. When they began to wallow and fall before him and to ask for healing—because the king had lost his natural human form for that ridiculous appearance, except for the ability to speak and hear[1]—then after their supplications he replied and said to them: "I too like one of you

խնդրեցից զձեր օգուտն, և դուք սրտի մտօք խնդրեցէք զձեր բժշկութիւնն, քանզի մարդասէր Աստուածութիւնն ողորմեսցի ձեզ։ Բայց փութացարո՛ւք շինեցէք զվկայարանսն, զի հանգուսցուք զվկայսս Աստուծոյ, զի և սոքա զձեզ հանգուսցեն ի տանջանաց պատուհասիցդ, և ապրեսջիք յահագին և ի դառն պատրաստեալ հանդերձեալ խոստացեալ դատաստանացն, և արժանի լինջիք արքայութեանն Քրիստոսի»։ Իսկ նոցա խնդրեալ, զի փութով հրամայեսցէ, որպէս և կամիցի զի՞նչ և կամիցի առնել։ Իսկ նորա տեսիլ պատմեալ նոցա՝ ասէ.—

731 Արդ՝ եկա՛յք պատմեսցուք ձեզ,
եղբա՛րք, զցուցական սիրոյն արարչութեան առ
ձեզ, որ ինձ երևեցաւ ահաւորութիւն տեսլեանն.
Աստուածութեանն խոնարհեալ առ սուրբ վկայս
իւր, և զսոսա յանհամեմատ բարձրութիւն,
յանպատումն վերացուցեալ, յանզուգականու-
թիւն արքայութեան երկնից։ Արդ՝ զլինելոցն
ընդ ձեզ զկեցուցաբեր տուչութիւնն զոր շնոր-
հելոց է՝ յայտնեաց ինձ, և երևեալ ինձ տեսիլ
աստուածակերպ սքանչելի անպատում, զորոյ
փոքր ի շատէ առի զհանգամանսն։

732 Արդ՝ ի հասարակել գիշերիս այս-
միկ, զի խոնջեալ դուք ի քուն լեալ էիք
ի ծանրութենէ աշխատութեան ի տքնութենէ
այտի, և ես դեռ ի զարթման հարեալ էի և մտա-

will seek your advantage. And do you sincerely request healing, because the benevolent deity will have mercy upon you. But hasten and build chapels in order to give repose to the martyrs of God, that they in turn may give you respite from the torments of your punishment, and that you may be saved from the terrible and bitter judgments that have been promised and prepared for the future, and that you may become worthy of the kingdom of Christ." Then they begged him quickly to command as he might wish and whatever he might wish to be done. But he related to them a vision as follows.

[Chapter 8. Gregory's vision]

731. "So come, we shall tell you, brethren, of the Creator's love shown towards you, which was revealed to me as an awesome vision. The Godhead condescended to his holy martyrs and raised them up to the incomparable, ineffable and inaccessible height of the kingdom of heaven. Now he revealed to me the vivifying providence that he intends to bestow on you, and there appeared to me a divine, wonderful, and ineffable vision, the details of which I grasped in brief.

732. "Now, in the middle of that night when you were tired and sleeping from the severity of the labor and vigil, I was still awake and

խորհ կայի վասն յանկարծահաս դիպելոյ անքննին սքանչելեացս ողորմութեան Աստուածութեանն այց առնելոյ ձեզ, արկանելոյ զձեզ ի բովս խրատու հանճարագիտութեան աստուածագէտ վարդապետութեանն։ Զմտաւ ածէի և զսէր վկայիցն առ իւրեանց սիրեցեալ արարչութիւնն, և զփոխարէն դարձուածսն անպատումսն պատրաստեալս նոցա, թէ որպիսիք իցեն։

733 Յանկարծակի եղև ձայն սաստկութեան, բոմբիւն որոտման, ահաւոր թնդիւն, իբրև զձայն եռանդան կուտակելոյ ծովու ալեաց խռովութեան։ Եւ բացաւ խորանաշէն յարկն հաստատութեան երկնից. և իջեալ այր մի ի կերպարանս լուսոյ. կոչեաց զանուն իմ և ասէ. Գրիգորիէ. և իմ հայեցեալ տեսի զկերպարանս նորա, և զարհուրեալ դողացեալ յերկիր կործանեցայ։ Եւ ասէ ցիս. Հայեա՛ց դու ի վեր, և տե՛ս զսքանչելիս զոր ցուցանեմ քեզ։

734 Եւ իմ հայեցեալ՝ տեսի բացեալ զհաստատութիւն երկնից, և զջուրսն որ ի վերայ նորա՝ ըստ հաստատութեանն պատառելոյ, զի ըստ նմանութեան ձորոց իբրև զկատարս լերանց՝ յայս կոյս յայն կոյս բաժանեալ դիզեալ կային անբաւութիւնք անկշռելութեան ական տեսանելոյ։ Եւ լոյսն հոսեալ վերուստ ի վայր մինչև յերկիր հասանէր. և ընդ լուսոյն՝ զօրք անչափք լուսեղէնք երկթևեանք ի տեսիլ մարդկան, և

was contemplating the unexpected and inscrutable miracles of God's mercy in visiting you and casting you into the furnace[1] of instruction of the wise, divine teaching. I also considered the martyrs' love for their beloved creator, and what would be the ineffable rewards prepared for them.

733. "Suddenly there was a great sound, the thunder of lightning, a fearful noise like the sound of the roaring tumult of the waves of the piling sea. And the cube-shaped vault of the firmament of heaven[1] was opened, and a man descended in the form of light. He called my name and said: 'Gregory.' And I looked up and saw his form, and terrorstruck I fell to the ground. Then he said to me: 'Look up and see the wonders that I shall show you.'

734. "And I looked up and saw the firmament of heaven opened, and the waters above it[1] divided like the firmament, for like valleys and mountain-tops they were divided and their infinite expanses were piled up on either side beyond sight. And the light flowed from above down to the earth, and with the light numberless hosts of shining two-winged creatures in human appearance and

*թեքն իբրև զհուր։ Եւ ըստ նմանութեան մանրամաղ փոշւոյ հիւղէի, որ ի ժամանակս արեգակնակէզ գարնանւոյն ըստ պատուհանացն կամ լոյսանցոյց երդոցն ի շողսն խաղասցէ բազմութիւն մանրամաղ փոշւոյն, նոյնպէս և զօրքն ընդ լուսոյն լցին զառ ի ստորևս ամենայն, և առաջին ցուկեալ յառիջանելն լուսոյն, և զօրքն ընդ նմին։*

735 *Եւ մի ահաւոր տեսիլ մարդոյ բարձր և ահեղ, որ զառաջին ունէր և զէջսն ի վերուստ մինչև ի խոնարհ առաջապահ յառաջեալ, և ի ձեռինն իւրում ուռն մի մեծ ոսկի. և այն ամենայն զհետ խաղացեալ գայր։ Եւ ինքն սլացեալ խոյացեալ գայր՝ ըստ նմանութեան արագաթև արծուոյ. և եկն էջ եհաս մինչև մօտ ի յատակս երկրիս, ի շինամէջ քաղաքին, և բաղխեաց զթանձրութիւն լայնատարած գետնոյն, և մեծ և անչափ դղրդիւնքն հնչեցին ի սանդարամետս անդնդոց. և ամենայն երկիր յերևելիս, յակամ տեսանելեաց բաւելոյ, հարթ հաւասար դաշտաձև յատակեցաւ։*

736 *Եւ տեսանէի ի մէջ քաղաքիս, մօտ յապարանսն արքունի, խարսխաձև ճախարակաձև խարիսխ ոսկի, մեծութեամբ իբրև զմեծ մի բլուր, և ի վերայ նորա սիւն մի հրեղէն բարձր մինչև յոյժ, և ի վերայ նորա թակաղաղ մի ամպեայ, և խաչն լուսոյ ի վերայ նորա։*

with wings like fire. And in the likeness of minute specks of dust which in the sunny springtime play in their myriads in the rays passing through windows or sky-lights,[2] so too these hosts filled everything below with their light, and as the light streamed forward so did the hosts with it.

735. "And (there was) an awesome vision of a man, tall and fearful, who governed the front and the rear guards and, descending from above, advanced as leader.[1] And in his hand was a great hammer of gold, and they all followed him. He himself flew swiftly in the likeness of a fleet-winged eagle. And he descended and came down near to the ground of the earth in the middle of the city. And he struck the wide expanse of the solid ground, and great and immeasurable rumblings sounded in the depths of hell.[2] And the whole earth as far as the eye could see was struck as level as a plain.

736. "And I saw in the middle of the city, near the royal palace, a circular base[1] of gold, as great as a hill, and on it an exceedingly tall column of fire, and on top of that a capital of cloud, and on top of that again a cross of light.

737 Եւ նայեցայ, և տեսանեմ այլ խարիսխս երիս. մի՝ ի տեղւոջն ուր վկայեաց սուրբն Գայիանէ երկուք ընկերօքն. և մի՝ ի տեղւոջն ուր վկայեաց սուրբն Հռիփսիմէ երեսուն և երկու ընկերօքն, և մի՝ ի տեղւոջ հնձանին։ Եւ այն խարիսխք՝ կարմիրք էին ի գոյն արեան, և սիւնք ամպեղէնք, և խոյակք հրեղէնք. և ի վերայ սեանցն երից խաչք լուսեղէնք ըստ նմանութեան տեառնանման խաչին. և այս սեանց խաչքն հաւասարք էին այնր լուսեղէն սեանն թակաղաղի, զի նա բարձր էր քան զնոսա։ Եւ ի չորեցունց սեանցն ի վերայ խաչիցն կամարք զարմանատեսք ի միմեանս կապեցան. և ի վերայ այնորիկ տեսի գմբեթաձև խորանարդ ամպեղէն շինուած աստուածակերտ զարմանալի։ Եւ ի ներքոյ խորանին և վերայ կամարացն տեսի զսուրբ վկայսն զայսոսիկ զերեսուն և զեօթն, իբրև ի լուսաւոր կերպարանս սպիտակութեան հանդերձանօք, զոր ոչ բաւեմ պատմել։

738 Եւ ի կատար շինուածոյն տեսանէի աթոռ զարմանալի աստուածակերտ սքանչելի հրեղէն, և զխաչն տէրունական ի վերայ նորա. զորով փարեալ լոյսն համատարած՝ խառնեցաւ ընդ ճառագայթս խաչին, և մածեալ ի նոյն միացաւ. և սիւն գործեաց լոյսն շողացեալ, և ծագեաց ի մէջ ներքին սեանցն խարսխաց։

739 Եւ բղխեաց աղբիւր յորդաբուղխ, և

737. "And I looked up and saw three other bases: one in the place where saint Gaianē was martyred with her two companions, and one in the place where saint Rhipsimē was martyred with her thirty-two[1] companions, and one in the place of the wine-press. And these bases were red, the color of blood,[2] and the columns were of cloud and the capitals of fire. And on top of the three columns were crosses of light in the likeness of the Lord's cross. And the crosses of these columns were level with the capital of the column of light, for that one was higher than they. And from the four columns, above the crosses, marvelous vaults fitted into each other. And above this I saw a canopy of cloud, wonderfully and divinely constructed in the form of a dome. Under the canopy[3] but above the vaults I saw these thirty-seven[4] holy martyrs in shining light, with white garments, which I am not capable of describing.

738. "At the summit of this edifice I saw a wonderful and divine throne of fire with the Lord's cross above it.[1] Around it spread light in every direction, mingled with the rays of the cross and joined to the same. And the column made of light shone out among the bases of the lower columns.

739. "And there gushed forth an abundant spring,

հոսեցաւ ծաւալեցաւ ընդ դաշտս ամենայն, և ելից առ հասարակ՝ որչափ ակն բաւեաց։ Եւ եղև ծով լի և կապուտակագոյն, և երկնագոյն երևեցան դաշտք առ հասարակ։ Եւ տեսի բազմութիւն հրեղէն սեղանոց անչափ բազմութեամբ. և սիւն մի մի առ սեղան, և խաչ մի մի ի վերայ նորա. և իբրև զաստեղս բազմութեամբ՝ այնպիսի երևեալք և անչափ փայլեալք։

740 Եւ տեսի հօտս անթիւս այծեաց ի գոյն սևութեան, որք անցեալք ընդ ջուրն՝ յօդիս դարձան. և զգոյնս իւրեանց ի կերպարանս սպիտակութեան շրջեցին, և լուսակիզն ասրն փայլէր առ հասարակ, մինչև ճառագայթք հատանէին ի նոցանէն։ Եւ մինչ դեռ նայէի ես՝ յանկարծակի ծնան հօտքն և բազմացան, և ծնունդքն լցին զվայրսն. և ծնեալ գառինքն ամենայն լուսակիզն էին։ Իսկ յանկարծ այլ ծնունդք յաճախեցին բազմացան, և կէսքն անկեալ ելին յայնկոյս ջրոյն։ Եւ գառինքն գայլք եղեն թուխք. և յարձակեցան ելին ի մէջ հօտիցն, և սկսան կոտորել, և եղեն արեան ճապաղիք։ Եւ մինչ դեռ նայէի՝ և տեսի, և բուսան թևք հօտիցն, և եղեն թևաւորք, և վերացան խառնեցան ի զօրս լուսեղէնս։ Եւ յարեաւ հեղեղ հրեղէն, և արկեալ տարաւ զգայլսն։

741 Եւ ես նայեցեալ զարմացեալ կայի։ Եւ այրն, որ յառաջնումն կարդաց զանուն իմ և

flowing over all the plains and filling them completely as far as the eye could see. There was made a vast bluish sea, and the plains appeared altogether the color of heaven. And I saw a numberless multitude of fiery altars, and a column on each altar, and a cross on each column. And they shone out in infinite number like the stars.

740. "And I saw numberless herds of goats, black in color, who having passed through the water turned into sheep, and their color became white and their fleeces sparkled like shining wool as rays flashed out from them. While I was still looking, suddenly the flocks gave birth and multiplied and their offspring filled the land. And the lambs that were born were covered in shining wool. Then suddenly still more offspring multiplied, and half of them crossed to the other side of the water. And these lambs became brown wolves and attacked the flocks and began to slaughter them, and there was shedding of blood. While I was looking, I saw that the flocks grew wings and flew up and joined the shining hosts. And there arose a torrent of fire which bore away the wolves.

741. "Beholding this I was amazed. And the man, who had earlier called my name and

ցուցանէր ինձ՝ ասէ ցիս, թէ «Այր դու, զի՞ կաս զարմացեալ, և ո՞չ ի միտ առնուս զմեծամեծս Աստուծոյ»։ Եւ ես ասեմ. «Ո՞րպէս, Տէ՛ր»։ Եւ ասէ ցիս. «Տեսիլ ցուցաւ քեզ այս՝ զի ի միտ առցես։ Զի բացեալ են աւադիկ երկինք՝ գիտեա՛ զի բացեալ են դրունք մարդասիրութեանն Քրիստոսի առ իւր արարածս։ Եւ ձայն բարբառոյ որոտմանն, գիտեա՛ զի իջանէ անձրև ողորմութեանն և զթութեանն Աստուծոյ։ Բացեալ են աւանիկ դրունք երկնից, բացան և ջուրքն որ ի վերայ նորա, զի մի՛ արգել լիցի այսմ աշխարհի մարդկան՝ ելանել ի վեր։ Զի սուրբ վկայքս այս որ աստ վկայեցին՝ հիւսիսական կողմանցս ճանապարհ գործեցին. զի ինքեանք ելին և այլոց շաւիղս ուղղեցին։

742 Աւասիկ լոյսս զի ելից զվայրս՝ այս քարոզութիւն Աւետարանին է, որ և զկողմն հիւսիսոյ լնու։ Եւ զօրք լուսեղէնք ցանկացեալ փափագեցին իջանել ի հոտ անոյշ ծաղկաձև վարդագոյն արեան վկայիցն, նա՛ այսուհետև խառնելոց են ընդ մարդկան ի բնակութիւն բազմութիւնք հրեշտակաց։

743 Իսկ այրս ահաւոր և շքեղաւոր, որ զառաջսն ունի զլուսոյն և զուռնն ոսկի ի ձեռին իւրում, և բաղխեաց զանդարամետսն՝ այս տեսչութիւնն Աստուծոյ է, «որ հայի յերկիր, և տայ դողալ. մերձի ի լերինս, և ծխին»։ Այն ահ Աս-

showed me (this), said to me: 'O man, why do you stand in amazement without pondering the miracles of God?' And I said: 'How, Lord?' And he said to me: 'This vision has been revealed to you, that you might pay heed to it. For behold the heavens have been opened [cf. Ez. 1.1]: know that the gates of Christ's love [cf. Ps. 77.23; Tit. 3.4] for his creatures have been opened. As for the sound of the voice of thunder, know that the rain of God's mercy and pity [cf. Lk. 1.78] is descending. Behold the gates of heaven have been opened and the waters above have been opened,[1] that there be no impediment for men of this world to rise up. For the holy martyrs who were martyred here have made a road for these Northern regions, since they have gone up and made paths for others.[2]

742. "Behold this light which filled the land is the preaching of the gospel [cf. Jn. 1.4], which also fills the Northern region. And the hosts of light greatly desired to descend to the sweet odor [cf. II Cor. 2.15], like that of a rose-colored flower, of the martyrs' blood; from henceforth multitudes of angels will mingle and live with mankind.

743. "And the fearsome and splendid man, who in the vanguard held the golden hammer in his hand and struck the depths of hell,[1] he is the providence of God,[2] 'who looks on the earth and makes it shake; he approaches the hills, and they smoke' [Ps. 103.32]. This fear

տուածութեանն հարթեաց կործանեաց ընկէց զմոլորութիւնս յերկրէ։ Այն զի հնչեաց երկիր՝ զձայն ծառայութեանն հնազանդութեան բարբառեցաւ։

744 Որոյ սեանն խարիսխն ոսկի է, և նորուն սիւնն հրեղէն, և թակաղաղն ամպեայ, և խաչն լուսեղէն ի վերայ նորա· ոսկի խարիսխն՝ վէմն հաստատութեան անշարժութեան է. և սիւնն հրեղէն՝ կաթողիկէ եկեղեցի է, որ ժողովէ զամենայն ժողովուրդս ի մի միաբանութիւն հաւատոց ի ներքոյ թևոց իւրոց։ Եւ Թակաղաղն ամպեայ՝ որ ընդունելոց է զարդարսն, յորժամ թռիցեն ի տեառնագալստեանն ընդ առաջ նմա վերանալ։

745 Իսկ խաչն լուսաւոր ի նմա՝ է ինքն մեծ քահանայապետութիւնն ի մէջ ժողովրդոցն, օրինակ Քրիստոսի պատկերին մարմնացելոյ քահանայապետութեանն օծութեան Աստուածորդւոյն։ Եւ տեղին այն լիցի տաճար Աստուծոյ, և տուն աղօթից խնդրուածոց ամենայն հաւատացելոց, և աթոռ քահանայապետութեանն։

746 Եւ խարիսխքն երեք, որ կարմիրքն էին ի գոյն արեան՝ վասն չարչարանացն եկելոց նեղութեանց մահու համբերութեանն. զի զմահն իւրեանց արարին խարիսխ ճշմարտութեան հաւատոյ, հեղմամբ արեան իւրեանց։ Եւ սիւնքն՝ ամպեղէնք յայն սակս երևեցան, վասն զի ամպն

of the Godhead has flattened[3] and destroyed and overthrown error from the earth. And the echoing earth was the voice of servitude and obedience.

744. "As for the golden base of the pillar, and its fiery column[1] and capital of cloud and the shining cross above it—the base of gold is the immovable rock of establishment [cf. Matt. 7.25]; the fiery column is the Catholic church[2] which gathers all peoples to one unity of faith under her wings [cf. Eph. 4.13]; and the capital of cloud is to receive the just when they will fly up before the Lord at his coming [cf. I Thess. 4.16].

745. "Now the shining cross on it is the great high-priest [cf. Heb. 3.14] himself among the peoples, the type[1] of Christ's image, the incarnate high priesthood of the anointed Son of God. And that place will be a temple of God and a house of prayer [cf. Matt. 21.13] for the requests of all the faithful, and a throne of the high priesthood.

746. "And the three bases which were red, the color of blood,[1] represent the torments and afflictions which came upon (the martyrs) and their endurance unto death. For they made their death the basis [cf. Heb. 6.19][2] of the true faith by the shedding of their blood. And the columns appeared of cloud for this reason, because the cloud

ունի զթեթևութիւն արագութեան ի յարութեանն յերկինս վերանալոյ։ Եւ թակաղաղն՝ հրեղէն, զի բնակութիւն նոցա լինելոց է ի հուր Աստուածութեանն լուսոյն։

747 Եւ խաչքն ունին զչարչարանս վկայիցն, որ նմանեցին Տեառն չարչարանացն, և մեռան փոխանակ նորա. զի Աստուծով կեցին և ընդ Քրիստոսի խաչեցան, և կենդանի է Քրիստոս յոսկերս նոցա՝ ցուցանել ամենեցուն զկենդանութիւն նոցա. յայտնի առնել զհոտ անուշութեան գիտութեան իւրոյ ի նոցանէ և հռչակել զառաքինութիւնս նոցա ընդ տիեզերս։ Զի սպանին նոքա զմարմինս երկրաւորս, և կախեցին զտէրունական խաչէն. եղեն Տեառն իւրեանց չարչարակից, նոյնպէս և փառացն և զօրութեանն լինելոց են հաղորդք։

748 Այլ առաջին խաչն որ ցուցաւ քեզ՝ ունի զպարծանս քահանայութեան պատուին, պանծացեալ ի խաչն Քրիստոսի։ Իսկ երեք ևս, որ ունէին զտեղի վկայարանացն հանգստի սրբոցն՝ զի ի տեղւոջ հեղման արեանն իւրեանց շինեսցին վկայարանք հանգստի ոսկերաց իւրեանց։ Իսկ զի բարձր է սիւնն առաջին՝ զի մեծ և բարձր է պատիւ կաթողիկէ եկեղեցւոյ քան զամենայն բարձրութիւնս սրբոցն։ Իսկ կամարքն որ ի սեանց անտի ի միմեանս կապէին՝ այս ինքն է հաւասարութիւն միաբանութեան կաթո-

has lightness to rise swiftly up to heaven at the resurrection.[3] And the capital was fiery because their habitation will be in the fire of the divine light.

747. "And the crosses represent the sufferings of the martyrs, who imitated the sufferings of the Lord and died for him. For they lived in God and were crucified with Christ, and Christ lives in their bones[1] in order to show everyone their life, to reveal by them the sweet odor[2] of his knowledge, and to spread abroad their virtue throughout the world. For they killed their earthly bodies and hung from the Lord's cross; they became fellow-sufferers with their Lord, and likewise will share in his glory and power [cf. Rom. 8.17].

748. "Now the first cross that was revealed to you represents the boast of the honor of priesthood, which glories in the cross of Christ. But the other three represented the places for the chapels of repose of the saints, because in the place where their blood was shed will be built chapels of repose for their bones. Now the first column was high, because the honor of the Catholic church is greater and higher than all the heights of the saints. And the arches that were linked to each other from the columns are the equality and unity of the Catholic

*զիկէ եկեղեցւոյ։ Իսկ խորանն ի վերայ՝ ունի զօրինակ վերնոյ քաղաքին, գժողովարանն միաբանութեան արքայութեանն երկնից։*

749 *Եւ զի երևէին քեզ վկայքն՝ գիտեա՛ զի մահս ժամանակեան է, ասէ, և կենդանութիւն նոցա յաւիտենական, փառաւորեալ ի փառս Աստուածորդւոյն. վասն այսորիկ և զօրինակ խաչի նորա տպաւորեալ յանձինս նոցա։*

750 *Եւ ի վերայ կատարոյ շինուածոյն զոր տեսանես, նոյն ինքն աթոռ ամենազօր բնութեան Աստուածութեանն, բարձրութեան ինքնութեանն. զի նա ինքն գլուխ է եկեղեցւոյ սրբոյ և կատարիչ ամենայն բարութեանց, և ի նա ամենայն շինուածն պատշաճի, և աճէ զաճումն Աստուծոյ, յոր ամենայն մարմին յօդիւք և խաղալեօք և անդամօք հաստատեալ և կազմեալ։*

751 *Եւ լոյսն զի փարի զխաչիւն՝ այս ինքն Հոգի Աստուածութեանն որ զՈրդին փառաւոր առնէ։ Եւ զի խառնեցաւ ընդ ճառագայթս նորա՝ այս ինքն զի յՈրդւոյն առնու և պատմէ սիրելեաց իւրոց։ Եւ զի միացաւն ի նոյն՝ զի մի է բնութիւն Աստուածութեանն։ Եւ զի ծագեաց լոյսն ի մէջ սեանցն չորեցունց, և բղխեցոյց զաղբիւրն յորդաբուղխ՝ զի ի կաթողիկէ եկեղեցւոյն շնորհք Հոգւոյն ի մէջ վկայելոցն և ի մէջ քահանայութեանն բղխելոց է աղբիւր*

church. And the canopy above represents the type[1] of the celestial city [cf. Gal. 4.26], the united gathering-place of the kingdom of heaven.

749. "And because the martyrs appeared to you, know,' he said, 'that their death is temporary and their life eternal and glorious in the glory of the Son of God. Therefore they figured in themselves the pattern[1] of his cross.

750. "And what you see above the top of the building is the throne of the almighty nature of the Godhead, of his essential height. For he is the head of the holy church [cf. Col. 1.18] and the worker of all blessings.[1] And in him is held together the whole edifice, and it increases the glory of God [cf. Col. 2.19], in whom is firmly established the whole body with limbs and joints [cf. Eph. 2.21-22; 4.16].

751. "And the light which surrounded the cross is the Spirit of God who glorifies the Son. And it mingled with its[1] rays, because it receives from the Son and tells (of him) to his beloved [cf. Jn. 16.14]. And it was united to the same, because the nature of the Godhead is one. And the light shone from the midst of the four columns and caused an abundant torrent to flow forth, because the grace of the Spirit will flow from the Catholic church amid the martyrs and the priesthood as the fountain

մկրտութեան, լուանալ զաղտ ոգւոյն մարմնովքն հանդերձ։ Եւ այն զի յորդեաց ելից զքաղում վայրս՝ զի լինելոց է փրկութիւն մկրտութեամբ բազում ժողովրդոց։ Եւ զի երկնագոյն երևեցան դաշտք ամենայն՝ այս ինքն է՝ զի երկիրս իբրև զերկինս լինելոց է, խառնուրդք հրեշտակաց և մարդկան։

752 Եւ հրեղէն սեղանոցն բազմութիւնք որ քեզդ երևին՝ ճշմարտիւ իսկ լինելոց են սեղանք Աստուծոյ, որ զքաւութիւն բաշխեն ամենեցուն։ Եւ հրեղէն յայն սակս երևեցաւ, զի պաշտօն Հոգւոյն եղիցի փառօք։ Եւ սիւնք մի մի առ սեղան՝ պաշտօն աղօթից քահանայութեան։ Եւ խաչք ի վերայ նոցա, այս ինքն զի սուրբ անունն Քրիստոսի փառաւոր լիցի ընդ ամենայն տեղիս։ Եւ զի բազում էին իբրև զաստեղս՝ զի պաշտամունք սրբութեանն իբրև զաստեղս բազմասցին։

753 Եւ հօտք բազմութեան այծեացն սևութեան, որք յիջանել ի ջուրսն յօդիս դարձեալ սպիտակութեան՝ աւադիկ աջն Աստուածութեան շնորհացն ի ձեռն քահանայապետութեան հասանելոց է. յորոյ ձեռն բղխեսցէ աղբիւր մկրտութեան. ի թողութիւն քաւութեան բազում մեղաւորաց։ Եւ որ լուսակիզն ասր նոցա փայլեալ պայծառացեալ էր՝ այս ինքն՝ մկրտեալքն լոյս զգենլոց են, և արքայութեանն խոստացե-

of baptism, to wash away the stain of the soul with the body. And it spread out and filled many places because it will become salvation for many peoples through baptism. And the fact that all the plains appeared the color of heaven means that this earth will become like heaven—the common abode of angels and men.[2]

752. "And the multitudes of fiery altars which appeared to you, will truly be the altars of God which will distribute expiation to all. And they appeared fiery for this reason, because the worship of the Spirit will take place gloriously. And the columns by each altar (represent) the worship of the prayers of the priesthood.[1] And the crosses above them signify that the holy name of Christ will be glorified in every place. And they were as many as the stars because the services of holiness will multiply like the stars.

753. "And the herds of many black goats who in going down to the waters turned into sheep, behold (this means that) the right hand of God's grace will come through the high priesthood,[1] through which the fountain of baptism will flow for the forgiveness and expiation of many sinners. And their white wool which shone and sparkled signifies that the baptised will be clothed in light and become worthy of the promised kingdom.

լոց արժանաւոր լինելոց։ Եւ զի ծնան հօտքն և բազմացան և լցին զվայրսն՝ այս ինքն է՝ զբազում ժամանակս աճեցուցանէ զքարոզութիւնն, և ծնանին նոր ծնունդք նորոգութեան, և բազմացուցանէ զմկրտութիւնն։

754 Եւ զի կէսքն անկեալ ելեալ էին հօտքն ընդ ջուրսն, ի նոյն կողմն ուստի անցեալն էին՝ այս ինքն է՝ ի յետին ժամանակս անօրինելոց են, անկեալք ի ճշմարտութենէն. ընկենլոց են յետս զդրոշմ ուխտին սրբութեան Աստուածութեանն, և բազումք թողուն զուխտն սրբութեան։ Եւ ի գառանցն լինելոց են գայլք, որ կոտորելոց են զսուրբ գառինս. այս ինքն որ գնան ի ճշմարտութենէ անտի և յուխտէ քահանայիցն՝ լինելոց են գայլք, և հանեն ճապաղիս արեան գառանցն, այս ինքն ուխտին և քահանայութեանն, և խռովութիւն ժողովրդոցն։ Իսկ որ համբերենն միամտութեամբ ի գառանցն, ի ժողովրդոցն կամ ի քահանայիցն՝ թևս առնուցուն և յարքայութիւնն Քրիստոսի վերանան։ Իսկ որ զմիտս գայլոցն կամ զգործս յափշտակութեան նոցա ունիցին՝ ի հուրն անշէջ մատնեսցին։

755 Եւ դու, ասէ ցիս այրն, պի՛նդ կաց, քա՛ջ լեր, զգո՛յշ լեր. զի գործ ի ձեռն եկեալ հասեալ է քեզ. զի քեզ բարութիւն դիւրաւ լինելոց է, զի և դու ընդ ճշմարիտ մշակս վարձս

And the fact that the flocks gave birth and multiplied and filled the land signifies that the preaching will be increased for a long time, and new, renewed offspring will be born and baptism will be increased.

754. "And the fact that half of the flocks went through the waters and (turned back) to the same side from which they had passed[1] means that in times to come there will be impious ones who depart from the truth; they will fall behind the standard of the holy covenant of the Godhead, and many will abandon the holy covenant. And from lambs they will become wolves who will slaughter the holy lambs—that is, those who depart from the truth and the priestly covenant will become wolves and will cause the shedding of the blood of the lambs, that is of the covenant and of the priesthood, and (will cause) confusion for the people. But those lambs which endure faithfully, either from among the people or the priests, will receive wings and rise to the kingdom of Christ. But those who will have the intentions of wolves or commit their rapacious deeds will be handed over to unquenchable fire.

755. "And you," said the man to me, "stand firm, be strong, be attentive. For a task has been put upon you; you will easily receive blessing, for with the true laborers you will receive reward

տացես յանպատում պարգևացն Քրիստոսի։ Արդ՝ զգո՛յշ լեր աւանդիդ, որ քեզդ հաւատացաւ ի տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ. շինեսջի՛ր զտաճար անուանն Աստուծոյ ի տեղւոջն որ ցուցաւ քեզ, ուր սիւնն հրեղէն ունէր զոսկի խարիսխն, և զվկայարանս սրբոցն ի տեղիսն՝ ուր գենան ինքեանք ի կենդանութիւն Աստուածութեան յուսոյն։ Զի բժշկեսցին հարուածեալքդ, և քաղաքութեանն յաջողուած յառաջադէմ լիցի հանապազորդութեամբ օր ըստ օրէ, հասանել ամենեցուն ի չափ կատարման հասակի հաւատոցն Քրիստոսի»։ Եւ զայս ասացեալ՝ շարժումն եղեալ, և ընդ առաւօտանալն ծածկեցաւ տեսիլն։

756 «Արդ՝ ամենարարն, ամենաստեղծն, ամենահաստիչն, ամենիմաստն, ամենատէրն, ամենակալն, ամենագիտն, ամենաբժիշկն խրատեաց զձեզ, զի Աստուածութեանն իւրոյ զձեզ մերձաւորս արասցէ։ Վասն այսորիկ ցուցեալ ձեզ մեօք զկենաց ճանապարհս և զփրկութեան հանգամանս, զթողութիւն միանգամայն ածել հասուցանել ի վերայ. վասն այսորիկ զտեսիլ հանդերձելոցն երևեցոյց ինձ պատմել ձեզ, առ ժամանակիս զիւր կամսն առ ձեզ կատարելով։ Արդ՝ և դուք զասացեալսն ըստ հրամանացն փութացարո՛ւք կատարել։ Եւ արդ՝ եկա՛յք շինեսցուք զվկայարանսն, փոխել զվկայսս ի հանգիստ. զի

from the ineffable gifts of Christ. Now, be attentive to the tradition entrusted you by the Lord Jesus Christ. Construct the temple of God's name in the place which has been shown you, where the fiery column had its base of gold, and (build) the holy martyrs' chapels in the places where they were sacrificed to life in divine hope; that the tormented may be healed and the gospel be preached ever more successfully day after day, to bring everyone to the measure of the perfect stature of Christ's faith" [cf. Eph. 4.13]. When he had said this there was an earthquake, and as day dawned the vision was obscured.

756. "Now the creator of all, the maker and fashioner of all, God the all-wise, the almighty and omnipotent Lord of all, the supreme healer has instructed you in order to make you familiar with his divinity. Therefore he has shown you through us the path to life and the way to salvation whereby you may obtain forgiveness. For this reason he revealed to me the vision of the future, for me to inform you and fulfill among you his will at this time. So now come, hasten to fulfill his words according to his commands. Come, let us build the chapels and put the martyrs to rest,

և սոքա փոխեսցեն զձեզ ի նորոգութիւն»։

757 Եւ զայս ասացեալ՝ հրամայեաց զի զնիւթ շինուածոյն վաղվաղակի պատրաստեսցեն։ Եւ ամենայն բազմութեան մարդկանն լուեալ զայն՝ իւրաքանչիւր ընթացան պատրաստել զնիւթսն։ Եւ կուտէին ի հրամայեալ տեղիսն ոմն վէմ, ոմն քար, ոմն աղիւս, ոմն զմայր փայտն, պատրաստէին խնդալից փութով և մեծաւ երկիւղիւ։

758 Եւ ինքն սուրբն Գրիգորիոս զլար ճարտարութեան շինողացն ի ձեռն առեալ՝ զերանելեացն վկայարան հանգստարանացն զհիմունսն յօրինէր։ Եւ մէն մի իւրաքանչիւր ամենայն բազմութեանն սատարութիւն ի ձեռն առեալ, ըստ գեղեցկագիր յարմարելոյ հիմնարկին ի կատարումն շինուածոյն կանգնեցին։ Ամենայն ոք ձեռն ի գործ արկեալ, և կանանւոյն անգամ սատարեալ ըստ իւրեանց տկարութեան կանացի ուժոյն, և այսպէս առ հասարակ գործէին զգործն հաւատովք և մեծաւ երկիւղիւ, զի մի՛ ոք ամենևին անմասն եղեալ ի փրկութենէ շնորհացն, ի բժշկութենէն զրկեսցի։

759 Եւ կանգնեալ երիս վկայարանս, մի՝ ի հիւսիսոյ յարևելից կողմանէ քաղաքին, ուր վկայեաց սանականն Հռիփսիմէ երեսուն և երկու ընկերօք։ Եւ զմիւսն շինեցին ի հարաւակողմ կուսէ անտի, ուր վկայեացն Գայիանէ նորուն

that they in turn may bring us to renewal."

[Chapter 9. Chapels are built and the nuns buried; the king and people are cured]

757. Having said this he ordered them quickly to prepare the material for the building. When the whole crowd of the populace heard this, each ran to prepare the materials. In the appointed places some piled up rocks, others stones, others bricks, others cedar wood; they made their preparations in joy, and in haste and in great fear.

758. Saint Gregory himself took up the architect's line[1] and set out the foundations for the saints' chapels of repose. Each one in the whole crowd lent his help, and following the well-laid-out foundations they built up the completed edifice. Everyone put his hand to the task, women also helping according to their weaker feminine strength.[2] And thus they all worked together in faith and great fear, lest anyone fail to obtain his share in the grace of salvation or be deprived of healing.

759. So they raised three chapels: one on the North-eastern side of the city where the young Rhipsimē had been martyred with thirty-two[1] companions. They built the second to the South where Gaianē, her guardian, had been martyred

սնուցիչն երկու ընկերօքն։ Եւ զմիւսն ևս մօտ ի հնձանն ի մէջ այգւոյն, ուր էին վանք նոցա։ Շինեցին կազմեցին զտեղիսն, և զարդարեցին ոսկի և արծաթի կանթեղօք լուցելովք, և լապտերօք վառելովք, և աշտանակօք բորբոքելովք։

760 Եւ հրամայեաց մէն մի իւրաքանչիւր արկղագործ, տախտակամած, մայրափայտեայ, բևեռապինդ, հաստահեղոյս, երկաթագամ տապան գործել։ Եւ ամենայն ըստ ասացելոյ պատուիրանին արարեալ, հանդերձեալ կազմեալ պատրաստեցին. ըստ եդեալ հրամանին տուելոյ բերին զարկեղսն արարեալ հանգստի սրբոցն առ դուրս հնձանին, առաջի սրբոյն Գրիգորի։ Իսկ նա առեալ՝ ինքն միայն ի ներքս մտանէր, և ոչ թողոյր զայլ ոք ամենևին ի ներքս մտանել. ասէ. «Ոչ է պարտ ձեզ հուպ լինել և մերձենալ առ նոսա, որ չեդ էք բժշկեալ, որ չեդ էք սրբեալ մկրտութեամբ»։ Այլ ինքն միայն առանձնացեալ, զմի մի իւրաքանչիւր ի սրբոցն առեալ յիւրաքանչիւր արկեղ դնէր՝ իւրաքանչիւր հանդերձով և իւրեանց կազմութեամբ պնդէր, և կնքէր քրիստոսանշան կնքովն։

761 Իսկ թագաւորն և արքայազունքն ամենայն և մեծամեծքն և նախարարքն և ազատքն և զօրքն ամենայն՝ իւրաքանչիւր բերէին իւղս անուշունս և խունկս ազնիւս, և զգունազոյն նարօտս պատանաց, զմետաքսաէչս ոսկեթելս

with two[2] companions. And the third they built close to the vat-store in the vineyard, where their lodging had been.[3] They constructed and arranged these places, and adorned them with burning lamps of gold and silver and kindled lanterns and lighted candelabras.[4]

760. And he ordered a casket to be made for each one of them, box-shaped, of cedar planks firmly jointed together with iron nails. They all followed his orders and prepared as he had said. At his command they brought the caskets made for the repose of the saints[1] to the door of the vat-store in front of saint Gregory. He took them and entered alone, allowing no one else at all to go inside. "It is not right for you to come near or approach them, for you have not been healed or purified by baptism." But he withdrew alone and placed each of the saints in one of the caskets; he wrapped each one in her clothing and sealed them with the seal of Christ.[2]

761. But the king and all the royal court and the magnates and princes and nobles and the entire army, all brought sweet oils and precious incense and decorated bands of various colors, woven with silken and golden threads.

*կերպարանացն։ Եւ կին թագաւորին և օրիորդք թագաւորազունք և կանայք պատուականացն և մեծամեծացն դատերք՝ բերէին ծիրանիս և զոսկեհուռն դիպակն և զերկնագոյնն, և զսպիտակ իբրև զձիւն հանդերձանս սրբոցն։ Նոյնպէս և զոսկին և զարծաթն և զկտաւսն փութով կուտէին առ դուրս հնձանին։*

762 *Արդ՝ ելեալ տեսանէր սուրբն Գրիգորիոս, զի շեղջ շեղջ կուտեալ էին առ դուրս հնձանին։ Իսկ նա ոչ առնոյր յանձն զնոցա ինչ առ նոսա մատուցանել. ասէ. «Ո՞չ վաղ իսկ ասացի, եթէ ոչ է պատշաճ զձեր ինչ, մինչ չեղէք սրբեալ մկրտութեամբ՝ առ նոսա մատուցանել. այլ յօժարութիւնդ ձեր բարիոք է վասն ձերոյ փրկութեան։ Այլ այս ամենայն յարքունական գանձուն պահեալ կայցէ, մինչև ձեզ հովիւ և վարդապետ ի տուչութենէ բարերարութեան Աստուծոյ պարգևեսցի, և երևեսցէն ձեզ առաջնորդք, քահանայապետք, տեսուչք եպիսկոպոսք և երիցունք եկեղեցական կարգի լուսաւորութեան սիրոյն Աստուծոյ. և այդ ամենայն երթիցէ ի սպաս պաշտաման փառաւորընկալ սեղանոյն Աստուծոյ ի ձեռն քահանայապետին կացելոյ։ Այլ այժմ եկայք զսոսա յիւրաքանչիւր հանգիստս մատուսցուք»։*

763 *Իսկ թագաւորն Տրդատ յայնժամ դեռ ևս էր յամենայն կերպարանս խոզի, բայց*

And the queen and the royal princesses and the honorable women and nobles' daughters brought for the saints purple robes and brocades of gold and blue and garments as white as snow. Similarly they hastened to pile up at the door of the vat-store gold and silver and linen.

762. When saint Gregory came out he saw these piled up by the door of the vat-store. But he did not allow them to offer anything of theirs to the saints, saying: "Did I not tell you earlier that it is unfitting for you to offer them anything of yours until you have been purified by baptism? Nonetheless your good will is advantageous for your salvation. But let all this remain stored in the royal treasury until you be granted a shepherd and teacher by the benevolent providence of God, and you be provided with leaders, high priests,[1] overseeing bishops and priests of the ecclesiastical order[2] for your illumination in the love of God. Then all this will go for the service of the worship at the glorious altar of God through the established high priest. But now come, let us put these to each one's repose."

763. Now king Trdat was still in the form of a pig, save

միայն ի մարդկապէսն խօսելոյ. և կճղակք ձեռացն և ոտիցն իբրև զխոզի, և դէմք երեսացն կնճթացեալ, և ժանիք մեծամեծք իբրև զմեծամեծ վարազաց, և խոզանաստեւն թաւացեալ զամենայն մարմնովն։ Այլ կայր պատեալ զերեսն գլխովն հանդերձ՝ արկեալ զիւրեաւ քուրձ, և կայր երևոյթ տեսլեամբ ի մէջ ժողովրդոցն։ Արդ՝ մատուցեալ աղաչէր զսուրբն Գրիգորիոս, զի զոնեա ձեռացն և ոտիցն հնար լինիցի բժշկութեան, զի ի գործ շինուածոց սրբոցն արժանի արասցէ զէթ սակաւիկ ինչ մասնաւորել զնա։

764 Իսկ երանելին Գրիգորիոս ծունր կրկնեալ ամենատեառն բարերարի մարդասիրին Աստուծոյ, երթեալ արկանէր զսուրբընկալ արկեղօքն երանելի մարմնոցն քրիստոսական վկայիցն՝ մատուցանել պաղատանս. համբարձեալ զբազուկսն հանապազատարած յերկինս՝ ամենայն ժողովելոցն և թագաւորին բժշկութիւն հայցէր։ Ապա դարձաւ առ թագաւորն, շնորհելովն Քրիստոսի զոտսն նորա և զձեռսն բժշկէր. զի թափեցան կճղակք ոտիցն և ձեռացն. որպէս զի առ մի նուագ հաղորդեալ լիցի ի գործ սրբոցն՝ իւրոց ձեռացն վաստակելովն։

765 Իսկ նորա հարցեալ զԳրիգորիոս, թէ զի՞նչ հրամայեսցէ նմա. և նա տայր զչափ արկեղացն սրբոց, զի հատեալ զտեղիսն իւրաքանչիւր բնակութեան՝ յօրինեսցէ ի ներքս ի մար-

only that he could speak in human fashion. The claws of his hands and feet were those of a pig, his face was like a snout, he had great teeth like a boar, and he was hairy all over his body. He stood covering his face and head, wrapped in a hair shirt[1]—an obvious sight in the midst of the people. Then he came forward and begged saint Gregory that at least his hands and feet might be healed so that he might be worthy to participate at least a little in the construction of the saints' chapels.

764. Then blessed Gregory knelt to the Lord of all, the kind and benevolent God, throwing himself by the caskets which contained the blessed bodies of Christ's martyrs, and offered supplications, raising his arms to heaven and begging healing for all the people and the king.[1] Then he turned to the king and by the grace of Christ cured his feet and hands: the claws of his feet and hands fell off, so that he could play a small part in the holy work, laboring with his own hands.

765. Then he asked Gregory what he would order him to do. And he gave him the measure of the holy caskets that he might dig places for each one to lie in, and arrange these inside

տիրասական յարկին հանգստեան։ Իսկ նորա աղաչեալ զԳրիգորիոս՝ զի հրամայեսցէ, մի՝ վասն կնոջ իւրոյ Աշխենայ տիկնոջ, և մի՝ վասն քեռն իւրոյ հարազատի որում անուն էր Խոսրովիդուխտ, զի իշխեսցեն և նոքա հաստատել գործոյն։ Եւ նորա տուեալ հրաման, և նոցա երթեալ ընդ նմա օգնել գործոյն։ Եւ առեալ զչափ արկեղացն՝ փոսել փորել զտեղիս հանգստի սըրբոցն ի ներքս ի տաճարս հանգստարանացն։

766 Արդ՝ առեալ թագաւորին փայտատ և բահ՝ հատանէր զդիրս հանգստոցաց սըրբոցն իւրաքանչիւր ըստ չափու արկեղացն։ Սոյնպէս և ինքեանք երկոքին, Աշխէն տիկին և քոյր թագաւորին Խոսրովիդուխտ, ըստ բրել բրողին ի հանդերձս իւրեանց ընկալեալ զհողն՝ արտաքս պեղէին։ Եւ այսպէս կարգի կարգի յառաջակողմն պատրաստեցին զդիրս սրբոյն Հռիփսիմեայ. և զկնի նորա զերեսուն և զերկուսն ի տեղւոջն յայնմիկ, ուր հեղան արիւնք վկայականք երանութեան նոցա, ի տեղւոջ հանգստեան պատրաստելոյ սուրբ և փառաւոր սեղանոյն Քրիստոսի։ Սոյնպէս և ի վկայարանին՝ որ ի հարաւակոյս քաղաքին էր՝ պատրաստեաց և զայն տեղին երանելւոյն Գայիանեայ և երկուց ընկերացն։ Ինքնին թագաւորն Տրդատ քերբն Խոսրովիդխտով հանդերձ և Աշխէն տիկնաւ զդիրս սրբոցն իւրաքանչիւր բնակութեան յօրինէին

the resting place of the martyrs. Then he begged Gregory to command, first concerning his wife Ashkhēn and secondly for his sister Khosrovidukht, that they too might be able to join in the work. And he gave a command, and they went with him to help in the task. And he took the measure of the caskets in order to dig out places for the repose of the saints inside the funerary chapels.

766. Then the king took an axe and spade and dug out places for the repose of the saints according to the measure of the caskets. Similarly the other two, the queen Ashkhēn and the king's sister Khosrovidukht, as he dug gathered the earth into their clothes and removed it. And in this way they prepared in order first the spot for saint Rhipsimē, and then that for the thirty-two[1] in the place where their blessed martyrs' blood had been shed, in the place of repose prepared for the holy and glorious altar of Christ. Similarly also at the chapel which was to the South of the city he prepared the spot for the blessed Gaianē and her two[2] companions. King Trdat himself and his sister Khosrovidukht and queen Ashkhēn arranged the resting-places for each of the saints

իւրեանց ձեռօքն։

767 Եւ եկն թագաւորն, խնդրեաց հրաժեշտ ի սրբոյն Գրիգորէ եօթնօրեայ ճանապարհ կալեալ ի վեր ի բարձր լեառն ի Մասիս։ Եւ անտի ի գլխոյ լեռնէն առեալ վէմս արաստոյս, անտաշս, անփոկս, յաղթս, ծանունս, երկայնս, ստուարս և մեծամեծս, որ զմի մի ոչ ումեք լինէր հնար, թէ և դիպելոյ բազմութեան ի մարդկանէ՝ զայն շարժել. արդ՝ առեալ սկայազօրն հայկաբար զութ արձանսն՝ ի վերայ իւրոց թիկանցն զայն դնէր և ըստանձնեալ բերէր ի վկայարանս տաճարացն։ Մէն չորս արձանս սեամս կանգնէր՝ իբրև փոխարէն անմիտ մարտին, զոր ընդ սրբոյն պատերազմեալ յիւրում սենեկին. ուր ամենապահ շնորհացն յաղթեալ՝ զայնչափ զարմանալիսն գործեաց։ Եւ սա պսակ յաղթութեան՝ զիւրոյ ձեռացն զօրութեան զվաստակն ամենեցուն ցուցանէր։

768 Արարեալ շինեալ կազմեալ զսուրբ վկայարանսն երեսին՝ հանդերձեցին զարդարեցին և օրհնօք յարդարեցին. և ապա առեալ զիւրաքանչիւր յիւրաքանչիւր տեղի վկայութեանն մատուցանէին։ Զսուրբն Գայիանէ ի կողմն հարաւոյ, իւրոյ մարտիրոսութեանն երկու ընկերօքն դնէր ի վկայարանի տաճարին։ Սոյնպէս և զերանելին Հռիփսիմէ երեսուն և երկու ընկերօքն ի կողմն արևելից ի շինածի տաճարին

with their own hands.

767. Then the king came and asked leave from saint Gregory to make a seven-day journey to the great and lofty[1] mountain Masis.[2] From the summit of the mountain he took solid stones, unworked, unhewn,[3] immense, solid, wide, enormous and huge, which no single person could ever move, not even a great number of men.[4] But he with giant strength like Hayk's[5] picked up eight blocks and carried them on his own back to the chapels. On his own he set up four blocks as a threshold, in compensation as it were for the thoughtless struggle which he had waged with the saint in his own chamber, where conquering by the Savior's grace she had done such marvels. He now showed everyone as a crown of victory the labor of his own hands.[6]

768. Having constructed all three chapels, they adorned them and suitably decorated them. Then they brought each one to her place of martyrdom. Saint Gaianē he placed in the chapel to the South with the two companions of her martyrdom. Similarly the blessed Rhipsimē with the thirty-two[1] companions they placed in the chapel constructed to the East.

գնէին։ Եւ զմիաւորն, որ ի հնձանին սպանաւ՝ սորա տաճարն ի կողմանէ քաղաքին ի հիւսիսոյ կուսէ։ Եւ զամենայն սուրբսն ի միասին գումարեալ, զխաչական վկայսն Քրիստոսի՝ յիւրաքանչիւր հանգիստս մարտիրոսական բնակութեան շինուածոցն փոխեցին։ Ըստ երևելոյ հրամանին տեսլեանն յառաջագոյն Գրիգորի՝ այսպէս և կատարեցաւ։

769 Եւ ի ներքսագոյն խորանացն, ի վերայ հանգստարանացն կենդանագիր գերեզմանացն ի տեղիս սեղանոցն, յերեսին վկայարանին մէն մի կանգնեաց զսուրբ նշան տէրունական խաչին. «Զի միայն, ասէ, առաջի այդր ամենակեցոյց նշանիդ երկիր պագանիցէք տեառն Աստուծոյ արարչին ձերոյ։ Ահա․սիւնք հաստատուն կանգնեցան ձերում խարխուլ շինուածոյն։ Այս այն սիւնք են, ասէ, որ ունիք զբեռն ծանրութեան ձերոյ շինուածոյն փրկութեան. ահա երեք սիւնք. և չորրորդ սիւն կենդանութեան՝ որ զձեզ առ Աստուած վերացուսցէ։ Եկայք գնկատեալ տեղին տէրունական տանն և մեզ հրամայեալն ի մէջ առեալ ի պատիւ փակեսցուք»։

770 Եւ թագաւորաւն և ամենայն ժողովրդովքն հանդերձ երթեալ հասանէր անդէն ի տեղին ցուցեալ հրեղէն սեանն ոսկիակալ խարսխին, և անդէն բարձր քաղաքորմով փակեալ զտեղին ի պատիւ, և դրամբք և գռնափակօք

And the single[2] (martyr) who had been killed in the vat-store had her chapel to the North of the city. Having brought all the saints together, they transferred the crusading martyrs of Christ each to the chapel of repose built for her. According to the command of the vision which had earlier appeared to Gregory, so was it accomplished.

769. And in the center of the canopies,[1] over the resting-place of the life-enclosing tombs on the sites of the altars, he set up in each of the three chapels the holy sign of the Lord's cross. "Only in front of this all-saving sign," he said, "should you worship the Lord God your creator. Behold firm pillars have been set up in your insubstantial edifice. These are the pillars which bear the heavy weight of the edifice of your salvation. Behold three pillars: the fourth is the pillar of life which will raise you to God.[2] Come let us honorably enclose the place that has been indicated and commanded us for the Lord's house."

770. So with the king and all the people he went to the place where the fiery column with the golden base had been revealed,[1] and there they honorably enclosed the spot with a high wall and secured it with doors and bolts.

ամրացուցեալ, և կանգնեալ և անդ զնշան փըր-
կական խաչին. զի առ հասարակ հասեալ ամե-
նայն որ յայն տեղի՝ ամենազօր արարչին Աս-
տուծոյ երկրպագեալ ծունր կրկնեսցեն։

771 Եւ այսպէս լուսաւորեալ զսիրտս և զո-
գիս ժողովրդոցն քարոզութեամբ, աղիւն Աս-
տուածութեանն յաղեալ համեմեալ. թողեալ
զպաշտօն ունայնութեան սնոտեաց ձեռագործ
կռոցն արարելոց, և ի պաշտօն դարձեալ մար-
դասիրին Աստուծոյ։

772 Եւ յայնմ հետէ և անդր կանխէին
անձնական կամօք ի պահս և յաղօթս, և յեր-
կիւղ և ի սէր. և յունկնդրութիւն Աստուծոյ
վարդապետութեանն փութային։

773 Արդ՝ իբրև ժողովեալք միահա-
մուռ ի պաշտօնարան տեղւոյն յարկի տանն Աս-
տուծոյ կային՝ խօսել սկսաւ երանելին Գրիգո-
րիոս և ասէ. «Դիք ծունր ամենեքեան, զի ա-
րասցէ Տէր բժշկութիւն հարուածոցդ»։ Եւ եդեալ
ծունր ամենեցուն առ Աստուած, և երանելւոյն
Գրիգորի մեծաւ աղօթիւք և պաղատանօք խըն-
դրեալ ուժգին ճգնութեամբ և արտասուօք վասն
թագաւորին բժշկութեան։ Եւ թագաւորն մինչ
դեռ կայր ի տեսիլ կերպարանաց խոզի ընդ ժո-
ղովրդեանն՝ յանկարծակի հարեալ դղրդման, և
զխորխն խոզի արտաքոյ մարմնոյն իւրոյ ի բաց
ընկենոյր, ժանդատեսիլ ժանեօքն և կնճթադէմ

There they set up the sign of the saving cross, that everyone might come to that spot in order to bow the knee[2] and worship God, the almighty creator.

771. In this way he illuminated the hearts and souls of the people by his preaching, seasoning them with divine salt. They abandoned the vain worship of useless idols made by hand and turned to worship the benevolent God.

772. After this they willingly set themselves to fasting and prayer, and devoted themselves to fear and love and attention to God's teaching.

773. Now, when they had all gathered together in the place of worship of the house of God, blessed Gregory began to speak, saying: "Bend the knee, everyone, that the Lord may effect the healing of your torments." They all bent the knee to God, and blessed Gregory with fervent prayers and supplications tearfully implored healing for the king. And the king, while he was standing among the people with the appearance of a pig, suddenly trembled and threw off from his body the pig-like skin with its tusk-like teeth and snout-like face,

ճրեսօքն հանդերձ. խոզանացեալ մազովն թաւու-
թեամբ զխորխացեալ կաշին ի բաց ընկենոյր։
Եւ դէմք երեսացն դարձան յիւր իսկ կերպարան-
սըն, և մարմինն փափկացեալ մատաղացեալ լի-
նէր իբրև զառօրեայ մանկան ծնելոյ, և ողջան-
դամ մարմնովքն ամենեքին բժշկեցաւ։

774 Սոյնպէս և ամենայն մարդիկն, որ էին
բազմութիւնք կուտեալք՝ յիւրաքանչիւր ախտից
թօթափեալք. ոմանք բորոտք, և ոմանք անդա-
մալոյծք և գօսացեալք, և ջրգողեալք որովայ-
նիւք, և դիւահարք, և գոնձացեալք, և պատա-
գրոսք։ Եւ այսպէս բացեալ շնորհացն մարդա-
սիրին Քրիստոսի զիւր ամենակար բժշկարանն՝
բժշկել զամենեսին ի ձեռն Գրիգորի, ախտա-
ցեալքն թօթափէին յիւրաքանչիւր հիւանդու-
թեանց։ Սոյնպէս և բացեալ լինէր աղբիւր գիտու-
թեանն Քրիստոսի, զլսելիս ամենեցուն լնուլ ճըշ-
մարտապատում վարդապետութեամբն Աստուծոյ։

775 «Անդ էր այնուհետև սրտալիր ուրա-
խութիւն, և ակնավայել տեսիլ հայեցելոցն։
Քանզի երկիր, որ և համբաւուցն անգամ օտար
էր կողմանցն այնոցիկ, յորում ամենայն աս-
տուածագործ սքանչելութիւնքն գործեցան՝ առ
ժամայն վաղվաղակի իրացն եղելոց խելամուտ
լինէր. ոչ միայն առ ժամանակաւն պաշտելոցն,
այլ և յառաջակարգ յաւիտեանցն և յապա եկե-
լոցն, և սկզբանն և կատարածի, և ամենայն աս-

and he cast off the skin with its pig-like hair. His face returned to its own form and his body became soft and young like that of a newly born infant; he was completely healed in all his limbs.[1]

774. In similar fashion all the people who were gathered in great numbers were cured of each one's affliction: some had been lepers, some paralytic, crippled, hydropic, possesed, suffering from worms or gout. Thus Christ in his mercy opened his all-powerful healing grace, and healed all through Gregory; those afflicted were cured of each disease. So also was the source of knowledge of Christ opened and it filled the ears of all with the true teaching of God.[1]

775. Then was there heartfelt rejoicing and a joyful visage on the onlookers. For the land, which until then had been ignorant of reports of those regions where all the divine miracles had been worked, now suddenly was informed of what had occurred—not only of what had recently been done, but also of the earlier messages and what later came about, of the beginning and the end, and of all

տուածատուր աւանդութեանցն։

776 Իսկ իբրև զչափ առեալ զիրացն հաստատութեան՝ համարձակագոյն և առաւելագոյն զաշակերտութիւն նորագիւտ վարդապետութեանն խմբէին ուսուցանել, թեքել և պատրաստական քարոզութեանն անգէտ մարդկանն յօրինել։ Որոց և ինքեանք իսկ ի կողմանց կողմանց և ի գաւառաց գաւառաց Հայաստան աշխարհին՝ յորդեալք և դրդեալք հասանէին ի բացեալ աղբիւրն շնորհաց գիտութեանն Քրիստոսի։ Քանզի յԱյրարատեան գաւառին, ի թագաւորանիստ կայեանսն, բղխեցին Հայոց տանն Թորգոմայ շնորհք քարոզութեան Աւետարանին պատուիրանացն Աստուծոյ»։

777 Առնոյր այնուհետև խորհուրդ հաւանութեան ընդ թագաւորին և ընդ իշխանսն, նախարարօքն և զօրօքն հանդերձ՝ վասն խաղաղութեան հասարակաց, քակել, կործանել, բառնալ զգայթակղութիւնսն ի միջոյ, ի բաց կորուսանել. զի մի՛ ումեք լիցի խէթ և խութ այնուհետև ընդ ոտս անկանել և խափան առնել՝ ելանել յազատութիւնն վերին։ Այլ զի քաջալերեալք ամենեքեան հասանիցեն ի բարեացն կատարումն, ի նշանակեալ նպատակն երանելւոյն Պաւղոսի, թէ «Միաբան հասցուք ի չափ հասակին Քրիստոսի», որոյ ազատութիւնն յերկինս է. ակն ունել փրկչին մեծին Աստուծոյ, և պար-

the divine traditions.

776. When they had been informed of the exactness of these things they were all the more willing and anxious to learn and study the new doctrine, and as ignorant men to be instructed and edified in this preaching. They came from every part and region of Armenia; in great numbers they excitedly arrived at the opened source of the grace of knowledge of Christ. For in the province of Ayrarat, at the royal residence, there flowed forth for the Armenian house of T'orgom[1] the grace of the preaching of the gospel of God's commandments.[2]

[Chapter 10. The pagan shrines are overthrown]

777. He then took counsel with the king and the nobles, the princes and the army, concerning a common peace: they agreed to overthrow, destroy and extiripate the scandals, to suppress them entirely lest there be thenceforth an obstacle to anyone or a stumbling block, preventing him from attaining celestial freedom; and that all might be strengthened and attain perfect blessing, the goal indicated by blessed Paul: "That in unity[1] we may attain the measure of the stature of Christ [Eph. 4.13]," whose freedom is in heaven, (whence) we look for the great Savior, God [cf. Phil. 3.20],

ծանք ի խաչն, և զովութիւն ի փառս Աստուծոյ։

778 Իսկ անդէն վաղվաղակի թագաւորն ինքնիշխան հրամանաւ, և ամենեցուն հաւանութեամբ, գործ ի ձեռն տայր երանելւոյն Գրիգորի, զի զյառաջագոյն զհայրենական հնամեացն նախնեացն և զիւր կարծեալ աստուածսն չաստուածս անուանեալ՝ անյիշատակ առնել, ջնջել ի միջոյ։ Ապա ինքն իսկ թագաւորն խաղայր գնայր ամենայն զօրօքն հանդերձ ի Վաղարշապատ քաղաքէ՝ երթալ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինսն Անահտական դիցն, և որ յԵրազամոյն տեղիսն անուանեալ կայր։ Նախ դիպեալ ի ճանապարհի երազացոյց երազահան պաշտաման Տրի դից, դպրի գիտութեան քրմաց, անուանեալ Դիւան գրչի Որմզդի, ուսման ճարտարութեան մեհեան. Նախ ի նա ձեռն արկեալ՝ քակեալ այրեալ աւերեալ քանդեցին։

779 Ուր և երևեալ կերպարանեալ դիւացն ի նմանութիւն առն և ձիոյ բազմութեան, կազմութեան գնդի և հետևակազօրու, մկնդաւորք և ուռնաւորք, առաջի ընթացեալք ի կերպարանս մարդկան նմանութեան, նիզակօք և նշանօք, ի զէն և ի զարդ վառեալք, մեծաւ գոչմամբ զաղաղակ հարեալ՝ փախստեայք յԱնահտական մեհեանն անկանէին, ուստի ընդ հասեալսն մարտ եդեալ կռուէին. նետս անոյժս քարավէժս թանձրատարափս ի վերուստ ի շինուածոցն ի խո-

and our boast is in the cross and our joy in the glory of God.

778. Then straightway the king by sovereign edict, with the agreement of all, entrusted blessed Gregory with the task of obliterating and extirpating the former ancestral deities of his forefathers, falsely called gods.[1] Then the king in person hastened with all his army from the city of Vaļarshapat and came to the city of Artashat in order to destroy the altars of the deity Anahit[2] there, and those which were at the place called Erazamoyn.[3] On the road he first came across the shrine of the god Tir,[4] the interpreter of dreams,[5] the scribe of pagan learning, who was called the secretary[6] of Ormizd,[7] a temple of learned instruction. (Here) first they set to work, and destroyed, burnt, ruined and razed it.

779. And here the demons took visible form[1] in the shape of a multitude of cavalry and a force of infantry, bearing lances and javelins, rushing forward like men armed with spears and standards. With a great shout they raised a cry and fled, rushing into the temple of Anahit whence they attacked those who had arrived. From the building they showered down on the men below harmless arrows and a dense rain of missiles,

նարհ զմարդկան ցնդէին. զոր և սակաւ մի զարհուրեցուցեալ, զնորահաւատ մարդիկն։ Իսկ սուրբն Գրիգոր իբրև տեսեալ զայն՝ զնշան տէրունական խաչին առնոյր և դիմէր ի դուռն մեհենին. և ամենայն շինուածք մեհենին ի հիմանց դղրդեալ տապալեցան. և լուցեալ յանկարծօրէն փայտակերտն հրդեհեցաւ ի տէրունական նշանին զօրութենէ, և ծուխն ծառացեալ մինչև յամպս հասանէր։

780 Եւ ամենայն դևքն ի փախուստ դարձեալ՝ առաջի մարդկանն երևեցան, զօձիս զգլխով արկեալ, և զճակատ հարեալ, և զճիչ բարձեալ՝ մեծագոչ լալեօք ասէին, թէ «Վա՜յ մեզ, վա՜յ մեզ, վա՜յ մեզ, զի յամենայն երկրէ փախստական արար զմեզ Յիսուս որդին Մարեմու, դստերն մարդկան. և աստի ևս ի ձեռն կապելոյս և մեռելոյս եհաս մեզ փախստական լինել։ Արդ՝ յո՞ դիմեալ փախիցուք, զի փառք նորա լցին զտիեզերս։ Այլ երթամք մեք ի բնակիչս լերինն Կաւկասու, ի կողմանս հիւսիսոյ. թերևս անդ հնար լիցի և ապրել մարթասցուք։ Զի առանց հանգստեան զօդս կռծեալ՝ անջատ զմեզ ի բնակութենէ մարդկան՝ կատարել զցանկութիւն կամաց մերոց նոքօք»։

781 Եւ զայս ասացեալ առաջի ամենեցուն. զի մարդիկն որ լուան՝ առաւել ևս հաստատեցան ի հաւատս ամենեքին. իսկ սևազունդ դի-

but they scarcely frightened the men with newly-found faith. But saint Gregory, when he saw this, made the sign of the Lord's cross[2] and ran to the door of the temple. Then the whole edifice of the temple shook from its foundations and collapsed. Suddenly catching fire the wooden construction[3] burned by the power of the Lord's sign, and the smoke rose up to the clouds.

780. Then all the demons turned in flight before the people, tearing their clothes at the collar and striking their foreheads [cf. I Macc. 5.14]. Raising a scream they loudly wept, saying: "Woe to us, woe to us, woe to us. For Jesus the Son of Mary, daughter of men, has made us flee from the whole land. And here too through this imprisoned and dead man he has forced us to flee. But whither shall we flee, for his glory has filled the universe [cf. Is. 6.3]? We shall go to the inhabitants of the Caucasus mountains, to the Northern regions; perhaps there we shall be able to survive. For (he has made us) ceaselessly beat the air and has separated us from the habitation of men, (preventing) us from accomplishing our desires through them."[1]

781. This they said in front of all, but the men who heard were all even more confirmed in the faith. Then the black swarm

ւացն աներևոյթք եղեալ, չքոտեալք ի տեղւոյն իբրև զծուխ պակասեցան։ Իսկ մարդկանն հասելոց անդէն քանդեալ զհիմունս մնացեալս աւերէին, և զգանձսն մթերեալս՝ աղքատաց, տառապելոց և չքաւորաց մասն հանէին։ Եւ զդաստակերտսն և զսպասաւորսն քրմօքն հանդերձ և նոցին գետնովքն և սահմանօքն ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեան։

782 Եւ առ հասարակ ամենեցուն սերմանեալ զաստուածպաշտութեան զբանն, և զամենեսեան ի Տեառնն ճանապարհի կացուցանէր՝ գիտուն լինել պատուիրանաց արարչութեանն։ Եւ յամենայն քաղաքս Հայոց և ի գեօղս և յաւանս և յագարակս երևեցուցանէր զտեղիս տան Աստուծոյ։ Բայց ոչ առնէր յայտ զհիմնարկութեանն զհետ, և ոչ սեղան ուրեք ուղղեալ յանուն Աստուծոյ, զի չունէր զպատիւ քահանայութեան. այլ լոկ պարսպէր քաղաքորմով զտեղիսն, և կանգնէր զնշան տէրունական խաչին։ Նոյնպէս և յելս և ի մուտս ճանապարհաց և ի փողոցս և ի հրապարակս և ի ճանապարհակիցս պահ և ապաւէն զերկրպագեալն յամենեցունց զնոյն նշան կանգնէր։

783 «Առնոյր այնուհետև զԱրշակունեաց տոհմի որեարն ի վարժս վարդապետութեան պարապեցուցեալ. որոց առաջնոյն Տրդատ անուն, որ և թագաւորն իսկ էր, ամենայն տամբ իւ-

of demons disappeared and were lost from that place like smoke. But the people who had come razed the remaining foundations, and distributed the accumulated treasures to the poor, the suffering and the needy. And they devoted to the church's service the (temple's) property and servants with the pagan priests and their lands and territories.[1]

782. He sowed the word of true piety among them all and set everyone on the Lord's path, informing them of the Creator's commands. In all the cities of Armenia, and the villages and hamlets and estates he indicated sites for the house of God. But he did not draw the foundation or erect an altar anywhere to the name of God, because he did not possess the rank of priesthood. But he simply encircled the places with a wall and set up the sign of the Lord's cross. He similarly set up the same sign worshipped by all as a guard and refuge at the ends and beginnings of roads, in the streets, and at squares and intersections.[1]

783. Then he took the men of the Arsacid family and instructed them in the (Christian) doctrine. Of these the foremost was Trdat, who was the king, with all his household.

րով։ Նոյնպէս և զամենայն ոգի ջանայր յերիւրել հաստուցանել ի գիտութիւն ճշմարտութեան»։ «Եւ յորժամ այնպէս լի առնէր ընդ ամենայն տեղիս զսուրբ Աւետարանն Տեառն, և ամենեցուն զգուշացուցեալ անմեղութեամբ զճանապարհս կենաց վարելոյ»՝ ապա ամենեցուն զայն դնէր ի մտի, զի «տեառն Աստուծոյ իւրեանց միայն երկիր պագցեն, և նմա միայն սպաս տարցին։»

784 Եւ ապա յանձն արարեալ զնոսա ամենապահ շնորհացն Աստուծոյ, և ինքն առեալ զԹագաւորն՝ խաղայր գնացեալ երթայր, զի և յայլ կողմանս ամենայն սահմանացն Հայաստան աշխարհին սերմանեսցեն զբանն կենաց։ Եւ երթայր հասանէր ի Դարանաղեաց գաւառն, զի և անդ զանուանելոցն զսուտ աստուածոցն զբագինսն կործանեսցեն, որ էր ի գեօղն Թորդան, մեհեան անուանեալ ապիտակափառ դիցն Բարշամինայ. նախ զնա կործանէին, և զպատկեր նորին փշրէին. և զգանձսն ամենայն, զոսկւոյն և զարծաթոյն , աւար հարկանէին և զայն աղքատաց բաժանեալ բաշխէին։ Եւ զգեօղն ամենայն դաստակերտօքն հանդերձ և սահմանօքն յանուն եկեղեցւոյն նուիրէին, և զամենափրկիչ նշանին օրինակ և անդ կանգնէին։

785 «Իսկ երանելւոյն վաղվաղակի զաւետարանական արուեստն ի մէջ առեալ, ձեռն

Similarly he attempted to direct and establish every soul in the knowledge of the truth. And when he had thus filled every place with the Lord's gospel and had warned everyone to walk the paths of life in innocence, then he persuaded them all to worship only the Lord their God and to serve him alone [cf. Matt. 4.10; Lk. 4.8].[1]

784. Then he entrusted them to the all-protecting grace of God, while he himself, taking the king, hastened to the other regions of the whole territory of Armenia that they might there sow the word of life. He came to the province of Daranaḷik' in order to destroy the altars of those falsely called gods, where in the village of T'ordan[1] there was a famous temple of the glorious god Barshamin.[2] First they destroyed this and smashed his image; they plundered all the treasures, both of gold and silver, and distributed them to the poor. And the whole village with its properties and territories they devoted to the name of the church. And here too they set up a copy of the all-saving sign.[3]

785. Then the saint straightway introduced his evangelical skill;

*արկեալ զգաւառաւն, հանդերձ միամիտ սատարութեամբ թագաւորին՝ գերէր զամենեսեան ի հայրենեացն աւանդելոց ի սատանայապաշտ դիւական ի սպասաւորութենէն ի հնազանդութիւն ծառայութեան Քրիստոսի մատուցանէր։ Եւ յորժամ ի նոսա զբանն կենաց սերմանեալ, և զամենեսեան յաստուածպաշտութիւն կրթեալ, որ և յայտնի իսկ բնակչաց գաւառին նշանք մեծամեծք երևեալ, կերպակերպ նմանութեամբք դիւացն փախստական լինելով անկանէին ի կողմանսն Խաղտեաց. և իբրև զնոսա ևս հաստատէր՝ ապա երթեալ հասանէր յամուր տեղին անուանեալ Անի, ի թագաւորաբնակ կայեանսն հանգստոցաց գերեզմանաց թագաւորացն Հայոց։ Եւ անդ կործանեցին զբագինն Զեւս դիցն Արամազդայ, հօրն անուանեալ դիցն ամենայնի։ Եւ անդ կանգնեալ զտէրունական նշանն, և զաւանն ամրականաւն հանդերձ ի ծառայութիւն եկեղեցւոյն նուիրէին։*

786 *Եւ ապա յետ այսորիկ անդէն ի սահմանակից գաւառն Եկեղեաց ելանէր։ Եւ անդ երևեալ դիւացն ի մեծ և ի բուն մեհենացն Հայոց թագաւորացն, ի տեղիս պաշտամանցն, յԱնահտական մեհենին, յԵրէզն աւանի. ուր ի նմանութիւն վահանաւոր զօրու ժողովեալ դիւացն մարտնչէին, և մեծագոչ բարբառով զլերինս հնչեցուցանէին։ Որք փախստականք եղեալք,*

he took over the province, and with the devoted assistance of the king brought all from their traditional customs and from the service of Satan and of demons to obedient servitude to Christ. While he was sowing the word of life among them and instructing them all in true piety, there appeared to the inhabitants of the province tremendous miracles: taking various forms the demons fled to the regions of[1] Khaḷtik‘.[2] When he had further confirmed these people, then he went to the fortified site of renowned Ani,[3] the site of the royal burial ground of the Armenian kings. There they destroyed the altar of the god Zeus-Aramazd, called father of all the gods.[4] And there they set up the Lord's sign, and the town with its fortress they devoted to the service of the church.

786. After this he came to the neighboring province of Ekeḷeats‘.[1] Here the demons appeared in the places of worship of the most important shrines of the Armenian kings, in the temple of Anahit in the town of Erēz.[2] The demons gathered together and gave battle in the form of an army carrying shields;[3] with a tremendous shout they made the mountains echo. They were put to flight,

և ընդ փախչելն նոցա կործանեալ բարձրաբերձ պարիսպքն հարթեցան։ Եւ որք դիմեալ հասեալ էին զգաստացեալ զօրօքն, սուրբն Գրիգոր թագաւորաւն հանդերձ, փշրէին զոսկի պատկերն Անահտական կանացի դիցն. և ամենևին զտեղին քանդեալ վատնէին, և զոսկին և զարծաթն աւար առեալ։ Եւ անտի ընդ գետն Գայլ յայնկոյս անցանէին, և քանդէին զՆանէական մեհեանն զդըստերն Արամազդայ ի Թիլն յաւանի։ Եւ զգանձս երկոցուն մեհենացն աւարեալ ժողովեալ՝ ի նուէր սպասուց սուրբ եկեղեցւոյն Աստուծոյ թողուին տեղեօքն հանդերձ։

787 Եւ այսպէս ի բազում տեղեաց բառնային զգայթակղեցուցիչսն անմռունչս, զձուլեալսն, կռփեալսն կոփեալսն, քանդակեալսն, անպիտանսն, անօգուտսն, վնասակարսն, արարեալսն անմտութեամբ ցնորելոց մարդկան, դարձեալ սրտի մտօք ի հաւատսն հաստատեալք։ «Արքային մեծասաստ իշխանութեամբ տայր հրաման՝ սատանայակուր և դիւամոլ ազգացն կողմանցն այնոցիկ՝ թափել և զերծանել յունայնավար հնացելոցն սնոտիապործ պաշտամանցն, և հնազանդ լինել ամենահեշտ լծոյ ծառայութեանն Քրիստոսի»։

788 «Եւ յորժամ անդ ևս զայս արարեալ հաւասարութեամբ ամենեցուն՝ առ հասարակ լցեալ զպիտոյս քարոզութեանն»՝ ոչ ինչ պատատան լինէր յահ և ի սաստ թագաւորին՝ հաւա-

but as they fled the high walls collapsed and were flattened. Those who had arrived, saint Gregory, the king and the pious army, broke into pieces the golden image of the female deity Anahit, and they completely destroyed and pillaged the place, seizing the gold and silver. From there they crossed over the river Gayl[4] and destroyed the temple of Nanē, the daughter of Aramazd,[5] in the town of T'il.[6] They collected the plundered treasure of both temples and devoted it with the lands to the servants of the holy church of God.

787. In this way from many places they removed the silent, cast, hammered, beaten, sculpted, useless, profitless, and harmful scandals that were constructed by the witlessness of stupid men;[1] and they were sincerely converted and confirmed in the faith. The king with his royal power gave a command to the people of those regions, who were possessed by Satan and the demons, to reject and free themselves from these useless, outworn and vain cults and to become obedient to the sweet yoke [cf. Matt. 11.30] of servitude to Christ.

788. While he was so acting there with the support of all, he fulfilled all things necessary for preaching the gospel.[1] He did not at all rely on the awe and authority of the king

նեցուցանելոյ զամենեսին, և ոչ լոկ բանիւք միայն, այլ և նշանօք և արուեստիւք և ազգի ազգի բժշկութեամբք փառաւոր լինէր սուրբ անունն Քրիստոսի։ Այս ամենայն գործեցաւ կամօք մարդասիրին Աստուծոյ ի ձեռն Գրիգորի։ Եւ յամենայն տեղիս հասեալ ինքնին թագաւորն լինէր քարոզ, խոստովանելով զիւր զամբարշտութիւնսն. և պատմէր զամենայն արարեալսն Աստուծոյ զսքանչելիսն որ անցին ընդ նա, և զողորմութիւն բժշկութեանն, և զայն ցուցանէր բարձրաձայն աղաղակաւ, յայտ յանդիման առաջի ամենեցուն։

789 Ապա փութացեալ հասանէր ի գաւառն Դերջան, զի և անդ յառաջասցի լնուլ զառաքելական քարոզութեանն զարուեստ մշակութեանն երկովք, և զերծուցանել զնոսա ի գարշելի «դիւցական սատանայակիր բարուցն ճիւաղութենէ, զխուժադուժ կողմանսն աշակերտելով, զխոշորագոյն և զխեցբեկագոյն բարս հեթանոսութեան շրջել ի զգաստութիւն աստուածուսոյց իմաստութեանն. և ծանօթս աւետարանական աւետեացն, յարդարեալս ընդելս կացուցանէր»։

790 Գայր հասանէր ի Մրհական մեհեանն անուանեալ որդւոյն Արամազդայ, ի գիւղն զոր Բագայառիճն կոչեն ըստ պարթեւարէն լեզուին։ Եւ զայն ի հիմանց բրեալ խլէին, և զգանձսն

in order to persuade everyone; nor merely by words but also by signs and miracles and various kinds of healings the holy name of Christ was made glorious. All this was done by the will of benevolent God through Gregory. The king himself came to every place and acted as a preacher, confessing his own impieties and telling of all the miracles done by God to him, and of the mercy of his healing. These things he revealed with a loud voice and clearly in the presence of all.[2]

789. Then he hastened to the province of Derjan[1] in order to spread there also the message of the apostolic preaching by works of labor, and to free them from the beastliness of their abominable and demon-possessed way of life. He instructed those barbarous regions in order to change their gross and rough heathen habits to the sobriety of the divinely taught wisdom, and to inform them of the gospel's message and make them familiar with it.[2]

790. He came to the temple of Mihr,[1] called the son of Aramazd, to the village called Bagayaṙich[2] in the Parthian tongue. This he destroyed down to its foundations;

մթերեալս ւստր հարկանէին և աղքատաց բաշխէին, և զտեղիսն նուիրէին եկեղեցւոյ. և զընակիչս աշխարհին հաստատէր ի գիտութիւն ճշմարտութեան։ Եւ յայնմհետէ փոյթ ի վերայ ունէր «զառընթերակաց արքունիսն հանդերձ մեծամեծ աւագանւոյն և ամենայն ազատագունդ բանակաւն աստուածեղէն իմաստութեամբն վարդապետել»։

791 Իսկ թագաւորն Տրդատիոս հանդերձ միաբանութեամբ կնաւ իւրով Աշխէն տիկնաւ, և քերբ իւրով Խոսրովիդխտով, հրաման ետ ի ժողով կոչել միաբանութեամբ ամենայն զօրաց իւրոց։ Եւ վաղվաղակի հասանէին ի ժամադիրն յամենայն կողմանց ըստ հրամանին՝ յԱյրարատ գաւառն ի Վաղարշապատ քաղաք։ Քանզի և թագաւորն չու արարեալ անդր հասանէր։ Եւ կուտեցան առ հասարակ զօրքն ամենայն, և մեծամեծք և կուսակալք, գաւառակալք, պատուաւորք, պատուականք, զօրավարք, պետք և իշխանք, նախարարք և ազատք, դատաւորք և զօրագլուխք, և հասեալ կային առաջի թագաւորին։

792 Խորհուրդ ի մէջ առնոյր թագաւորն ընդ ամենեսին, փութալ հասանել՝ բարեաց գործոց ժառանգաւոր լինել։ «Եկա՛յք, ասէ, ճեպեսցուք զայս առաջնորդ կենաց մերոց տուեալ մեզ յԱստուծոյ զԳրիգորդ հովիւ կացուցանել, զի

he plundered its accumulated treasures and distributed them among the poor, and he devoted the lands to the church. The inhabitants of the land he confirmed in the knowledge of the truth. Then he took pains to instruct in the divine wisdom the accompanying courtiers with the great magnates and all the noble army.[3]

[Chapter 11. Gregory is consecrated at Caesarea]

791. Then king Tiridates, with his wife, queen Ashkhēn, and his sister Khosrovidukht, ordered a gathering to be summoned of all his army. And straightway from every region, following his command, they came to the rendezvous at the city of Vaḷarshapat in the province of Ayrarat; the king also journeyed thither. The whole army came together, and the magnates and prefects, provincial governors, dignitaries and notables, leaders and nobles, princes and freemen, judges and officers,[1] and they mustered before the king.

792. The king held a council with them all, urging them to become heirs to good works: "Come," he said, "let us hurry to make as our pastor[1] Gregory, this guide of our lives given us by God, so that

լուսաւորեսցէ զմեզ մկրտութեամբ և նորոգեսցէ օրէնսուսոյց խորհրդոմն արարչին մերոյ Աստուծոյ»։

793 Իսկ Գրիգոր ոչ առնոյր զայս յանձն, առնուլ զմեծ պատիւ քահանայապետութեանն. ասէ. «Ոչ կարեմ հանդարտել բառնալ վասն անչափակալ բարձրութեանն զօրել. զի անպատում է այս պատիւ քրիստոսատուր փառացն առաջնորդութեան, միջնորդ կալ ընդ Աստուած և ընդ մարդիկ. այլ զարժանին խնդրեալ գտցեն»։

794 Իսկ անդէն տեսիլ սքանչելի յԱստուծոյ երևեալ թագաւորին՝ տեսանէր զհրեշտակ Աստուծոյ, զի խօսէր ընդ նմա և ասէր, թէ «Պարտ է ձեզ զԳրիգորդ վիճակեցուցանել առանց յապաղելոյ ի քահանայապետութիւն, զի լուսաւորեսցէ զձեզ մկրտութեամբ»։ Նոյնպէս երևեալ և Գրիգորի տեսիլ հրեշտակի Աստուծոյ, զի մի իշխեսցէ ինչ պնդել յամառել վասն այնր, «զի ի Քրիստոսէ է այդ հրամայեալ, ասէ, քեզ»։ Իսկ նա հաւանեալ վաղվաղակի բարբառեալ ասէր, թէ «Կամք Աստուծոյ կատարեսցին»։

795 Յայնժամ թագաւորն վաղվաղակի փութով և երկիւղիւ և մեծաւ խնդութեամբ հոգացեալ, գումարեաց զգլխաւորս նախարարացն և զկուսակալս աշխարհացն. առաջին՝ իշխանն Անգեղ տան, երկրորդ՝ իշխանն Աղձնեաց, որ է բդեաշխն մեծ. երրորդ՝ իշխանն մարդպե-

he can illuminate us with baptism and as a teacher of the law [cf. Acts 5.34][2] renew us by the sacrament of God our creator."

793. But Gregory would not agree to accept the honor of the high priesthood, saying: "I am unable to undertake this because of its immeasurable height. For this honor of the glory given by Christ of being guide and intermediary between God and men is ineffable [cf. I Tim. 2.5]. But let them seek and find one who is worthy."

794. However, there then appeared a wonderful vision from God to the king; he saw the angel of God speaking to him and saying: "You must without delay have Gregory ordained to the high priesthood, so that he may illuminate you by baptism." Similarly the vision of God's angel appeared to Gregory to prevent him from persisting in this matter: "For this," he said, "has been commanded you by Christ." Then he was convinced,[1] and straightway said: "May God's will be accomplished [cf. Acts 21.14]."

795. Then the king immediately, in haste and fear and great joy, gathered the leading princes and governors of the land.[1] The first was the prince of the house of Angḷ;[2] the second the prince of Aḷdznik',[3] who was the great *bdeashkh*;[4] the third the prince

տութեան իշխանութեանն, չորրորդ՝ իշխանն թա-
գակապ իշխանութեան ասպետութեանն, հինգ-
երորդ՝ իշխանն սպարապետութեան, զօրավար
Հայոց աշխարհին. վեցերորդ՝ իշխանն Կորդով-
տաց աշխարհին, եօթներորդ՝ իշխանն Ծոփաց
աշխարհին. ութերորդ՝ իշխանն Գուգարացւոց
աշխարհին, որ միւս անուանեալ բդեաշխն. ին-
ներորդ՝ իշխանն Ռշտունեաց աշխարհին. տաս-
ներորդ՝ իշխանն Մոկաց աշխարհին. մետասան-
երորդ՝ իշխանն Սիւնեաց աշխարհին. երկոտա-
սաներորդ՝ իշխանն Ծաւդէից աշխարհին. երեք-
տասաներորդ՝ իշխանն Ուտիացւոց աշխարհին.
չորեքտասաներորդ՝ իշխանն շահապ Զարաւանդ
և Հեր գաւառի. հնգետասաներորդ՝ իշխանն
մաղխազութեան տանն. վեշտասաներորդ՝ իշ-
խանն Արծրունեաց։

796 Այս իշխանք են ընտիրք, կուսակալք,
կողմնակալք, հազարաւորք, բիւրաւորք ի մէջ Հա-
յաստան աշխարհի տանն Թորգոմայ, զորս գու-
մարեաց թագաւորն Տրդատ և առաքեաց գնոսա
ի կողմանս Կապուտկացւոց, ի քաղաքն Կեսա-
րացւոց, զոր ըստ հայերէն լեզուին Մաժաք կո-
չեն. զի տարեալ զԳիրգորն՝ քահանայապետ կա-
ցուսցեն իւրեանց աշխարհին. և հանդերձեցան
դէտ ակն ունել ճանապարհացն։ Եւ հրամայեաց
հրովարտակ գրել օրինակ զայս.—

of the princedom of *Mardpet-dom*;[5] the fourth the prince of the crowning-rank, the *aspet*;[6] the fifth the prince *sparapet*,[7] the general of the Armenian land; the sixth the prince of the land of Korduk';[8] the seventh the prince of the land of Tsop'k';[9] the eighth the prince of the land of Gugark',[10] called *the other bdeashkh*;[11] the ninth the prince of the land of the Rshtunik';[12] the tenth the prince of the land of Mokk';[13] the eleventh the prince of the land of Siwnik';[14] the twelfth the prince of the land of Tsawdēk';[15] the thirteenth the prince of the land of Uti;[16] the fourteenth the prince prefect of the province of Zaravand and Her;[17] the fifteenth the prince of the house of the *Malkhaz-dom*;[18] the sixteenth the prince of the Artsrunik'.[19]

796. These were the chosen princes, the prefects, governors, generals and marshals in Armenia, the house of T'orgom,[1] whom king Trdat gathered together and sent to the region of Cappadocia, to the city of Caesarea, called in the Armenian tongue *Mazhak*,[2] in order to bring Gregory to be ordained high priest for their country. So they made their preparations for the journey.[3] And (the king) commanded an edict to be written as follows:

### ՊԱՏՃԷՆ ՀՐՈՎԱՐՏԱԿԻՆ

797 «Ի վաղնջուց հետէ կորուսեալք, ազգիտութեամբ մեղացն պաշարեալք, մառախլապատք, միգապատք, ափշեալք, ոչ կարացեալ հայել իմանալ նկատել, զարեգակն արդարութեան տեսանել. վասն այսորիկ խաւարեալք էաք, ի մութ թաթաւէաք։ Իսկ յորժամ քաղցրութիւն և մարդասիրութիւն արարչին մերոյ Աստուծոյ երևեցաւ՝ խրատել և լուսաւորել զմեզ զարարածս իւր՝ ծագեաց զնշոյլս կենդանի լուսոյն իւրոյ ի սիրտս մեր, և կենդանացոյց զմեռելութիւնս մեր, զիւր զսուրբ զսիրելի զվկայսս իւր յայս կողմանս առաքելով։

798 «Որք եկեալ՝ մերում անմտութեանս զիւրեանց քաջութեան նահատակութեան առաքինութեան զհանդէսն ցուցին։ Իբրև զի Տէրն գիտէր իսկ զնոցա քաջութիւնն թէ որպիսիք են. այլ զի և մեզ անմտացս ուսուսցէ զիմաստութիւն, թէ որչափ սիրով սիրեցին սոքա զՏէրն իւրեանց, վասն այսորիկ ընդ մարտին նոցա առաքինութեանն՝ տէր Աստուած սխրագործ ա՛յնչափ արար զիւր սքանչելիս և մեզ սաստիկ պատիժս պատուհասից՝ մինչև թագաւորիս մերում լինել խոզ, և ընդ վայրագասուն գազանս արածել։ Ապա ողորմեալ մեզ բարեխօսութեամբ աղօթից վկայելոցս, ի ձեռն այդր վկայեցելոյդ Գրի-

*COPY OF THE EDICT*

797. "From earliest times we were lost, enveloped in the ignorance of sin, wrapped in mist and fog [cf. Ez. 34.12], rendered stupid [cf. Mk. 8.17], unable to see, understand, or discern the sun of righteousness [cf. Mal. 4.2]; therefore we were blinded and immersed in darkness [cf. Is. 59.9]. But when the sweetness and benevolence of God our creator appeared [cf. Tit. 3.4] to admonish and illuminate us his creatures, he shot the rays of his living light [cf. Wis. 7.26] into our hearts and vivified our mortality by sending his holy and beloved martyrs to these regions.

798. "They came here and revealed to our foolishness their fortitude, bravery and virtue. The Lord indeed already knew how great was their fortitude, but in order to teach us foolish ones wisdom —with how great a love they loved their Lord—therefore through their virtuous struggle the Lord God wrought such amazing miracles and inflicted such severe punishments on us, so that our king even became a pig and pastured with the wild beasts. But then he had mercy on us at the intercession of these martyrs' prayers, and through the martyred Gregory

զորի զամենեսեան զմեզ բժշկեաց։

799 «Քանզի և դա առաւել ևս վկայ գտաւ, առաւել քան զառաւել նահատակեալ, վասն այսորիկ յԱստուծոյ մեզ տուեալ առաջնորդ։ Եւ ի ձեռն դորա զնախնական կարգս սովորութեան ունայնութեան, կռապաշտութեան հայրենեացն, խլեաց եբարձ ի միջոյ. և ուսոյց ամենեցուն մեզ զիւր զվկայութիւնսն և զհրամանս, ըստ իւրոց կամացն գնալ. մինչև տալ մեզ հրաման յայտ յանդիման՝ զդոյն ինքն զԳրիգորդ մեզ հովիւ և տեսուչ և վարդապետ ճշմարտապատում կացուցանել։

800 «Վասն այսորիկ և մեր ապաստան եղեալ յօգնականութիւն ընդունելութեան աղօթից ձերոց և սրբութեանդ, Ղեոնդիոս արքեպիսկոպոս Կեսարու և ամենայն ուխտ քահանայութեանդ սրբոյ եկեղեցւոյ, որ այդր էք, մեք յողորմութենէ Տեառն աղօթիւք ձերովք առցուք ողջոյն, Տրդատիոս թագաւոր, ամենայն զօրօք երկրիս Հայոց մեծաց, և Աշխէն տիկին, և օրիորդ մեծ Խոսրովիդուխտ։ Վասն այսորիկ առաքեցաք մեք առ ձեզ արս գլխաւորս՝ իշխանս պատուականս զաշխարհիս մերոյ մեծի, զի պատմեսցեն ձեզ զամենայն սքանչելիս Աստուծոյ, որ աստ յայսմ աշխարհիս գործեցաւ ընդ մեզ։

801 «Եւ տուաք մեք ածել առ ձեզ զսուրբ խոստովանողդ Քրիստոսի զԳրիգորիոս. և զայս

healed us all.

799. "Now because he was even more a martyr and an even greater champion,[1] therefore he has been given us by God as a leader. Through him (God) has destroyed and abolished our former vain habits of worshiping ancestral idols, and he has taught us all his testimonies and commandments for us to follow his will. He has even given us a clear command to appoint this same Gregory as our shepherd and overseer[2] and truthful teacher.

800. "Therefore, trusting in the support of your acceptable and holy prayers, O Leontius[1] Archbishop of Caesarea and all the priestly clergy of your holy church there, by God's mercy and through your prayers we send you greetings—I king Tiridates with all the army of Greater Armenia, and queen Ashkhēn and princess Khosrovidukht. Therefore we have sent to you the principal men, the honorable nobles of our great country, to inform you of all God's miracles which have been done amongst us in this land.

801. "And we have had sent to you the holy confessor of Christ, Gregory. And

հրովարտակ մեր առ ձեզ գրեցաք, զի ըստ տուչութեան աւանդութեան հոգևոր աստուածատուր շնորհին Քրիստոսի՝ մեզ զԳրիգորդ տեսուչ և վարդապետ առաջնորդութեան աստուածագնաց ճանապարհացն, և հովիւ և բժիշկ կացուցիք, որպէս և մեզ յԱստուծոյ հրամայեցաւ։ Եւ աղօթս արասջիք, զի զմեզ արժանիս արասցէ Աստուած իւրոյ ողորմութեանն, առողջութեամբ գնալ ի ճանապարհս նորա, և ձեր սէրն և ողջոյն եկեալ հանգիցէ առ մեզ»։ Եւ պատճէն հրովարտակին զայս օրինակ գրեցաւ։

802 Եւ կազմեցան պատրաստեցան, առին ընդ իւրեանս պատարագս՝ ոսկի և արծաթ, ձիս և ջորիս և հանդերձս գունակ գունակս ի զարդ և ի սպաս պատուական տեղեացն սրբոց տանցն Աստուծոյ՝ ուր առաքեալքն էին. և ամենայն եկեղեցեացն առնէին պատրաստութիւն պատարագաց՝ ընդ որ էին անցանելոց։

803 Եւ հանէին զԳրիգոր յոսկիապատ կառսըն արքունականս՝ սպիտակաձիգ ջորւոցն։ Եւ ամենայն իշխանքն գումարեալք ընդ նմա կառօք և երիվարօք, զօրօք, նշանակօք, իւրաքանչիւր գնդաւ խաղացին գնացին յԱյրարատեան գաւառէն, ի Վաղարշապատ քաղաքէ. և հասեալ ի սահմանս Յունաց՝ բազում պատիւս կազմութեան հիւրամեծարութեան գտանէին ի քաղաքաց քաղաքաց։ Եւ բազում խնդութիւնս և կայ-

we have written this edict[1] to you that you may ordain for us Gregory as overseer and teacher and leader in God's paths and shepherd and doctor, according to the providential tradition of the spiritual and divine grace of Christ, just as has been commanded us by God. And so pray that God may make us worthy of his mercy and that we may walk rightously in his paths, and that your love and greeting may give us peace."[2] In such terms was the copy of the edict written.

802. So they made their preparations and took with them gifts—gold and silver, horses and mules, garments of various colors for the decoration and service of the honorable places of the holy houses of God where they were being sent. And for all the churches by which they would pass they took prepared gifts.

803. They put Gregory in the royal carriage that was decorated in gold and drawn by white mules. All the nobles gathered around him with carriages and horses, with their forces, standards and each one's following. They quickly left the province of Ayrarat and the city of Valarshapat, and arrived in Greek territory. In every city they were received with great honor and elaborate hospitality. They (the Greeks) made much rejoicing

տիւս ցնծութեան, խնճոյս ուրախութեան կացուցանէին, իբրև լսէին զԱստուծոյ արարեալ զսքանչելիսն, և զհասելոց դարձ փրկութեան և զճանապարհս օգտակարս։

804 Այսպէս պատուեալ ըստ ճանապարհացն՝ մինչև գային հասանէին ի քաղաքն Կեսարացւոց. և անդ տեսանէին զսուրբ կաթողիկոսն Ղևոնդիոս, և զամենայն եկեղեցական գունդըս գունդս սրբոցն կղերիկոսացն և զդասս դասս հրեշտակակրօն պաշտօնէիցն։ Տուեալ ողջոյն և պատմեալ նոցա՝ որ ինչ միանգամ եղեալ էր յԱստուծոյ, և մատուցին զթուղթ թագաւորին առաջի սրբոյ քահանայապետին. և նորա մեծաւ խնդութեամբ ընկալեալ և ամենայն քաղաքացեացն մեծաւ ուրախութեամբ։ Եւ ամենեքեան առնէին տօն ցնծութեան, և զսուրբն Գրիգոր պատուեալ ըստ արժանի առաքինութեանցն ճգնութեանցն վկայօրէն մարտին՝ կանթեղօք և սաղմոսիւք և երգովք հոգևորօք փառաւորէին։ «Եւ իշխանաց քաղաքին ցուցեալ բազում մեծարանս հասելոցն և ընկալեալ հոգաբարձութեամբ ըստ Քրիստոսի անուանելոյն կարգի»։ Եւ այսպէս մեծապատիւ յամենեցունց մեծարեալ ըստ արժանաւորութեանն երանութեան վկայական անուան ստացելոյ։

805 Եւ եղեալ ժողով բազմութեան եպիսկոպոսաց ի քաղաքն Կեսարացւոց, զի ձեռնա-

and merriment and feasting [cf. III Macc. 6.22] when they heard of the miracles worked by God, and of their visitors' conversion to salvation and their journey for support.[1]

804. They were honored in this way on their journey until they arrived at the city of Caesarea; there they saw the holy Catholicos[1] Leontius and all the assembled company of the church, the holy clerics and the rows of angelic ministers. Greeting them, they informed them of what had been done by God, and they presented the king's letter to the holy high-priest. He received it with great happiness and all the citizens rejoiced. They all celebrated a joyful festival and honored saint Gregory for his meritorious virtue and endurance in his martyr-like struggle, giving thanks with candles and psalms and spiritual songs [cf. Col. 3:16]. And the nobles of the city showed great honor to the visitors and received them with great solicitude according to the Christian custom.[2] In this way he was greatly honored by everyone according to the merit of the blessed name of martyr that he had gained.

805. And there took place a council[1] of many[2] bishops in the city of Caesarea so that they might ordain

դրեսցեն զսուրբն Գրիգորիոս և աւանդեալ ի նա զպատիւ խոնարհութեան քահանայութեանն Քրիստոսի, և զբարձրութիւն եպիսկոպոսութեան փառաւորութեանն Աստուծոյ, զպատիւն և զփառսն մեծ։ Սրբով Աւետարանաւն եդին ի վերայ նորա ձեռս ժողովք եպիսկոպոսացն, որոց գլխաւորն Ղեոնդիոս, զի առցէ նա իշխանութիւն յերկինս և յերկրի, առնուլ զփականս արքայութեանն երկնից, կապել և լուծանել յերկրի։

806 Մեծաւ պատուով և թղթով և ժողովով զսուրբն Գրիգորիոս անդուստ յուղարկեցին իշխանօքն հանդերձ։ Ետուն ողջոյն, և յուղի անկեալ անտի ի շնորհս տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ գային հասանէին ի քաղաքն Սեբաստացւոց, և անդ յեցան յերեկօթս աւուրս ոչ սակաւս։ Եւ անդ գտանէր բազմութիւն եղբարց, զորս հաւանեցուցանէր ընդ իւր գալ, զի վիճակեցուսցէ զնոսա ի քահանայութիւն յիւրում աշխարհին, և բազում գունդս գունդս յաճախեալ առնոյր ընդ իւր, «և մեծարանօք մեծարեալ յեպիսկոպոսաց աշխարհին և յիշխանաց և ի ժողովրդոց»։

807 Իսկ ընդ որ անցանէին՝ կուտէին ժողովուրդք ի վերայ ժողովրդոց՝ տեսանել զսուրբ եպիսկոպոսն Գրիգորիոս, զի օրհնեսցին ի նմանէ. և ասէին ցմիմեանս. «Եկա՛յք տեսցուք զսուրբ եպիսկոպոսն Գրիգորիոս. զի այս այն

saint Gregory; and they handed on to him the honor of the humility of Christ's priesthood, and the highness of the episcopacy of God's glory—great honor and glory.[3] Holding the holy gospel the assembled bishops, of whom the chief was Leontius, placed their hands on him that he might receive authority in heaven and on earth to receive the keys of the kingdom of heaven, to bind and loose on earth [cf. Matt. 16.19].

806. With great honor and a letter and an escort they sent off saint Gregory with the nobles. They exchanged greetings, and in the grace of our Lord Jesus Christ they went on their way. They arrived in the city of Sebaste, and there they lodged not a few days. He found there a good number of brethren whom he persuaded to accompany him so that he[1] might elevate them to the priesthood in his own country; and a very large number he took with him. And he was greatly honored by the bishops of the land and the nobles and the people.[2]

807. Then wherever they passed, great crowds assembled to see the holy bishop[1] Gregory and to be blessed by him. They said to each other: "Come, let us see the holy bishop Gregory. For he is that

այր է, ասէին, որ վասն Քրիստոսի համբեր չարչարանաց, վկայ հաւատարիմ գտեալ, զխոստովանողական անուն ժառանգեաց»։

808 «Եւ յետ այսորիկ առնոյր ընդ իւր զբազմութիւն հաւանելոցն՝ նախարարակոյտ զօրուն հանդերձ. հրաժարեալ այնուհետև շնորհատուր պարգևօքն և ամենայն իւրայովքն յանձն եղեալ շնորհացն Աստուծոյ՝ ճանապարհորդ լինէր. և այսպէս զբազում օթևանօք անցեալ՝ առողջութեամբ, յաջողութեամբ և հոգելից ուրախութեամբ եկեալ հասանէին ի Հայաստան աշխարհն»։

809 Եւ իբրև եկն եհաս ի սահմանս Հայոց՝ լուաւ Գրիգորիոս, թէ Վահէվանեան մեհեանն մնացեալ է յերկրին Տարօնոյ, մեհեանն մեծագանձ, լի ոսկւով և արծաթով, և բազում նուէրք մեծամեծ թագաւորաց ձօնեալ անդ. ութերորդ պաշտօն հռչակաւոր, անուանեալն Վիշապաքաղն Վահագնի, յաշտից տեղիք թագաւորացն Հայոց Մեծաց, ի սնարս լերինն Քարքեայ, ի վերայ գետոյն Եփրատայ, որ հանդէպ հայի մեծի լերինն Տաւրոսի, որ և անուանեալ ըստ յաճախաշատ պաշտաման տեղեացն՝ Յաշտիշատ։ Զի յայնժամ դեռ ևս չէն կային երեք բագինք ի նմա. առաջին՝ մեհեանն Վահէվանեան, երկրորդն՝ Ոսկեմօր Ոսկեծին դից, և բագինն իսկ յայս անուն անուանեալ Ոսկեհատ Ոս-

man," they said, "who for Christ's sake endured torments; being found a faithful martyr, he has inherited the title of Confessor."[2]

808. Then he took with him the great number of (monks) whom he had persuaded (to accompany him) and the princes and soldiers. Then taking leave with liberal gifts and trusting in the grace of God, with his escort he took to the road. And thus, after passing the many stages in health, success and spiritual joy, they arrived in Armenia.[1]

[Chapter 12. Gregory builds the first churches in Armenia; the king and the people are baptised]

809. When he arrived at the borders of Armenia, Gregory heard that there remained in the land of Tarawn[1] the temple of Vahagn[2]—a very wealthy temple, full of gold and silver [cf. I Macc. 6.1-2], to which many offerings had been presented by the greatest kings. It was the eighth famous shrine[3] and was devoted to the cult of Vahagn, called the *Dragon-handler,*[4] a place of sacrifice for the kings of Greater Armenia, on the summit of the mountain Karkē[5] on the river Euphrates, which looks across to the great Taurus range; it was called Yashtishat[6] from the frequent cultic sacrifices of the site. For at that time there still stood three altars in it; the first was the temple of Vahagn;[7] the second that of the Golden-mother,[8] the Golden-born goddess, and the altar was called after her golden-built

կեմօր դից. և երրորդ՝ մեհեանն անուանեալ Աստղկան դից, Սենեակ Վահագնի կարդացեալ, որ է ըստ յունականին Ափրոդիտէս։ Արդ՝ դիմեաց գալ սուրբն Գրիգորիոս, զի քանդեսցէ և զայն ևս, զի տակաւին իսկ տգէտ մարդիկ խառնակութեան զոհէին յայս բագինս մնացեալս։

810 Եւ իբրև դարձեալ գայր նա ի կողմանցն Յունաց՝ բարձեալ բերէր ընդ իւր նշխարս ինչ յոսկերաց մեծի մարգարէին երանեալ մկրտչին Յովհաննու և զսուրբ վկային Քրիստոսի զԱթանագինէի։ Եւ իբրև եկին հասին յանդիման մեհենացն, մօտ ի գետն Եփրատ՝ կամէր հանել զնոսա ի վեր, ի բարձրաւանդակ տեղի մեհենացն, կործանել զբագինսն, և շինել զվկայարանս նոցա։

811 Իբրև եկին մօտ եղեն ի գետն Եփրատ իբրև ձիոյ արշաւանօք երկուք, և դեռ ընդ փոքր ձորակ մի անցանել կամէին, ընդ ջուր մի սակաւ՝ զտեղի առին սպիտակ ջորիք կառացն, ուր կային զանձքն աստուածային, նշխարք սրբոցն. ոչ կարացին հանել ըստ ձորակն։ Եւ յայտնեալ առ Գրիգոր հրեշտակ Տեառն՝ ասէ. «Հաճեցաւ Տէր զբնակել սրբոցդ Աստուծոյ ի տեղւոջդ»։ Ուր և անդէն բազմութեան զօրացն, մէն սակաւ աստարեալ՝ շինեցին զվկայարանն, և զսուրբսն ի հանգիստ փոխեցին։

812 Եւ մինչ դեռ զշինուած մատ-

of the Golden-mother goddess; the third was the temple named for the goddess Astḷik,[9] called the spouse of Vahagn,[10] who is in Greek Aphrodite. For this site Gregory set out in order to destroy it also, since ignorant men still made profane sacrifices at these surviving altars.

810. When he returned from Greek territory he brought with him some relics from the bones of the great prophet, blessed John the baptist, and of the holy martyr of Christ, Athenogenes.[1] When they arrived opposite these temples, near the river Euphrates, he wished to take them (the relics) up to the highest place of the temples in order to destroy the altars and build chapels for them.

811. When they had approached the Euphrates to about two horse-courses[1] and were still intending to pass a small valley with a little water in it, the white mules of the carriage which carried the divine treasures, the saints' relics, halted; they were unable to drive them beyond the valley. And the angel of the Lord appeared to Gregory, saying: "It has pleased the Lord that these saints of God should dwell in this spot."[2] So there the whole multitude of the army set to work and built the chapel and transferred the saints to rest.

812. While they were constructing the chapel

*րանն կազմէին՝ հրաման ետ Գրիգոր զօրականին և իշխանացն որ ընդ իւրն էին, զի ելցեն և մրճօք տապալեսցեն զշինուածս բագնացն։ Որք ելեալ շատ ջանացան, և ոչ կարացին զդուրս բագնացն գտանել՝ թէ ի ներքս մտցեն, զի ծածկեցին դեքն ի նոցանէն. և ի կողմանէ արտաքուստ ջանացան, և ոչ գծեաց անդ երկաթ գործւոյն. ապա փութացան հասին իշխանքն և պատմեցին նմա զամենայն։*

813 *Իսկ նա առնոյր զնշան տէրունական խաչին, և ելեալ ի ձորակէն եկաց յանդիման բարձրաբերձ տեղեացն շինուածոցն և ասէ. «Հրեշտակ քո, Տէր, հալածեսցէ զնոսա»։ Եւ ընդ բանիցն հողմ ուժգին բղխեաց ի խաչանիշ փայտէն, զոր ունէր ի ձեռին իւրում սուրբ եպիսկոպոսն։ Եւ երթայր հողմն ուռուցեալ լերինն հաւասար, և չոգաւ հարթեաց, տապալեաց, ընկէց զամենայն շինուածսն բագնացն։ Եւ այնչափ կորոյս, զի յետ այնորիկ ոչ ինչ ոք յայնմ տեղւոջ նշմարանս կարէր գտանել, ո՛չ քարի և ոչ փայտի, ո՛չ ոսկւոյ և ոչ արծաթոյ, և ոչ բնաւ երևէր, թէ լեալ ինչ իցէ անդ։ Եւ անթիւք կոտորեցան մարդիկ պաշտամանն քրմութեան որ ի տեղւոջ անդ էին, և անհետ եղեն ոսկերք նոցա. և որք տեսինն՝ անթիւ մարդիկ հաւատացին։ Եւ ասէ սուրբն Գրիգոր. «Արդ տեսէք, թէ ո՛րպէս ջնջեցան գայթակղութիւնքն ձեր, զի և չէին իսկ*

Gregory ordered the soldiers and nobles who were with him to come forth and destroy with their hammers the edifices of the altars. They came forth and made great efforts, yet they were unable to find the gates of the temples in order to enter, because the demons had hidden them from them. They tried from the outside, but their iron tools made no impression. Then the nobles hastened back and told him everything.

813. So he took the sign of the Lord's cross, and leaving the valley came up to the high place of the buildings and said: "Let your angel, Lord, drive them away." At his words a mighty wind blew from the wooden cross which the holy bishop was holding in his hand. The wind, like a hurricane, rose up as high as the mountain and struck, destroyed and overthrew all the constructions of the altars.[1] It destroyed them so thoroughly that afterwards no one was able to find traces in that spot, neither of stone nor wood, neither of gold nor silver; and it did not appear at all that there had ever been anything there. And numberless men who were associated with the cult and pagan priesthood in that place were slaughtered and no trace left of their bones. And the countless men who saw this believed. And saint Gregory said: "See now how your stumbling blocks have been erased, for they were

ինչ. այլ ծառայեցէք յայսմհետէ տեառն Աստուծոյ որ արար զերկինս և զերկիր»։

814 Եւ յետ այսորիկ ելանէր նա ի տեղիս մեհենացն, և ժողովեալ դարձուցանէր զմարդիկ աշխարհին յաստուածպաշտութիւն։ Եւ եդ անդ զհիմունս եկեղեցւոյն, և ուղղեաց սեղան փառացն Քրիստոսի. զի նախ անդ արար սկիզբն շինելոյ եկեղեցեաց։ Եւ ուղղեալ սեղան յանուն սուրբ Երրորդութեանն, և կազմեալ աւազան մկրտութեան, նախ զայնոսիկ լուսաւորեաց մկըրտութեամբըն՝ որ ընդ իւրն էին մեծամեծ նախարարքն, որ ընդ նմայն երթեալ էին ի քաղաքն Կեսարացւոց, և ապա զգաւառականսն, զընակիչս երկրին։ Աւուրս քսան երեկօթս առնէր, և մկրտէր անդ աւելի քան զհնն և տասն բիւր մարդկան, և կանգնէր սեղան ի վկայարանի սրբոցն հանգստի զոր շինեացն, և մատուցանէր զպատարագն փրկութեան, և բաշխէր անդ զմարմին և զարիւն կենարարին Քրիստոսի։

815 Եւ հրամայեաց կատարել անդ ամ յամէ, ի նմին տեղւոջ ժողովեալ ամենեցուն, զյիշատակ սրբոցն, որ օր եօթն էր ամսոյն սահմի, զի խնդութեամբ ժողովեալ՝ զօր տօնին խմբեսցեն. զի նախ անտի սկիզբն արար շինելոյ զեկեղեցիս։ Եւ կացուցանէր քահանայս ի տեղիս տեղիս. և ելից զվայրսն եկեղեցւովք շինելովք և քահանայիւք։

nothing.[2] But serve henceforth the Lord God who made heaven and earth."

814. After this he went forth to the place of the temples, and gathering the inhabitants of the land he converted them to true piety. He set there foundations for the church and erected an altar for the glory of Christ: for it was there that he first made a beginning of building churches.[1] He erected an altar to the name of the holy Trinity and arranged a baptismal font. First he illuminated with baptism[2] those great princes who were with him and had traveled with him to the city of Caesarea, and then the people of the province, the inhabitants of the land.[3] He lodged (there) for twenty days and baptized more than one hundred and ninety thousand persons.[4] He erected an altar in the chapel of repose of the saints which he had built, and he offered the saving liturgy, and distributed there the life-giving body and blood of Christ.

815. And he ordered that year by year everyone should come together at that same spot and celebrate the commemoration of the martyrs, which was the seventh day of the month Sahmi,[1] that gathering joyfully they should assemble on that feast day. For there he first began building churches. And he established priests in every place and filled the land with church buildings and priests.[2]

816 *Եւ ինքն չու արարեալ անտի՝ մեծապանծ պարծանօք զօրութեան խաչին Քրիստոսի և բարձ նշխարս անտի կէս մի ի սրբոցն, զի և յայլ տեղիս հաստատեսցէ զյիշատակս նոցա։ Եւ ընդ ամենայն տեղիս և ընդ ամենայն գաւառս շրջէր. յաւանս և յագարակս շինէր եկեղեցիս, և առնէր մկրտութիւն և կացուցանէր քահանայս։*

817 *Լուաւ ապա և մեծ թագաւորն Տրդատ, եթէ Գրիգոր եկեալ հասեալ է յերկիրս Հայոց։ Առ զզօրս իւր և զԱշխէն տիկին և զքոյրն իւր զԽոսրովիդուխտ, և չու արարեալ յԱյրարատեան գաւառէն, ի Վաղարշապատ քաղաքէ, ընդ առաջ Գրիգորի, գայր հասանէր ի քաղաքագեօղն Բագաւան, որ անուանեալ կոչի ի պարթևարէն լեզուէն՝ Դիցաւան. և անդ սպասեալ մնայր նմա ամսօրեայ ժամանակս։ Իսկ նա շրջէր, զի լցցէ զկողմանս կողմանս եկեղեցեօք և քահանայիւք և պաշտօնէիւք և ամենայն աստուածագործ սպասաւորութեամբն կարգօք, և լուսաւորեսցէ զբազումս մկրտութեամբ։*

818 *Ապա գայր հասանէր յանուանեալ Դիցաւանն ամենայն մեծամեծօքն և զօրօքն և աշխարհակոյտ ամբոխիւն, որք էին ժողովեալ ի կողմանց կողմանց, և գնային շրջէին զհետ նորա և գտանէին բժշկութիւն և լնուին զպէտս իւրաքանչիւր ի նմանէ։ Եւ նա ամենասփիւռ*

816. He himself set out from there with the sublime splendor of the power of the cross of Christ, and he took a part of the saints' relics in order to establish their commemorations in other places. He journeyed through every place and every province. In the towns and estates he built churches, conducted baptism and established priests.[1]

817. Then the great king Trdat heard that Gregory had arrived in Armenia. He took his army and his wife Ashkhēn and sister Khosroviduklit and set out from the province of Ayrarat, from the city of Vaḷarshapat, to meet Gregory. He arrived in the town of Bagavan, called in the Parthian language Ditsavan,[1] and there he remained for a month waiting for him. But he (Gregory) moved around in order to fill every region with churches, priests, ministers, and all the ranks of divine service, and to illuminate many by baptism.

818. Then he arrived in the (town) called Ditsavan with all the magnates and the army and the mass of the common people, who had gathered from every region and were following him around and obtaining from him healing and the fulfilment of each one's needs. And he, through his teaching that spread to all,

վարդապետութեամբն ամենեցուն սերմանէր զբանն կենաց, և «հանդերձ ամենայն սպասաւորօք Աւետարանին որ ընդ իւրն էին, զոր չէ ոք բաւական ըստ իւրաքանչիւր անուանցն նշանակել, քարոզէր զԱւետարանն։ Որովք յանձն եղեալ երանելի եպիսկոպոսն շնորհացն Աստուծոյ՝ գայր հասանէր առ ստորոտով Նպատական լերինն»։

819 «Ընդ առաջ ելանէր նմա թագաւորն ամենայն զօրօքն հանդերձ, առ ափն Եփրատ գետոյն, որ և ընդ պատահելն իսկ լի առնէր զամենեսեան ողջունիւ Աւետարանին Քրիստոսի, և քազում ցնծութեամբ և ուրախութեամբ յաւանն դառնային»։ Եւ անդ մատուցեալ թագաւորին իշխանքն եկեալք զբերեալ պատասխանին ողջունաբեր թղթոյն, զի գրեալ էր զպատճէնն օրինակ զայս.—

### ՊԱՏՃԷՆ ԹՂԹՈՑՆ ՊԱՏԱՍԽԱՆԻ

820 «Գանեալքդ՝ և խրատեալքդ, հարուածեալքդ՝ և ողոքեալքդ, տանջեալքդ՝ և նուաճեալքդ, կորուսեալքդ՝ և գտեալքդ, մոլորեալքդ՝ և դարձուցեալքդ, յակն առեալքդ՝ և սիրեցեալքդ Տեառն, Տրդատէս թագաւոր Հայոց մեծաց և Աշխէն տիկին և օրիորդ մեծ Խոսրովիդուխտ, և ամենայն հրապարակք բազմամբոխ ժողովրդոց

sowed in everyone the word of life; and with all the servants of the gospel who were with him, whom no one could name individually, he preached the gospel. With these the blessed bishop, trusting in God's grace, came to the base of the mountain[1] Npat.[2]

819. The king with all his army went out to greet him on the bank of the river Euphrates, and at their meeting he filled them all with the salutation of Christ's gospel; with great rejoicing and joy they returned to the town.[1] And there the nobles presented to the king the reply they had brought to his letter of greeting, which was written in the following terms.

*COPY OF THE REPLY TO THE LETTER*

820. "To you who have been beaten and admonished, tormented and calmed, tortured and subdued, lost and found [cf. Lk. 15.4], gone astray and converted, noticed and beloved by the Lord,[1] to Tiridates king of Greater Armenia and queen Ashkhēn and princess Khosrovidukht and all the populace

որ իցեն Հայոց Մեծաց․ Ղեւոնդէս արքեպիսկոպոս մետրոպոլիտ մեզաղէ Կեսարու և ամենայն ուխտ սրբոյ եկեղեցւոյ քահանայութեան, եպիսկոպոսաց, երիցանց, սարկաւագաց և ժողովրդոց․ ի Տէր խնդալ։

821 «Վասն կենսատու փրկութեանդ հասելոյ ձեզ յԱստուծոյ, որպէս մեզ պատմեցաւ, անպայման ուրախութեամբ գոհացաք զանզեղջական փառացն Քրիստոսի, և վասն սրբոց վկայիցդ Աստուծոյ որ ի ձերում միջի, յաշխարհիդ ձերում փառաւորեցան։ Զի և դուք նայեցեալք յելս գնացից նոցա և նմանողք լեալ հաւատոց նոցա՝ փառաւորեսջիք, նոցա պսակօքն պսակելով պսակեսջիք։

822 «Զի արարիչն ամենեցուն և ամենայն աշխարհաց, որ ընդ ամենեցուն հաճեալ զի առցեն զորդեգրութիւն, իւրով հաճոյական կամօքն խրատէ զամենեսին, որով մխիթարեսցէ ի սնավաստակ աշխատութենէն, յիւրումն արքայութեանն հանգուսցէ զբեռնաւորսն զաշխատեալսն, «զի լուծ նորա քաղցր է և բեռն իւր փոքրոգի»․ առ իւր թևարկէ, վարդապետէ, զի իւրում հանգըստեանն արժանիս արասցէ զամենեսին։

823 «Եւ վասն զի ոչ կանխեալ գիտացեալ ձեր զարժանն՝ վասն այսորիկ ած զանարժան զաւազանն ի վերայ ձեր, և իբրև ի քնոյ ընդոստուցեալ, զի գիտասջիք զզգաստութիւնն,

of Greater Armenia—Leontius Archbishop and Metropolitan[2] of great Caesarea and all the priestly clergy of the holy church, bishops, priests, deacons and people, greetings in the Lord.

821. "For the life-giving salvation bestowed on you by God, as has been narrated to us, with unbounded joy we have thanked the immutable glory of Christ, as also for the holy martyrs of God who were glorified among you, in your country. And may you, reflecting on the outcome of their labor and imitating their faith [cf. Heb. 13.7], also be glorified and crowned with their crowns.

822. "For the creator of everything and of all worlds, who wishes that all may receive adoption [cf. Eph. 1.5], by the pleasure of his own will advises everyone that he will give consolation from the toil of vain works, and in his kingdom give rest to those with burdens and those who have labored. 'For his yoke is sweet and his load is light.' [Matt. 11.28-30]. (These) he takes under his protection and instructs, in order that he may make everyone worthy of his rest.

823. "And because you did not previously realize what was worthy, therefore he brought this unworthy scourge upon you and awoke you as if from sleep that you might know the sobriety

*որ արժանն է։ Եւ զի ոչ իմացայք դուք զմարդկանն ի մարդկապէսն՝ գիտուն արար զձեզ ի չմարդկապէսն։ Եւ զոր յանգիտութեանն արհամարհեցէք՝ հաստատեաց զձեզ յանշարժ գիտութիւնն. զի վէմն իսկ որ ի շինողացդ անարգեալ՝ եղև նա ձեզ գլուխ անկեան։*

824 *Զի զոր ուրացութեամբն բարկացուցէք արտասուօք հաշտեցուսջիք։ Զի զոր կափուցեալ զաչս ձեր, համարէիք խաւար՝ ծագեաց եբաց և լուսաւորեաց զտեսանելիս ձեր, մերկեաց ի ձէնջ զզգեցեալ զխաւարն հեթանոսութեան, և զճառագայթարձակ զգեցոյց զպատմուճանն։ Իսկ զոր համարեալ անմտութիւն, կորուսանել պանձայիք՝ նոյն ինքն ձեզ իմաստնացուցիչ տուաւ, և նոյն ինքն ձեզ զտիչ պարգևեցաւ։*

825 *«Արդ՝ մեք իբրև տեսաք զայսպիսի այր հրաշալի և լուաք զմեծամեծ սքանչելիսն որ ի ձեռն սորա առ ձեզ կատարեցան՝ ընկղմեցաք ի խորութիւն սիրոյ Աստուծոյ իբրև ի ջուրս սաստիկս ալեաց բազմութեան, անհատական զովութեամբ, և ի վերայ այսորիկ՝ անզադար բերանով և անհանգիստ բարբառով զտէր մեր զՅիսուս Քրիստոս, զբարերարն զսքանչելագործն զպարգևաբաշխն օրհնեցաք, և առ Աստուած հայրն ամենայնի գոհութիւնս մատուցաք, շնորհելով Գրիգորի զանապական պարգևս սուրբ Հոգւոյն,*

which was fitting. And because you did not understand what was human by human means, he made you aware by non-human means. And the man whom in your ignorance you despised has confirmed you in immovable knowledge. For the rock which was dishonored by the builders became for you the chief cornerstone [cf. Matt. 21.42; Acts 4.11; I Pet. 2.7].

824. "For him whom you angered by your denial, with tears you will placate. He to whom you closed your eyes and considered as darkness [cf. Matt. 13.15] has shone forth and opened and illuminated your vision; he has stripped off from you the pagan darkness that enveloped you and put on you raiments of shining light. He whom you presumed in your boastful [cf. Lk. 18.9] ignorance to destroy, the same has been given you as teacher of wisdom and has been bestowed upon you as mentor.[1]

825. "Now when we saw this man who is so marvelous, and when we heard of the mighty wonders which were accomplished through him among you, we were submerged in the depths of God's love as in the vast waters of the numberless waves; and with constant joy for this reason, and with unceasing mouth and unresting voice we blessed our Lord Jesus Christ, the benevolent, the worker of miracles and dispenser of gifts. And we offered thanksgiving to God the Father of all, by giving Gregory the incorruptible gifts of the holy Spirit,

որով և դուք արժանի լինիջ շնորհին ողջունի արքայութեանն երկնից։ Եւ զմեզ, հեռի մարմնով, մերձ համարեալ հոգւով՝ յիշեցէք ի ձեր ի նորաթեք յաղօթսդ, ի ձեռում պարգևեալ փրրկութեանդ, մանաւանդ յորժամ զյիշատակ սրբոցդ խմբիցէք ձերով ուրախութեամբդ։

826 «Եւ հաստատեալ կացցէ վկայութիւն ի մէջ երկոցունց կողմանցս, զի պարգևաբաշխութիւն նորոգ քահանայապետութեանդ ձերոյդ նահանգիդ առ ի մէնջ՝ կացցէ անշարժ յեկեղեցւոջս Կեսարու, ուստի և հանդերձեցաւ ձեզ պատրաստեալ՝ փրկութեան ձեռնադրութիւն։ Որով անապական պարգևք խորհրդոյն ձեզ բաշխիցին վկայացեալ աջովդ, շնորհօք նորոգութեանդ մկրտութեան և փրկական խաչին, և կենդանարար մարմնոյն և քաւիչ արեանն Քրիստոսի, և երանութեամբ բազմացելոց քահանայութեանց. որով և դուք լինիջ վերացեալք խառնեալք, աղօթաբուղխք մշտնջենաւորք, ի զօրս քրիստոսակեցոյց գնդին։ Ողջ լերովք ի Քրիստոս, և հանապազ վայելեսջիք ի փրկութեանն Տեառն»։

827 Եւ ուրախ եղեն ընդ մխիթարութիւն թղթոյն. և զի եկեալ հասեալ էին ուղեգնացքն լուսաւորութեամբ, և երևեալ աստուածաշնորհ պարգևօք, առաւել զհոգևոր սիրոյն զանձուկսն սփռէին՝ և ևս քան զևս ի հաւատսն

whereby you too might become worthy of the felicitous grace of the kingdom of heaven. Now do you remember us, far off in the body but near in the spirit, in your neophyte prayers, in the salvation granted you, and especially when you gather in your joy to commemorate your saints.[1]

826. "And may the testimony between our two regions remain firm, that the gift of your new high priestly rank from us may remain immovably in our church of Caesarea, whence has been prepared for you the ordination of salvation.[1] Thus the incorruptible gifts of the sacrament will be distributed to you by the right hand of the martyred one,[2] through the grace of the renewal of baptism and of the saving cross and of the life-giving body and expiatory blood of Christ, and through the blessing of the increasing priesthood. Thus you will be raised and, making constant prayer, will be joined to the hosts of Christ's company. Be well in Christ, and may you continually enjoy the salvation of the Lord."

827. They were happy at the consolation of the letter; and because the travelers had returned illuminated and with visible gifts of divine grace, they spread all the more their fervor of divine love[1] and were established ever more firmly in the faith

հաստատեցան մեծաւ և ցնծալից բերկրութեամբ։

828 Իսկ նա անդէն «և անդ ընդելական սովորութեամբն ի գործ արկեալ զանդադար վարդապետութիւնն հաւատարութեամբ բարեպաշտ» արքային Տրդատայ՝ «զիւր արուեստն առաջի դնէր. խրատէր յորդորելով. որով առաւելագոյն հնազանդէին նմա ըստ հրամանացն Աստուծոյ, թագաւորն և զօրքն ամենայն հանդերձ աշխարհախումբ բազմութեամբն, որոց յանձն առեալ ամենեցուն զխնդրելին կատարել», և զհրամայեալսն ի գործ արկանել։

829 Եւ նորա տուեալ հրաման արքայագունդ բանակացն՝ ամսօրեայ ժամանակաւ ի պահս և յաղօթս յամենայն։ «Եւ իւրում անձինն՝ զսովորականն առաջի դնէր, իւրայովքն անդուստ ածելովքն հաւատարօքն, զպահս և զաղօթս, զքնութիւնս, զպաղատանս արտօսրաբերս, զխստամբերութիւնս, զհոգս աշխարհահեծս, յուշ առնելով զասացեալսն հոգեպատում մարգարէին, թէ «Յորժամ հեծեծեսցես՝ յայնժամ կեցցես»։

830 «Այսպէս բազում աշխատութեամբ տարեալ՝ վասն համաշխարհին բարեաց ինչ օճան զտանելոյ. որում և պարգևէր իսկ վիճակ յամենաշնորհն Աստուծոյ, հայրական չափուն ծնանել ծնունդ նորոգ և սքանչելի, պարգևաբաշխ սուրբ աջոյն իւրով». զամենայն ի Ջրոյ և ի Հոգւոյ յարգանդէ՝ մկրտութեամբ միւսանգամ վերստին

with great and joyous happiness.

828. Then he according to his usual habit set himself to unceasing instruction, and with the assistance of the pious[1] king Trdat set forth his skill and continuously gave admonition. Thus ever more people came to obey him according to God's commands, the king and all the army with the mass of the common people, all undertaking to fulfill his request[2] and execute his orders.

829. And he commanded the royal camp to spend a month in fasting and prayer. With his companions that he had brought thence he imposed on himself his customary fasting and prayer, vigils, tearful supplications, austerities, world-lamenting[1] cares, having regard for the words of the inspired prophet: "When you will lament, then you will live" [Is. 30.15].

830. In this way he exerted much effort to find blessing and grace for the whole land. To him the gift was granted by all-gracious God to produce a new and wonderful birth in fatherly fashion,[1] by his holy and liberal right hand;[2] to give birth once again to everyone by baptism from water and the womb of the Spirit [cf. Jn. 3.5],

*ծնանել, առնել կատարել, սրբել, դրոշմել մի ժողովուրդ Տեառն։*

831 *Եւ եդ անդ հիմունս, և շինեաց եկեղեցի. և զնշխարսն զոր ունէր յոսկերաց սրբոցն՝ ի տէրունական տանն բնակեցուցանէր։ Սոյնպէս և ընդ ամենայն կողմանս գաւառացն դնէր հիմունս եկեղեցեաց, և ուղղէր սեղանս, և կացուցանէր քահանայս։ Եւ ամենայն երկիրն դարձեալ սրտիւք իւրեանց կանխէին ի պահս և ի պաշտօն և յերկիւղն Աստուծոյ։*

832 *Իսկ ի լնուլ կիտին եդելոյ պահոցն կատարելոյ, առեալ երանելւոյն Գրիգորի զաշխարհաբանակ զօրացն, և զինքնին զթագաւորն, և զկին նորա Աշխէն, և զմեծ օրիորդն Խոսրովիդուխտ, և զմեծամեծսն ամենայն, և ամենայն մարդկաւ բանակին հանդերձ՝ ընդ այգն ի լուսանալ առաւօտուն յափն Եփրատ գետոյն մատուցանէր, և անդէն մկրտէր առ հասարակ զամենեսեան յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։*

833 *Եւ իբրև իջանէին մարդիկն ամենայն և թագաւորն ի մկրտութիւն անդր, ի ջուրսն Եփրատ գետոյն՝ նշան սքանչելի երևեալ յԱստուծոյ. զի գետոյ առեալ ջուրք գետոյն՝ անդրէն դարձան ընդ կրունկն։ Եւ լոյս սաստիկ երևեալ ի նմանութիւն սեան լուսաւորի՝ և եկաց ի վերայ ջուրց գետոյն, և ի վերայ նորա նմանու-*

to perfect, purify and seal one people of the Lord.

831. There he set foundations and built a church; and the relics which he had of the saints' bones he deposited in the Lord's house. In this way throughout all parts of the provinces he set foundations for churches and erected altars and established priests. The whole land was converted, and with all their hearts they were assiduous in fasting and in the service and fear of God.

832. Then at the final completion of the fast, blessed Gregory took the mass of the army and the king himself and his wife Ashkhēn and the princess Khosrovidukht and all the magnates with all the people of the camp, and in the morning at dawn he brought them to the banks of the river Euphrates, and there he baptized them all together in the name of the Father and of the Son and of the Holy Spirit [cf. Matt. 28.19].

833. And when all the people and the king went down to baptism in the water of the river Euphrates, a wonderful sign was revealed by God: the waters of the river stopped and then turned back again.[1] And a bright light appeared[2] in the likeness of a shining pillar, and it stood over the waters of the river; and above it was the likeness

թիւն տէրունական խաչին. և այնչափ ծագեաց լոյսն, մինչև արգելոյր զճառագայթս արեգականն և նուաղեցուցանէր։ Եւ իւղն օծութեան, զոր արկանէր Գրիգորիոս ի վերայ մարդկանն՝ շրջան առեալ ի մէջ գետոյն շուրջ զմարդկաւն խաղայր։ Եւ ամենեքեան զարմացեալք բարձրացուցանէին զօրհնութիւն ի փառս Աստուծոյ։ Եւ ընդ երեկս աւուրն նշանն աներևոյթ լինէր, և նոքա ի վեր յաւանն դառնային։ Եւ որք մկըրտեցանն յաւուր յայնմիկ՝ աւելի քան զհնգետասան բիւր մարդկան յարքունական զօրացն։

834 Եւ անտի ելեալ մեծաւ ցնծութեամբ և սպիտակազգեստ հանդերձիւք, սաղմոսիւք և օրհնութեամբք, կանթեղօք վառելովք, և մոմեղինօք լուցելովք, և ջահիւք բորբոքելովք, մեծաւ լրջմտութեամբ և բազում զուարթութեամբ լուսաւորեալք և հրեշտակացեալք. և առեալ զանուն որդեգրութեանն Աստուծոյ, և մտեալ ի ժառանգութիւն սրբոյ Աւետարանին, և ի վիճակ սրբոցն խառնեալք, ծաղկեալք ի հոտ անոյշ ի Քրիստոս, և ելեալք ի վեր ի տէրունական տունն դառնային։ Եւ անդ մատուցանէր զօրհնութեան պատարագն, հաղորդէր զամենեսեան ի խորհուրդն գոհութեան. բաշխէր ամենեցուն զսուրբ մարմինն և զպատուական արիւնն ամենափրկչին Քրիստոսի, զկենդանարարն և զկեցուցիչն ամենայն մարդկան, և զարարիչն և

of the Lord's cross. And the light shone out so brightly that it obscured and weakened the rays of the sun. And the oil of annointing[3] which Gregory poured over the people, floated around them in the river. Everyone was amazed and raised blessings to God's glory. In the evening the sign disappeared, and they returned to the town. And those who were baptized on that day were more than one hundred and fifty thousand persons from the royal army.[4]

834. They went forth in great joy, in white garments, with psalms and blessings [cf. Eph. 5.19] and lighted lamps and burning candles and blazing torches,[1] with great rejoicing and happiness, illuminated and become like the angels. They had received the title of God's adoption [cf. Rom. 8.15, etc.], had entered the heritage of the holy gospel [cf. Eph. 1.18], and being joined to the rank of the saints [cf. Acts 26.18] were flowering with sweet odor in Christ [cf. Eph. 5.2; Phil. 4.18]. So they went forth and returned to the Lord's house. There he offered the blessed sacrifice and communicated them all with the blessed sacrament, distributing to all the holy body and precious blood of Christ the Savior of all, who vivifies and gives life to all men, the creator and

*զաշխարհագործն ամենայն արարածոց, զաստուածատուր շնորհսն առ ամենեսեան առատապէս մատակարարէր։*

835 *Եւ դադարեաց անդ յետ այսորիկ աւուրս եօթն վասն հոգևոր մխիթարութեան։ Եւ յայնմ աւուրս եօթանս որ մկրտեցան յարքունական բանակէ անտի՝ ընդ այր և ընդ կին և ընդ մանուկ աւելի քան զչորեքարիւր բիւր։*

836 *Եւ զյիշատակս վկայիցն բերելոց ժամադրեաց ի տօն մեծ հռչակել, մնոտեացն պաշտաման ի ժամանակի՝ դիցն Ամանորոյ ամենաբեր նոր պտղոց տօնին, Հիւրընկալ դիցն Վանատրի, զոր յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջ պաշտէին յուրախութեան Նաւասարդ աւուր։ Զի ժողովեալ ի յիշատակ մեծի երանելւոյն Յովհաննու և սրբոյ վկային Աստուծոյ Աթանագինէի՝ աւուր խմբեալ ի նմին յաւանին տօնեսցեն։*

837 *«Յորում և երանելւոյն Գրիգորի զվարդապետութիւնն իւր ի գործ արկեալ, և ժողովելոցն առ ընդունել քաղցրացուցեալ», «և ծովացուցեալ զվարդապետութեանն զխորութիւն, և լցեալ զեղեալ ամենայն հոգևոր բարութեամբք»։ «Յետ այսորիկ հասեալ նմա բովանդակ ի վերայ ամենայն երկրին սահմանացն Հայոց Մեծաց աշխարհին», շինելով եկեղեցիս յամենայն աշ-*

fashioner of all creatures;[2] and he liberally administered to all the divinely-given grace.

835. After this he remained there seven days for spiritual consolation. And in those seven days from the royal camp there were baptized—men, women and children—more than four million.

836. And he fixed the date for celebrating the commemoration of the martyrs that he had brought as a major festival, at the time of the worship of the former vain (gods): the god Amanor the bringer of the new fruits (and) the god *Hiwrĕnkal* Vanatur,[1] which they previously used to celebrate in that same place on the festival of the New Year's Day.[2] (He commanded) that gathering for the commemoration of the great and blessed John and the holy martyr of God, Athenogenes, they should celebrate their festival on that day in the same town.[3]

[Chapter 13. Gregory's missionary activities; his sons are brought to Armenia]

837. Then blessed Gregory undertook to give his instruction, and he softened the crowds to accept it;[1] and pursuing ever more profound teaching he filled everyone with spiritual blessings.[2] After that he journeyed over all districts of Greater Armenia,[3] building churches in all

խարհս, ի գաւառս, ի կողմանս, ի քաղաքս, յաւանս, ի շէնս, ի գեօղս և յագարակս։ Սոյնպէս և Թագաւորն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ՝ գրեաց չորս չորս հողս երդոյ յամենայն ագարակ տեղիս, իսկ յաւանսն եօթն եօթն հողս երդոյ՝ ի ծառայութիւն սպասաւորութեան քահանայութեանն, նուէր պտղոյ Տեառըն մատուցանէր։

838 Եւ կացուցանէր քահանայս յամենայն տեղիս, և հրաման տուեալ, զի պաշտեսցեն զտէր Աստուած միայն, զարարիչն երկնի և երկրի. և բազմացուցանէր զպաշտօնեայս սեղանոյն Տեառն ընդ ամենայն տեղիս, և կացուցանէր քահանայս առ սեղան սեղան յամենայն եկեղեցիսն։ Սոյնպէս և զեպիսկոպոսն վիճակեցուցանէր ի գլխաւորութիւն ժողովրդոցն Տեառն, և հրաման տայր նոցա՝ հաւատարիմ առաջնորդութեամբ վերակացու լինել լուսաւորապէս հօտին Քրիստոսի։

839 Նոյնպէս հաւանեցուցանէր զԹագաւորն. «զի ի գաւառաց գաւառաց և կողմանց կողմանց ի տեղիս տեղիս ժողովեսցեն բազմութիւն մանկտւոյ, առ ի նիւթ վարդապետութեան, զգազանամիտ զվայրենագոյն զճիւաղաբարոյ զաշխարհաբնակսն. զորս առեալ արկանէր ի բովս վարդապետութեան, և հոգևոր սիրոյն եռանդմամբ զաղտն և զժանգն զշարաւահոտ դիւացն և զնոտիագործ պաշտամանցն ի բաց

lands, provinces, quarters, cities, towns, inhabited regions, villages and estates. Similarly the king throughout his whole realm decreed that four fields in every estate and seven fields[4] in each town should be dedicated to the use of the servants of the priesthood for them to offer the fruits thereof to the Lord.

838. And he established priests in every place and commanded that they worship the Lord God only, the creator of heaven and earth. And he increased the ministers of the Lord's altar in every place, and established priests for each altar in every church.[1] Similarly he elevated bishops to primacy over the peoples of the Lord, and commanded them to be faithful in their leadership and to illuminate and oversee the flock of Christ [cf. Tit. 1.9].

839. Similarly he persuaded the king that from every province and region they should bring to various places numbers of children in order to instruct them. So these barbarous, savage and wild natives he took and cast into the furnace of instruction,[1] and by the heat of his spiritual love burnt away the impurity and rust of the putrid demons and vain cults.

քերէր։ Եւ այնչափ անջատէր ի հայրենեացն բնակացն իւրեանց՝ մինչև ասել նոցա, թէ «Մոռացայ զժողովուրդ և զտուն հօր իմոյ»։

840 «Եւ ի տեղեաց տեղեաց սահմանացն Հայոց՝ տայր հրաման թագաւորն Տրդատ՝ իւրոյ իշխանութեանն յաշխարհաց և ի գաւառաց բազմութիւն մատաղ մանկտւոյ ածել յարուեստ դպրութեան, և կարգել ի վերայ հաւատարիմ վարդապետս. առաւել զազգս պղծագործ քրմացն և զմանկունս նոցա ի նոյն ժողովել, զումարել յարժանաւոր տեղիս դասս դասս, և դարման ռոճկաց կարգել»։ Եւ զնոսա յերկուս բաժանեալ, զոմանս յԱսորի դպրութիւն կարգեալ, և զոմանս ի Հելլէն»։ «Որով անդէն յական թօթափել վայրենամիտքն և դատարկասունքն և անասնաբարոյ աշխարհաբնակքն վաղվաղակի մարգարէագէտք և առաքելածանօթք և աւետարանաժառանգք լինէին, և ամենայն աւանդելոցն Աստուծոյ ոչ իւիք անտեղեակք»։

841 «Հասանէր և յառաջի դաստակերտին իւր, յոստանատակն Այրարատեան գաւառին ի Վաղարշապատ քաղաք», ուստի նախ զառաջինն ստուածասաստ հրամանացն լինէր սկիզբն. ուր նախ նշմարեացն և նշանակեալ կանգնեաց զնշան խաչին սրբոյ, ուր և սուրբ վկայքն Աստուծոյ զետեղեցան. և ի նոցա վկայարանսն կանգնեաց սեղանս Աստուծոյ ի հանգիստս սրբոցն. և զնկա-

And he so detached them from their ancestral customs that they could say: "I have forgotten your people and the house of my father" [Ps. 44.11].[2]

840. And from every place within the borders of Armenia and from the lands and provinces of his realm king Trdat commanded many young children to be introduced to the art of writing[1] and faithful teachers to be put in charge. Especially the families of the impure pagan priests and their children[2] were to be brought together in groups in suitable places, and an adequate stipend paid them.[3] These he divided into two groups, some being set to Syriac and others to Greek.[4] Thus in the twinkling of an eye these savage and idle and oafish peasants suddenly became acquainted with the prophets and familiar with the apostles and heirs to the gospel and fully informed about all the traditions of God.[5]

841. He[1] (Gregory) then arrived in his former dwelling,[2] the capital[3] of the province of Ayrarat, in the city of Vaḷarshapat where a beginning of the divine commands had first been made; where he had first observed (the vision) and set up the indicated sign of the holy cross; where the holy martyrs of God were buried and he had set up in their chapels altars to God, in these saints' resting-places;

տեալ տեղին տանն Աստուծոյ շինեաց, զցուցեալն նմա ի տեսլեանն, զյառաջագոյն դրոշմեալն իւր, և կանգնեաց անդ զեկեղեցին Քրիստոսի։ Սոյնպէս և ի տեղիս մեհենացն զոր կործանեաց յառաջագոյն. սոյնպէս և յԱրտաշատ քաղաքի և յամենայն տեղիս՝ յաշխարհս և ի գաւառս առ հասարակ, սոյն օրինակ գործեաց և բազմացոյց զեկեղեցիս, և կացոյց քահանայս. և քրիստոնեան դրոշմաւն զամենեսին առ հասարակ ընծայեցուցանէր՝ լինել ամենեցուն Հոգւոյն սրբով։

842 Եւ այսպէս ընդ ամենայն երկիրն Հայոց, ի ծագաց մինչև ի ծագս, ձգտէր տարածանէր զմշակութիւն քարոզութեանն և աւետարանութեանն. ի Սատաղացւոց քաղաքէն մինչև առ աշխարհաւն Խաղտեաց, մինչև առ Կաղարջօք, մինչ ի սպառ ի սահմանս Մասքթաց, մինչև ի դրունս Ալանաց, մինչ ի սահմանս Կասպից, ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց. և յԱմդացւոց քաղաքէն մինչև առ Մըծբին քաղաքաւ, քերէր առ սահմանօքն Ասորւոց առ Նոր Շիրական երկրաւն, և առ Կորդուօք մինչև յամուր աշխարհն Մարաց՝ մինչև առ տամբն Մահքըր—Տան իշխանին, մինչև յԱտրպատական ձգտէր տարածանէր զաւետարանութիւնն իւր։

843 «Զամենայն ժամանակս կենաց իւրոց, զամառն և զձմեռն, զտիւ և զգիշեր, անվեհեր առանց յապաղելոյ իւրով իսկ աւետարանական

and he had built the indicated place for the house of God, which had been shown him in the vision and had been earlier prefigured to him, and where he had erected the church of Christ. And just as in the places of the temples which he had earlier destroyed, so in the city of Artashat and everywhere, in all lands and provinces, in such fashion he acted, multiplying churches, establishing priests, imposing on everyone the sign of Christ,[4] so that all became (filled) with the holy Spirit.

842. Thus throughout the whole land of Armenia, from end to end, he extended the labor of preaching the gospel. From the city of Satala to the land of Khaḷtik',[1] to Kaḷarjik',[2] to the very borders[3] of the Massagetae, to the gate of the Alans,[4] to the borders of the Kaspk',[5] to P'aytakaran,[6] the city of the Armenian kingdom; from the city of Amida to the city of Nisibis he passed along the borders of Syria, the land of Nor-Shirakan[7] and Korduk',[8] to the secure[9] land of the Medes, to the house of the prince of Mahk'r-tun,[10] to Azerbaijan[11]—he spread his gospel-preaching.[12]

843. All the time of his life, summer and winter, day and night, intrepidly and without hesitation in his course of preaching

և ողջունապատում գնացիւքն, առաջի թագաւորաց և իշխանաց և ամենայն հեթանոսաց՝ անընդդիմակաց ի հակառակորդաց զամենափրկչին անունն Յիսուսի կրեաց, և զամենայն ոգի աստուածազգեստս և ոգեզէնս վառեաց»։

844 «Եւ բազում բանդականաց և կալանաւորաց և տագնապելոց ի բռնաւորաց փրկութիւն արարեալ, կորզելով զնոսա ահաւոր զօրութեամբ փառացն Քրիստոսի. և բազում մուրհակս անիրաւագիրս անիրաւութեան պատառեաց։ Եւ բազում սգաւորաց կարճամտելոց մխիթարական վարդապետութեամբն զակնկալութիւն յուսոյն ըստ յայտնութեան փառաց մեծին Աստուծոյ և ամենափրկչին Յիսուսի Քրիստոսի նուաճեաց. և զամենայն միանգամայն յաստուածպաշտութեան պայմանն փոխեաց»։

845 «Եւ դարձեալ բազում և անհամար զունդս զունս վանականաց ի շէնս և յանշէնս, դաշտականս շինակեացս, և լեռնականս անձաւամուտս և արգելականս հաստատէր»։ Եւ զոմանս յորդւոց քրմացն առեալ իւր՝ զառաջեաւասունս ձեռնասունս առնէր. փոյթ ունման ի վերայ ունէր՝ ընդ հոգևոր խնամով և երկիւղիւ սնուցանել։ Որ յաստիճան եպիսկոպոսութեան լինէին արժանի կալոյ, առեալ ձեռնադրութիւն ի նմանէ. որոց առաջնոյն՝ Աղբիանոս անուն, որ ապա կողմանցն Եփրատական գե-

the good word, before the king and princes and all the heathen without let or hindrance he bore the name of Jesus the Savior of all, and he furnished every soul with divine vesture and spiritual arms.[1]

844. He afforded salvation to many prisoners and captives and people oppressed by tyrants, freeing them by the awesome power of Christ's glory. And he tore up many unjust and illegal rescripts.[1] And to many in mourning or disheartened, through his consoling teaching he gave the expectation of hope in the appearance of the glory of the great God and the Savior of all, Jesus Christ. And he turned everyone to the state of true piety.[2]

845. Furthermore he established many and innumerable groups of monks in both inhabited and uninhabited areas, in the populous plains and the caves and retreats of the mountains.[1] He took some of the pagan priests' children and brought them up in his own sight and under his own care, giving them instruction and raising them with spiritual care and fear. Those who were worthy of attaining the rank of bishop received ordination from him: of these the first was called Albianos,[2] who was then made overseer of the area of the Euphrates river;

տոյն լինէր վերակացու. երկրորդին՝ Եւտաղիոս, որ ի կողմանս վայրացն Բասենոյ կացեալ լինէր հովիւ. երրորդն՝ Բասոս. չորրորդն՝ Մովսէս. հինգերորդն՝ Եւսեբիոս. վեցերորդն՝ Յովհաննէս. եօթներորդն՝ Ագապէս. ութերորդն՝ Արտիթէս. իններորդն՝ Արսուկէս. տասներորդն՝ Անտիոքէս. մետասաներորդն՝ Տիրիկէս. երկոտասաներորդն՝ Կիւրակոս։ Այսք՝ որ յորդւոց քրմացն ընտրեցան լինել եպիսկոպոսք կողմանց կողմանց, աճեցուցանել զքարոզութիւնն։ Եւ զայլոցն անուանս թէ և կամիցի ոք՝ ոչ կարասցէ չարել։

846 Եւ զԱղբիանոս զայր ճշմարիտ և աստուածասէր՝ վերակացու թողոյր արքունական դրան բանակին։ Եւ ինքն «ընդ ժամանակս ժամանակս յանապատ լերինս ելանէր, ուր և ինքեան իւրով անձամբն իսկ օրինակ ցուցանէր։ Առեալ զոմանս ոմանս յաշակերտացն յիւրաքանչիւր մենաստանաց՝ երթեալ, լեռնակեաց, մենակեաց, սորամուտ, ծակախիթ եղեալ, և զառօրեակն խոտաբուտ ճարակօք վճարեալ։ Եւ այսպէս վշտակեաց տկարութեան զանձինս տուեալ, մանաւանդ որոց հայեցեալ ևս ի մխիթարութիւն առաքելական բանիցն, թէ «Յորժամ վասն Քրիստոսի տկարանամ՝ յայնժամ զօրացեալ լինիմ». և թէ՝ «Լաւ ևս լիցի պարծել տկարութեամբ, զի բնակեսցէ յիս զօրութիւնն Քրիստոսի»։

the second was Euthalius, who became shepherd of the wild regions of Basean;[3] the third was Bassus, the fourth Moses, the fifth Eusebius, the sixth John, the seventh Agapus, the eighth Artithes, the ninth Arsukēs, the tenth Antiochus, the eleventh Tirikēs, the twelfth Kyrakos.[4] These are they who were chosen from among the pagan priests' children to become bishops of various areas and to increase the preaching of the gospel. And the names of the others, even if one wished one would be unable to list.

846. Albianos, an honest and God-loving man, he left as overseer of the royal court. He himself at frequent intervals went out to deserted mountains where he made himself an example. He took various of the pupils from each monastery and went to live in the mountains in solitude; in grottoes and caverns they made herbs their daily food. Thus they gave themselves over to austere mortifications, especially because they looked to the consolation of the apostolic sayings: "When I am weak for Christ, then am I strong" [II Cor. 12.10], and: "It would be better to boast in (my) weakness, that the power of Christ may dwell in me" [II Cor. 12.9].[1]

847 «Անդ էր ապա չարբենալ գինւով, այլ առաւելուլ հոգւով, և պատրաստել զսիրտս երգովք հոգևորօք ի փառս և ի գովութիւն Աստուծոյ։ Անդ կրթութիւն քաղցրուսոյց ընթերցուածոց հոգեպատում գրոց։ Անդ քաջալերութիւն յորդորական լուսաւոր վարդապետութեան, առ ի յառաջադէմ ընտրութիւն պսակահամբար քրիստոսադիր կիտին։ Անդ եռալ հոգւով աստուածապաշտ ծառայութեամբ։ Անդ աղօթք աղերսալիք և պաղատանք փարելիք և խնդրուածք հաշտեցուցիչք վասն ամենեցուն կենաց առ մարդասէրն Աստուած»։

848 «Եւ նովին հոգեկրօն արուեստիւն հանել աւուրս բազումս յանապատ տեղիս», յակունս Եփրատական գետոյն, յայրս և ի քարածերպս երկրին բնակեալ լինէր, և ի կատարս լերանց, զօրինակ առեալ զմեծի մարգարէին Եղիայի, և կամ զերանեալ զմկրտչին առաքինւոյն Յովհաննու. բարեաց գործոց նախանձաւոր եղեալ՝ զնոյն կեանս վարուցն քաջութեան աստուածամուխ կենացն անձին մատուցանէր։

849 Եւ թէ երբեք երբեք իջանել լինէր, շրջել զօրացուցանել զաշակերտեալսն ճշմարտութեան հոգւով, «իւրաց իւրաց պիտոյից օգտակարաց ամենայն եկեղեցեացն հասեալ յօգնականութիւն՝ շնորհօքն Աստուծոյ առանց յապաղելոյ, առանց իրիք զբաղելոյ, հանապազ իջա-

847. Then there was there no being drunk with wine but growth in the spirit and a preparation of their hearts with spiritual songs to the glory and praise of God [cf. Eph. 5.18-20]. There was pursued the study of the sweet readings of the inspired scriptures. There encouragement was continuous in illuminating teaching with a view to progressive election to the goal of the crown bestowed by Christ [cf. Phil. 3.14]. Then there was spiritual fervor in divine service [cf. Rom. 12.11]. There arose to benevolent God prayers of supplication and desirous petitions and conciliatory requests on behalf of life for all.[1]

848. With these same spiritual practices he passed many days in desert places,[1] at the source of the Euphrates river, dwelling in grottoes and caverns in the ground[2] and on the summits of mountains, taking as example the great Elijah or the blessed baptist, the virtous John. Zealous for good works[3] he led the same life of fortitude and devotion to God.

849. And when from time to time he descended, he went around strengthening his pupils with the spirit of truth. He provided assistance in needful matters to all the churches by the grace of God without delay or other distraction. He continually

նէր ի թիկունս դիպաց դիպաց պատահելոց, և վճարէր զօրութեամբն Աստուծոյ։ Եւ յորդորագոյնս և պարարտագոյնս և անփակ բերանով զվտակս վարդապետութեանն ի սիրտս լսողացն սերմանեալ ծաւալեցուցանէր. և զայս արարեալ զամենայն ժամանակս իւր՝ վասն անձին և վասն աշխարհի»։

850 «Քանզի սովոր իսկ են ճշմարիտ վարդապետք՝ զանձանց առաքինութիւն կանոն աշակերտելոցն դնել. մանաւանդ յուշ առնելով զաւետարանականն զմիոյն զմիայնոյն զիմաստնոյն Աստուծոյ. քանզի ասէ. «Սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել»։ Որոյ բազում անգամ առեալ զաշակերտսն ուրոյն, և աննիազական անձամբն օրինակ կարօտելոցն լինէր, յորժամ ի Թաբօրական լերինն զաւետեացն զերանութիւն տայր, և կամ յորժամ ի Նմին լերինն զկանոնական աղօթսն առնէր, մինչ դեռ աշակերտքն ի Տիբերական ծովուն նաւէին։ Եւ դարձեալ՝ յաւուրս բազարջակերացն յօրինական տօնին զգիշերոյն աղօթս երիցս անգամ ի Ձիթաստանեաց լերինն առանձինն մատուցանէր։ Ուստի և յայտ իսկ է և առանց վեհերելոյ, եթէ ոչ վասն անձին ամենատէրն, այլ համաշխարհի յուսումն զայն գործէր, որ է օրինակ ամենայն հնազանդելոց. վասն որոյ և ասէրն իսկ, թէ «Արթուն կացէք յաղօթս կացէք, զի մի՛ մտանիցէք ի փորձութիւն»։

gave support in all occurrences, acting by the power of God. With unceasing mouth he spread the abundant and fertile rivers of his teaching in the hearts of his listeners. This he did all his days, for himself and for the country.[1]

850. For true teachers are accustomed to set their own virtue as a canon to their pupils, taking especial note of the (saying) concerning the Lord,[1] the one and only wise God; for (scripture) says: "Jesus began to do and to teach" [Acts 1.1]. He often took his pupils aside and in his perfect person served as example to those who lacked (perfection)—(as) when on Mount Tabor he gave his blessed message [cf. Matt. 5.1-11; Lk. 6.20-49], or when on the same mountain he made the canonical prayer while the disciples were sailing on Lake Tiberias [cf. Jn. 6.15].[2] Again, in the days of unleavened bread on the legal festival he made the evening prayer three times on the Mount of Olives alone [cf. Matt. 26.39-44]. So it is undoubtedly obvious that the Lord of all did this not for himself but to teach the whole world as an example to all the obedient. Therefore he said: "Be awake and pray, lest you enter into temptation" [Matt. 26.41; Mk. 14.38; Lk. 22.46].[3]

851 *«Իսկ արդ՝ եթէ թեթեւագոյն արուեստից պակասագոյն ի գիտութենէ են ազգք երկրածնաց, ո՞րչափ այնմ արուեստի ոք համարիցի անգիտանալ, որ ընդ աստուածախօսն կատարի, որում երանելին Պաւղոս ամենեցուն անգիտանալ ասէ. վասն որոյ և զամենակեցոյց Հոգին ի թիկունս հասանել անմռունչ հեծութեամբ բարեխօս գրէ»։*

852 *«Իսկ արդ՝ յորժամ լսիցեմք, եթէ «Սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել»՝ ապաքէն առնել՝ զի ուսուսցէ, և ոչ եթէ զի պարգևեսցի, իմանալի է. և բարեխօսելն Նորա վասն սրբոց, և բարեխօսել Հոգւոյն սրբոյ՝ առ ի վարդապետելոյ մեզ, զի ընդ միմեանց բարեխօսիցեմք. և ոչ եթէ առ բարձրագոյն ոք Միածնին կամ Հոգւոյն սրբոյ բարեխօսելն գիտելի է. քանզի միապատիւ է աստուածականն, և ոչ բազմաբար։ Իսկ երանելի առաքելոցն ընկալեալ ի վարդապետութենէ ճշմարտութեանն՝ նախ կարօտական անձանցն օգուտ մատակարարէին, և ապա օրինակ աշակերտելոցն բարձեալ տանէին. երբեմն առանձինն, և երբեմն ժողովովք գումարելովք՝ զփառսն Քրիստոսի առաւելովքն բարձրացուցանէին»։*

853 *«Քանզի առաւել օգտակար իսկ է յամենայն աշխարհակիր զբօսանաց առանձինն սահմանել, և միայն աստուածպաշտութեան պա-*

851. Now if earth-born races lack the knowledge of the lightest skills, how much would one be considered ignorant of that skill which is only fulfilled among those who speak with God, of which blessed Paul says all are ignorant [cf. I Cor. 14.36-8]? Therefore he knows that the all-vivifying Spirit comes to (our) support as intercessor through (our) inarticulate groaning [cf. Rom. 8.26].[1]

852. Now when we hear that "Jesus began to do and to teach" [Acts 1.1], then "to do" must be understood that (he so acted) in order to teach and not that he might be rewarded. And his intercession was for the saints, while the intercession of the holy Spirit is to instruct us that we intercede for each other; and the intercession of the Only-begotten or of the holy Spirit is not to be understood as (being directed) to some higher person, because the divine is one in honor and not multiple. But the holy apostles received from the teaching of the truth, and first they provided profit for their own weak[1] selves, and then they provided an example to the disciples; sometimes alone and sometimes gathered in groups they exalted the glory of Christ.[2]

853. For it is more profitable to separate oneself from all worldly distractions and concern oneself solely with the service of God.

*թապել։ Զոր և մարգարէքն յառաջագոյն գործէին, որք ի լերինս և յանապատս, յայրս և ի փապարս վիմաց զաստուածեղէն կրօնիցն զծառայութիւն հարկանէին։ Նոյնպէս և ամենայն հարքն որ յաջորդեցան, յառաքելական կանոնացն կրեալ՝ ինքեանք անձամբ բերէին օրինակ վերջնոցս։ Ուստի և երանելիս այս բարձեալ տանէր զաւանդելոցն պատիւ, և ամենայն մատուցելոց առ նա զնոյն պատուիրեալ զուշակէր։ Եւ այնպէս յառաջ, ամենայն աստուածեղէն զանձուցն վայելչութեամբք լցեալ պարարտացուցեալ ամեթութեամբք զամենեսեան՝ խաղացեալ զայր ի բազում ժամանակս, և նովին ի նոյն կանխեալ և ի նմին հանապազորդեալ»։*

854 *«Յայնմ ժամանակի երանելի ցանկալի և անպայման սքանչելի լինէր երկիրս Հայոց. որպէս զՄովսէս, որ յանկարծ ուրեմն օրէնուսոյց հեբրայական բանակին լինէր, ամենայն մարգարէական դասուն, և կամ իբրև զյառաջադէմն Պաւղոս բովանդակ առաքելական գնդաւն, հանդերձ աշխարհակեցոյց աւետարանաւն Քրիստոսի՝ սոյնպէս և սա եկեալ հասեալ երևեալ՝ հայաբարբառ հայերէնախօս գտաւ»։*

855 *Արդ՝ ըստ զաւառաց զաւառաց երթեալ ընտրէր անձին իւրում կայս հանգստեան յանապատ տեղիսն և անդ բնակէր, և յանապատացն լուսաւորէր զամենեսեան։*

This the prophets did in the past, who in the mountains and deserts, in grottoes and caves in the rock [cf. Heb. 11.38] pursued the service of divine religion. Likewise all the fathers who succeeded them, guided by the apostolic canons, themselves bore the example of their predecessors. So this blessed saint also bore the honor of these traditions and enjoined the same honor to all who approached him. Proceeding thus he filled, comforted and fortified everyone in the enjoyment of all the divine treasure. And on many occasions he was prompt (in performing such tasks) and continued to persevere therein.[1]

854. At that time our land of Armenia was blessed, envied and truly admired. Like Moses, who suddenly became a teacher of the law to the Hebrew camp with all the ranks of the prophets, or like the outstanding[1] Paul with the entire group of the apostles, with the gospel of Christ that brings life to the world, so too did he come and appear and speak Armenian to the Armenians.[2]

855. Then he went through every province and chose for himself a spot for repose in desert places and there he dwelt, illuminating everyone from the desert.

856 Եւ բազմացոյց կացոյց տեսուչս եպիսկոպոսս յամենայն գաւառս Հայոց իշխանութեան իւրոյ. և որ յաստիճան եպիսկոպոսութեան ձեռնադրեցան ի նմանէ՝ աւելի քան զչորեքարիւր եպիսկոպոս, որք կացին տեսուչք տեղեաց տեղեաց։ Իսկ կարգք երիցանց կամ սարկաւագաց կամ անագնովսաց, և որ այլ ևս ի պաշտօն Տեառն կացին՝ անթիւք էին ի բազմութենէն։

857 Իսկ թագաւորն Տրդատ՝ ուխտ դայս դնէր ընդ ամենայն մարդոյ, որ միանգամ ընդ նորա տէրութեամբն էին, ընդ մեծի և ընդ փոքու, զի ամենեցունց հաստատութիւն այն կայցէ առ նա, զի անխորշ և անխէթ աստուածահրաման պատուիրանացն հնազանդեսցին առանց երկմտութեան, և արարչութեանն հաւատալ յամենայն սրտէ. Եւ ամենեցուն հաւանեալ այնմ՝ փութային կատարել վաղվաղակի զհրամանն։

858 Իսկ թագաւորն շատ աղաչեաց զԳրիգոր վասն հանապազորդ առ նմա կալոյ, զի ընդ ինքեան շրջեսցուսցէ. որում ոչ հաւանեալ չառնոյր յանձն, այլ յանապատ տեղիս հաճեալ բնակութեամբ, պահովք կոխեալ զինքն, զի մի՛ տացէ հպարտութեանն բարձրանալ կոխել զինքն. այլ կէտ եդեալ ինքեան՝ զամենայն աւուրս կենաց իւրոց զքառասուն քառասուն օր պահովք ձգտել մինչև յօր քրիստոսակոչ հանգստեանն իւրոյ վախ-

856. He increased the number of overseeing bishops in all the Armenian provinces under his jurisdiction.[1] Those who were ordained to the rank of bishop by him were more than four hundred bishops, who were established as overseers for every region. But the ranks of priests or deacons or readers[2] and the others who were in the Lord's service were innumerable in their multitude.

857. And king Trdat made this covenant with all the people who were under his rule, both great and small, that all might have this firm pact with him: to obey ardently and frankly the divine commandments without doubting,[1] and to believe in the Creator with all their heart. They all agreed to this and straightway hastened to fulfill the commands.

858. The king greatly implored Gregory to remain with him continuously and to travel around with him, but he did not agree; he rather preferred to live in desert places, suppressing himself by fasts to prevent pride from rising up and trampling him down. He had made a rule for himself that all the days of his life he would extend his fasts over forty days until the day of his death when summoned by Christ to rest.[1]

ճանին։

859 Իսկ իբրև կարի կարօտեալ թագաւորն աշխարհաւն հանդերձ գնմանէն, զի ի մէջ նոցա բնակեսցէ, և քանքատէին կարօտեալք ի կայս նորա՝ յայնմ ժամանակի յուլան յոմանց ի տեղեկաց, որ գիտակ արարին զթագաւորն վասն որբոյն Գրիգորի, զի յայնժամ յառաջ ևս, մինչ դեռ ի մանկութեան ստուին էր զինուորութեամբ՝ ամուսնացեալ և երկուս որդիս ստացեալ. որոց առաջնոյն անուն ճանաչէր Վրթանէս, որ յաշխարհակեաց կեանս էր. որ ապա և նա յաստիճան պաշտաման կաց երիցութեան. և երկրորդին՝ Արիստակէս, որ ի մանկութենէ ըստ աստուածագործ ծառայութեան սնեալ էր. «որ ի միայնակեաց լեռնակեաց ի կրօնս մտեալ էր, և բազում և ազգի ազգի վշտակեցութիւն ըստ Աւետարանին կրեալ ամենայն կրթութեամբ, և ամենայն իրաց հոգևորաց զանձն տուեալ—միայնաւորութեան, լեռնակեցութեան, քաղցի և ծարաւոյ և բանջարաճաշակ կենաց, արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոց. և բազում անգամ զհեշտական հանգիստն գիշերաց, զհարկ քնոյ, յոտնաւոր աքնութեան ի թօթափել ական վճարէր. և զայս արարեալ ոչ սակաւ ժամանակս։ Եւ գտեալ ևս զումանս՝ յինքն յարեցուցեալ և աշակերտեալ ըմին աւետարանական սպասաւորութեան։ Եւ այսպէս

859. Now while the king and his country were sorely wishing him to dwell amongst them and lamenting his absence, then they heard from some informed persons who told the king that in time past, when Gregory was still in the flower of his youth and of military age, he had been married and had had two sons.[1] The first of these was called Vrt'anēs, who led a secular life,[2] though later he too was raised to the priesthood; and the second was Aristakēs, who from his childhood had been brought up in the service of God. He had entered the religious life of hermits in the mountains, and had undertaken many and various austerities according to the gospel with all diligence, and had given himself entirely to spiritual affairs—to solitude, dwelling in the mountains, hunger and thirst and living off vegetables, being shut up without light, wearing a hair shirt, using the ground as a bed, often spending the sweet repose of night—the need of sleep—in wakeful vigils on his feet. This he did for no little time. And finding other (disciples) he associated them with himself and instructed them in this same service of the gospel. Thus

*ամենայն փորձութեանց ի վերայ հասելոց կամայական քաջութեամբ տարեալ, և նովիմբ լուսաւորեալ և պայծառացեալ, և ծանօթական և հաճոյ եղեալ առաջի Աստուծոյ և ամենայն մարդկան»։*

860 *Արդ՝ իբրև լուաւ զայս ամենայն թագաւորն Տրդատ՝ վաղվաղակի փութով և անզբաղապէս արձակէր արս երիս աւագս փառաւորս պատուականս հրովարտակօք հանդերձ, զի զերկուսին որդիսն Գրիգորի վաղ առ նա հասուսցեն։ Եւ որք առաքեցանն յարքայէ զնոցանէն, զի ածցեն զնոսա՝ այսոքիկ են. առաջնոյն անուն Արտաւազդ, որ սպարապետն էր ամենայն զօրացն Հայոց Մեծաց. և երկրորդին Տաճատ անուն, իշխան Աշոցաց գաւառին. երրորդին՝ Դատ անուն, կարապետ արքայի։*

861 *Արդ՝ եկին հասին նոքա յաշխարհս Կապուտկացւոց և գտին զՎրթանէս ի Կեսարացւոց քաղաքին, և զսուրբն Արիստակէս բնակեալ յանապատի, յիւրում մենաւորաստանին. ապա ոչ հաւանէր նա իջանել յանապատէ անտի. մինչև եղև ժողով բազմութեան քրիստոնէից, որք հաւանեցուցին զնա գնալ անտի. զի «Լաւ է, ասեն, քեզ գործ մշակութեանն Աստուծոյ՝ քան զայդ մենաւորութիւն բնակութեան յանապատի այդր»։ Զորս այնուհետև և յուղարկեցին զնոսա անտի։ Իսկ նոքա եկին հա-*

he willingly and bravely endured all trials which came upon him, and thereby was illuminated and became renowned, and he was known and pleasing before God and all men.[3]

860. Now when king Trdat heard all this, he straightway in haste and without delay sent three noble, famous and honorable men with letters to bring the two sons of Gregory quickly to him. And those who were sent by the king to bring them were these: the first was called Artavazd,[1] who was the commander in chief[2] of all the army of Greater Armenia; the second was called Tachat,[3] prince of the province of Ashots'k';[4] the third was called Dat, the royal herald.[5]

861. So they arrived in the country of Cappadocia and found Vrt'anēs in the city of Caesarea, and the saintly Aristakēs dwelling in the desert in his own hermitage. But he did not agree to come down from the desert until a gathering of many Christians was held, who persuaded him to leave there. "The task of God's labor," they said, "is better for you than this solitary living in the desert." So then they sent them off. They returned

սին յերկիրն Հայոց, և յանդիման ունէին զա-
ծեալսն, զերկոսին որդիսն Գրիգորի, առաջի
թագաւորին. զորս առեալ թագաւորին՝ ինքնին
նոքօք հանդերձ ի խնդիր ելանէր սրբոյն Գրի-
գորի՝ ուր և գտցէ։ Եւ եկեալ գտանէին ի Դա-
րանաղեաց գաւառին, ի լերինն որ կոչի Մա-
նեայ Այրք, յանապատին։

862 Ապա աղաչեաց երանելի թագաւորն
Տրդատ զսուրբն Գրիգորիոս, զի փոխանակ
այնր, զի ոչ հաւանեցաւ նա կալ և շրջել ընդ
նմա, և սիրեաց զմենաւորութեան կեանս՝ ձեռ-
նադրեսցէ և տացէ նմա եպիսկոպոս զսուրբ որ-
դին իւր, զոր եւ ածել ինքն՝ զԱրիստակէս։ Զոր
ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն փոխանակ իւր.
որպէս ըստ գրեցելոյն ի դէպ, թէ «Փոխանակ
հարց եղիցին որդիք՝ կալ իշխան ի վերայ երկ-
րի»։ Որ առաւել ևս քան զհայրն վերագոյն երե-
ւեցուցանէր զիւր վարդապետութիւնն առ հար-
քըն. և յետ նորա կալաւ զտեղի հայրենեացն և
անդէն նստաւ յաթոռ կաթողիկոսութեան Հա-
յոց Մեծաց։ Ապա և ինքն իսկ մեծն Գրիգորիոս
«ելանէր զտեղօքն կարգելովք և զգաւառօքն
աշակերտելովք յաշխարհին Հայոց՝ զուարթացու-
ցանել, զօրացուցանել, նորոգել և հաստատել
զամենեսեան»։

863 Եւ աստուածասէր թագաւորն Տրդա-
տիոս բարեպաշտութեամբ սպասաւորեալ, ըստ

to Armenia and presented to the king the two sons of Gregory whom they had brought. The king received them, and in person went out with them to seek saint Gregory, wherever he might find him. And they came and found him in the province of Daranaḷik‘,[1] on the mountain called the Caves of Manē,[2] in the wilderness.

862. Then the blessed king Trdat begged saint Gregory that since he had not agreed to remain and go around with him and because he loved the solitary life, he would in return ordain and give him as bishop his saintly son Aristakēs, whom he had had brought. He ordained him to the episcopacy in his place,[1] according to the appropriate saying: "The sons will take the place of the fathers, to be ruler over the land" [Ps. 44.17].[2] He was even more successful in his teaching than his father during the latter's lifetime, and after him he held his father's position and sat on the throne of the Catholicos[3] of Greater Armenia. Then the great Gregory himself went out around the places he had set in order and the provinces where he had taught in Armenia to comfort, strengthen, renew and confirm[4] everyone.

863. And the God-loving king Trdat served piously

*աշակերտական հաւատոց ի Քրիստոս՝ երկիւղած գտանէր, որ և տեղեկացեալ և վարժեալ աստուածակեաց հրամանօքն, և ցանկալի եղեալ օրինապահ ընկալելովքն, և բարեաց օրինակ ամենայն աշխարհի։ «Եւ անդէն ի նմին ուշ եղեալ փութով ընթերթուածոց աստուածեղէն գրոց»։ Զի յունական աշխարհական դպրութեանն, երկրաւոր իմաստութեանն, յառաջագոյն էր տեղեակ, առաւել փիլիսոփայական մտաց հանճարագիտութեան հմուտ էր, զի ուսեալ էր զայն։*

864 *Արդ՝ ընկալեալ և զշնորհս երկնաւոր պարգևացն, «որով առժամայն լուսաւորեալ և թևակոխ թևամուխ եղեալ աստուածատուր հրամանացն ի հանգամանս, և ամենայն պատրաստութեամբ զանձն յարդարեալ», «և ըստ աւետարանական չափոցն ի ծառայութիւն Աստուծոյ մարդասիրին դարձեալ։ Մերկացեալ այնուհետև զհեթանոսակիր ցանկութիւնսն, և առեալ զնշան պարծանաց խաչին յանձն իւր, և երթեալ զկնի ամենակեցոյց խաչելոյն՝ հաճել զհրամանացն պայման, զկնի խաչակիր զնդին Քրիստոսի աշակերտելոցն հետևեալ»։ Եւ անձին իւրում եդեալ սահման պահօք և տքնութեամբ «աղօթս մշտնջենաւորս և բազկատարած պաղատանս առ Աստուած, և արտասուս հանապազաբուղխս» վասն աշխարհին իւրոյ։ Նոյնպէս և վասն իւր խնդրէր, զի մի՛ յիշեսցին մեղքն որ յառաջին*

the apostolic faith in Christ. He was God-fearing, and was informed and instructed in the divine commandments, he was loved[1] for his acceptance and respect for the law, and was an example of goodness to the whole land; he also was very diligent in the reading of the divine scriptures.[2] For he was very expert in Greek secular literature and earthly wisdom, and he was especially versed in the science of philosophical reasoning, for he had studied it.

864. So he received the grace of the heavenly gifts whereby he was then illuminated, and he was completely devoted to the requirements of the divine commandments, and in great willingness accommodated himself (to them), and according to the rule of the gospel turned to the service of the benevolent God. Thenceforth he stripped off pagan vices and accepted the sign of the cross of boasting, following the crucified Savior of all, fulfilling the demands of the commandments and following the crusading band of Christ's disciples.[1] He imposed upon himself fasts and vigils and unceasing prayers and supplications to God with arms outstretched, and ever-flowing tears[2] for his country. Similarly he asked on his own behalf that his sins, committed in his earlier

տգիտութեանն, յայնժամ զոր ի հեթանոսութեանն անդ գործէր։

ë65 «Եւ բազում և ամենայն ուժով նպաստաւորութիւն ընծայեցուցեալ աւետարանագործ վարդապետութեանն, և հնազանդութեամբ հպատակութիւն ցուցեալ և ծառայեալ ըստ Աւետարանին վայելչութեամբ»․ և այսպէս խրատեալ և զգաստացեալ կրօնաւորական վարուք, ամենայն ուղղութեամբ յամենայն գործս բարութեանց առաւել ևս պայծառացուցանէր զվարդապետութեանն սատարութիւն։

866 Իսկ մեծ արքեպիսկոպոսն երանելին Գրիգորիոս, սուրբ որդւովն իւրով Արիստակիսաւ և ամենայն երևելի օգնականօքն, զամենայն աշակերտովքն շրջէր, և հաստատէր զնոսա՝ կալ ի պատուիրանին ճշմարտութեան։

867 Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ թագաւորեաց Կոստանդիանոս որդի Կոստանդեայ արքայի յերկրին Սպանիացւոց և Գաղիացւոց․ և հաւատաց նա յԱստուած, յարարիչն երկնի և երկրի, և ի ծնունդն ի Բանն նորա, յՈրդին Միածին, և ի Հոգին սուրբ Աստուածութեան նորա։ Եւ կուտեաց գումարեաց առ ինքն զբազմութիւն զօրաց իւրոց առ ափն Ովկիանոս ահագին ծովուն․ և ուխտէր զայս բան ընդ ամենեսին, զի առ հասարակ ամենայն ոք ճշմարտութեանն հաւատասցէ․ «միով աստուա-

ignorance when he was a pagan, might not be remembered.

865. With great solicitude he assisted the work of the teaching of the gospel, showing willing help and happily serving according to the gospel.[1] And thus, leading a reformed and sober and religious life, in all rectitude and in every good work he rendered glorious the task of teaching [cf. II Tim. 3.16-17].

866. The great archbishop,[1] the blessed Gregory, with his son Aristakēs and all his illustrious helpers went around among his pupils and strengthened them to stand firm in the commandment of truth.

[Chapter 14. Gregory and Trdat visit Constantine;
the Council of Nicaea;
Gregory's last years]

867. At that time Constantine,[1] son of Constantius the king, became emperor in Spain and Gaul. And he believed in God, in the creator of heaven and earth, and in his offspring, the Word, the only-begotten Son, and the holy Spirit of his Godhead. He gathered to himself a multitude of his forces by the shore of the fearsome Ocean sea,[2] and he made this covenant with them all, that they should all in unison believe in the truth, and with a single

ծաբարբառ պատգամօք՝ մի ազգ կատարեալ փառաւորիչ միոյ Աստուծոյ լինել»։

868 Եւ յԱստուած խրախուսեալ՝ դիմէր ի վերայ հեթանոսական թագաւորացն, և անդէն սատակէր առ հասարակ զամենեսեան, զորս կործանէր զօրութեամբ աստուածեան խաչին, զպիղծ և զանօրէն թագաւորսն, զԴիոկղետիանոս և զՄարկիանոս և զՄաքսիմիանոս և զԼիկիանոս և զՄաքսենտիոս, և զամենայն զաւակ պղծալից թագաւորացն հեթանոսաց ջնջէր ի միջոյ։

869 Շինէր և զաւերեալ եկեղեցիսն, և կանգնէր զսեղանսն կործանեալս ի տան Տեառն. շինէր և զառաքինարանսն վկայիցն, և բազմացուցանէր զփառաւորութիւն յիշատակաց երանելեացն մարտիրոսաց, և յաճախէր զպատիւ քահանայիցն Աստուծոյ, միանգամայն առնել խաղաղութիւն երկրաւորաց, բառնալ զգայթակղութիւնս ի միջոյ. զի մի՛ ոք մի՛ իւիք սայթաքիցէ յաստուածագնաց ճանապարհէն։ Աւերէր զպղծալից մեհեանս դիւացն, և զնոսա առ հասարակ միանգամայն իսկ իւրեանց պաշտօնէիւքն ի փախուստ դարձուցեալ պակասեցուցանէր։ Պատիւս և պարգևս այնոցիկ շնորհէր, որք յաստուածպաշտութեան ճշմարտութեան կացեալ էին, և ոչ երբեք զհաստատութիւնն թողեալ։ Վասն այսորիկ յաղթութիւն տուաւ նմա ի վերայ ամենայնի, վասն զի առ նա զնշան յաղ-

divine voice they should be a perfect race glorifying the one God.[3]

868. And trusting in God he marched against the heathen kings, and there suppressed them all, destroying them by the power of the divine cross, the foul and impious kings Diocletian and Marcianos[1] and Maximianos and Licinius and Maxentius; and all the offspring of these foul heathen kings he exterminated.[2]

869. He rebuilt the destroyed churches and restored the overthrown altars in the house of the Lord. He built chapels for the martyrs, and multiplied the glory of the commemorations of the blessed martyrs, and increased the honor of the priests of God, at once bestowing peace on the inhabitants of the earth and removing scandals, that no one in any way might slip from the path that leads to God. He destroyed the impure temples of the demons and obliterated them altogether, turning their ministers to flight. Honors and gifts he bestowed on those who kept to true piety and never abandoned its security. Therefore victory was given him over everyone, because he took for himself the sign

թութեան խաչին յանձն իւր։

870 Եւ զհրաման սաստկութեան պատուիրանին ճշմարտութեան, կալ յայսմիկ ի հաստատութեան հաւատոցն զոր առ ի Տեառնէ՝ հրովարտակօք իւրովք ընդ տիեզերս տարածանէր, ապառնացեալ յաղթող զօրութեամբն՝ լուսոյն հաւատոց որ առ ի Տէր ունել զբարեպաշտութիւնն. և այսուիկ հալածէր զզօրս խաւարին, և ի վերայ ամենայնի վերնոյն զօրութեամբ գեր ի վերոյ լինէր։ Իսկ որք այսմ հաւանեալք՝ զի երկրպագուք լիցին ճշմարտութեանն՝ զնոսա բարեկամեալ մերձեալ պատուեալ՝ առ ինքն մատուցանէր։ Եւ այսու օրինակաւ հզօր երևեալ՝ ի վերայ մարդկանն հաստատէր զթագաւորութիւնն իւր, աստուածակարգ թագաւորութիւն զիւր թագաւորութիւնն անուանեալ, մինչ այնչափ հզօրացեալ ի վերայ ամենայն մարդկան՝ իբրաւացի լինէր պայծառացեալ։

871 Եւ այսպէս յաղթող երևեալ զինքն հաստատէր՝ մինչև զամենայն աւուրս կենաց իւրոց հրեշտակ յերկնից երևեալ, զոր հանապազ նմա սպասաւոր կացեալ՝ ընդ առաւօտս առաւօտս զքրիստոսեան նշան թագի նորին առեալ՝ ի նորին գլուխն դնէր. և այսպէս տեսեալ զերկնաւոր զհրեշտակն յիւրում սպասաւորութեան երանելին և ցանկալին ամենայն թագաւորաց Կոստանդիանոս։ Որ և զիւր թագաւորութեանն ծի-

